Յովանէսն...։ Եւ զԴուլմէլիքն՝ զԹուչրի տան մարդն յիշեցէք ի Քրիստոս, որ ի գիրքս ի տես երեկ, և աստուած-ողորմի ասացէք։

## 324

### ՇԱՐԱԿՆՈՑ

ԲՕՎ., 391

գրիչ՝ Ստեփանոս

Ո՜վ եղբարք, յորժամ եղանակս յարգէք ղուտանուն զՍտեփանոսն յիշեցէք, և ղծնաւղսն իմ տէր Յովճաննէսն, և զմայրն իմ զՄարգարիտն, և ղեղբայրն իմ զտէր Յովճաննէսն...։ Գրեցօ եղանակս ձեռամբ սուտանուն քահանայիս զՍտեփանոսի, ի գիւղն որ կոչի///, ի գուռն սուրբ Վարդանայ և սուրբ Գէորգայ ղաւրավարին, ի թվականիս Հայոց ՊՃԺԵ. (1466)։

## 325

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 7742

251բ Ի թվ. ՋԺԵ. (1466) եղև ժառանկ այս սուրբ Աւետարանս Յարութեան եկեղեցոյն, ի յիշատակ տէր Ովանէս քահանային, և իւր որդոյն Մարտիրոս քահանային, և իւր որդոյն Սարգսին, և իւր եղ[բ]աւրն տէր Ստեփանոսին, և իւրեանց փեսին տէր Գալուստին, և իւր որդում տէր Դան[ի]էլ կրաւնաւորին, և միւս որդում պր. Գորքին, Մարտիրոս[ին], իրիցկնոջն Ոսկէտիկինին և այլ իրիցկնոջն՝ Եղսաբեթին, Մարիանէին, Մուչխին, և իւր որդուն Աստուածատուր քահանային, և իւր իրիցկնոջն Ջէրիֆին, և իւր
252ա զաւակաց||ն Աննայ-խաթունին և Տովլաթ-խաթունին՝ կարճահասակին։

Զայս Աւետարանս կու տայ տէր Աստուածատուրն ժառանկ սուրբ Արութեանն, որ ոչ ոք հրաման ունենայ, որ ծախէ կամ գրաւէ, ով որ ձեռնամուխ լինայ այս բանիս նայ ի դատողէն դատեսցի սոսկալի բեմին, ամէն։

## 326

### ՇԱՐԱԿՆՈՑ

Օքսֆորդ, Բոդլեան դրատուն Ms. Arm. F. 2. (Մատենադարան Անհատական արխիվներ, Թղթ. 122, էջ 1755)

նորոգող՝ Յովսէփ

1ա Արդ, վերստին նորոգեցաւ Շարա[կանս] ձեռամբ Յովսէփ եպիսկոպոսի, [Թվ.] ՋԺԵ. (1466)։ Ով կարդայք ի սուրբ յաղ[ւթս]ն ձեր յիշեցէք, և աստուած յիշողացտ [ողորմես]ցի իւր սուրբ արքայութեան, ամէն։





## 327

### Ա Ի Ե Տ Ա Ր Ա Ն

*Մ. Աթոռ 50, «Էջմիածին», 1951 թ. ապրիլ–հունիս, էջ 85*

*նորոգող՝* Ումիդ
*վայր՝* Ցղնայ

152ա—152բ *... Արդ, նորոգեցաւ սուրբ աստուածախաւս Աւետարանս ի գաւառս* Գոխթան, *ընդ հովանեաւ սուրբ և անյաղթ սուրբ* Գիորգեայ *զաւրաւորիս և սուրբ* Նշանիս *և այլ սրբոցն ի սմայ, ի փծում և նուաստ* Ումիդ* *սարկաւագիս, ի վայելումն անձին մերում և յիշատակ ննջեցելոցն մերոց՝* Ցղնոյ *աստուածայնէր քահանայիցս, և հոգաւէր տանուտրէցս, և հողագործ ժողովրդեանս՝ երիտասարդաց և կուսանաց, ծերոց և տղայոց. որով ափհնութիւն աստուծոյ հանգիցէ ի վերայ սոցա և հանդստանաց մերոց, ամէն։ Թանձայ ի մէնջ տէր աստուած զսով, զսուր, զմարախ, զթռթռ, զչորակ, զդալոկ, զմահտարաժամ, զերաշտութիւն, զհուրայցանութիւն, ամէն...։*

*Նորոգեցաւ ի թուին ՋԺԶ. (1467), ի թագաւորութիւն պարոն* Ջանեանշա *միրզախս, ի հայրպետութիւնն տեառն* Ստեփանոսի *արհեպիսկոպոս* Գուխթան *գաւառիս։*

## 328

### Ճ Ա Ռ Ը Ն Տ Ի Ր

*Փիրդ. նոտ. 229, Բաղէշ*

*գրիչ՝* Կիրակոս Ջօշկանց
*վայր՝* Աղթամար

ա

*... Զոր տեսեալ զայս աստուածային գանձս մեղաւոր և անարժան* Կիրակոս *էրէցն, որ մականուն* Ջօշկանց *ասի, և սկսաւ գրել տկար հոգով։*

*Բազում և մեծ աշխատութեամբ հասուցի յաւարտումն զսուրբ գիրքս ճառաբան, սկսայ անարժան ձեռօք իմովք ի* Բաղէշ *և գրեցի ընդ հովանեաւ Հինգ խորանացն՝ սուրբ Աստուածածնին, և սուրբ Խաչին, և սուրբ առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, և ատենահաս սուրբ Սարգսի զօրավա-*

** Ձեռագիրը գտնվելիս է եղել Իրանի Զարմահալ գավառի Վերին Քոնարք գյուղում։ Մ. Տեր-Մովսիսյանը ծանոթանալով և նկարագրելով ձեռագիրը՝ մեջ է բերել նաև հիշատակարանն ամբողջությամբ։ Նրա ընդօրինակության հիման վրա ուղղում ենք հրատարակության մեջ սպրդած սխալները, հատկապես «Նորա ուսումնամիտ» սխալ վերծանումը ուղղելով «Նորուսումն Ումիդ» ձևով։*

րին, և սոցին աջողութեամբն աւարտեցաւ սուրբ գիրքս կղզոյն յԱղթամար, ընդ հովանեաւ սուրբ խաչին և սուրբ Գէորգայ զօրավարին, ի թուականիս Հայոց ՋԺԶ. (1467), ի հայրապետութիւն տեառն Ստեփաննոսի, որ յայսմ ամի գնաց յէջմիածին և տիրեաց յամենայն հայկազեան ազգի, և ի ղանութեան Ջհանշայի, և Բաղէշ քաղաքի ամիրութեան Մէլիք-Շարաֆի, և ի մեր առաջնորդութեան տէր Յովաննէս եպիսկոպոսի։ Աւարտեցաւ ճառս ձեռամբ մեղաւոր գրչի Կիրակոսի, յիշատակ հոգւոյ իւրոյ, և եղբարցն Յակոբին, և ծնողացն Ջանիբէկին և Նիգարին, և հանգուցեալ եղբարցն Ստեփաննոսին և Հերապետին, Սադաղին և Գուռջիբէկին, և քերց՝ մահդասի Սալչուկին և Հնազանդին, և կենակցին իմոյ Սօլտանին... և ուսուցողին՝ Յովանէս քահանային, և թղթի կոկողին...։

Բ

Աստուած-ողորմի ասացէք ստացողի գրոցս և գրչին Կիրակոս իրիցուն, և ծնողաց՝ Ջանիբէկին և Նիգարին... և հօրեղբարցն՝ Ատոմ քահանային և Վարդան քահանային... և զհոգևոր հայրն մեր զտէր Թումէն, որ բազում աշխատութիւն կրեց հետ մեզ, և զուսուցիչն իմ զՅովանէս քահանայն զՄանկասարենցն, ամէն։

## 327

## ՃԱՌԸՆՏԻՐ

Փիրզ. Նոտ. 231, Վանի ս. Սահակ եկեղեցի

գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Աղթամար

... Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց... սոսկանումն աբեղայ Հայրապետ, բազում և մեծ աշխատութեամբ հասուցի զսա յաւարտումն՝ զկէսն ի սուրբ Էջմիածինն, և զկէսն յաստուածաբնակ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ զմբէթայարկ սուրբ խաչիս և սուրբ Սարգիս զօրավարիս և այլ ամենայն սրբոցս, որ աստ կան հաւաքեալ։ Ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսի Հայոց կաթուղիկոսի Աղթամարայ շնորհալից աթոռոյս. ի թւականութեանս Հայոց ՋԺԶ. (1467), ի ժամանակիս, յորում կամք ընդ հարկի ծառայութեան ազգին նետողաց, (ի խնդրոյ Ցախրկանց տանուտէր Յոհաննու)։

## 328

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔԻ

Երևան 9223, ժդ

գրիչ՝ Վարդան
վայր՝ Վան

1ք ... Աւարտեցաւ սուրբ գիրքս այս յամի ՋԺԶ. (1467) թուականութեանս Հայոց, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Վարդան մեղաւոր և անարժան երիցու ...ի խնդրոյ քրիստոսասէր և սրբահոգի մահդասի

2ա Ստեփանոսին...||...յիշատակ իւրն, և ծնողաց իւրոց բարեպաշտիցն՝ Կիրակոսին և Մէլիք-Խաթունին, և կենակցին Մարեմին, և որդոյն Գրիգորին, և դստերն Շամսմին, և եղբարցն Մարտիրոսին, և Անդրիասին, և կնոջն Խալիմին, և որդոյն Յովանիսին, և քեռ մահդասում՝ Խաբիբին, և հօրեղբօրն Ղազարին, և որդոյն Աստուածատրին, և հոգևոր եղբօրն Ստեփանոսին, և փեսային իւրոյ Վարդան քահանային՝ փոխեցելոյն ի Քրիստոս, և որդոյն Կարապետին, և այլ ամենայն արեան մերձաւորացն...։

Եւ գրեցաւ սուրբ գիրքս ի քաղաքս Վան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Վարդան զօրավարին, և սուրբ առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, և սուրբ Ստեփանոս նախավկային, || և սուրբ Սահակայ
?բ հայրապետին, և այլ սրբոցս որ աստ կան։ Ի կաթողիկոսութեանն տեառն Արիստակիսին, և մերոյ եպիսկոպոսացս սուրբ ուխտիս Վարագայ տէր Յովանիսանցս, ի թագաւորութեանն Ջհանշայ իմիրղին, որ յայսմ ամի գնաց ի վերայ Ուզուն-Հասանին, որոյ Քրիստոս աստուած ընդ աջմէ կենայ սմա, ամէն։

Եւ արդ, ես՝ անպիտուղս ի բարեաց... Վարդան սուտանուն երէց, տեսի զսէր և զփափագ Ստեփանոս մահգասում, և ըստ իմում տկար անձամբս յանձն առի և ողորմութեամբն աստուծոյ կատարեցի զսուրբ գիրքս զայս։ Եւ դուք՝ պատուական հարք իմ և եղբարք՝ յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զվերոյ յիշեցեալն զՍտեփանոս մահդասին, և զմեղաւոր գծողս զՎարդան սուտ անուն երէց, և զծնօղսն իմ զՅովանէս քահանայն, և զմայրն իմ Զմրութ, և զեղբայրն իմ զԿարապետ քահանայն՝ զուսուցիչն իմ, և զմիւս եղբայրն զՄէլքէսեթ, և զորդին իմ զՆիկողայոս քահանայն, որ զգրոց յետքն զԴ. (4) ամիսն նա դրեաց, և զայլ որդիքն իմ, և զսոցին մայրն...։

Դարձեալ, յիշեցէք ...Ստեփանոս մահգասում, և իւր հօրեղբօրորդոյն Ատոմին, և նորին կենակցին Թուրւանդին, և իւր որդոյն Մեծատրուն, և Աստուածատրին, և նորին որդոյն Կարապետին, և Ամիր-Մէլէքին, և այլոցն ամէնի, որ պատճառ եղև այսմ բարի գործոցս...։

## 329

## ՄԱՇՏՈՑ

Երևան 4162

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

293ա ///ՋԺԶ. (1467) ամին և ի մարդեղութենէն Քրիստոսի մինչև ի մեզ ՌԴՃՀԲ. (1472) ամին։ Եւ գրեցաւ սա ի քաղաքս, որ կոչի Վան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս և սուրբ Ստեփաննոս Նա[խավկա///* Հասան /// րով և շատ պարո[ն] ընդ նմա, և աստուծոյ յ[աջո]ղութեամբն Հասան ա/// Նստաւ ի Թախթին։

Արդ, ի յայս դառն ժամանակիս ցանկացող եղև այս պատու[ա]կան գանձին և լուսաւոր /// նորին Ատոմն (՞) [և] Խութլու-Մէլէ[f]ն, մեծ մարն Շնով[ճո՞]r տիկնայ, և եղբար[ն] Ստեփաննոս րաբու[նա]պետին, և Նի-

* Էջի վերին մասը, հատկապես աջ եզրը, պատռված է և բազմաթիվ տողեր չեն պահպանվել։

կողո[սին] և այլ եղբարցն /// դնիշին և Յոանգ /// -խաթունին, Մրուաբ-խաթունին, և զաւակաց նոցին, և այլ ամենայն արեան մերձ[աւորաց նո-ցին՝ կե]նդանեա[ց և հան]գուցելոցն անդ յիշեցէք և լի բերանով աս-տուած-ողորմի ասացէք Յովաննէս քահանային և ամենայն ազգակա-նացն, զորս յիշեցաք, և Քրիստոս աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

294ա Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց և մեղաւորս յարդարոց ան/// յի-
[շեց]էք ղստացաւ[ղ սորա զՅովաննէս քահանայ ///, և զծնողքն իւր
զԱտոմ և զխութլու-Մէլիք, և զհայրեղբայրն զՄովսէս, և զքեռին <զքե-
ռին> զԲաղդասարն, և զկենակիցն զխունձա-խաթունն, և զզաւակսն իւր
զԱստուա[ծատուր ///, զծնաւղքն իւր, և զամենայն ազգականսն իւր՝ զպա-
պերն և զհաներն, [և] ղվարպետն զտէր Ստեփանոսն, [և զ]տէր Ղազարն,
294բ և ղհայրեղբաւր որդին զՄիրումն, և զիւր կենակիցն զԱրուս-խաթունն, և
աստուած-ողորմի ասացէք։

Ընդ նոսին յիշեցէք և զ/// և զանպիտան գրիչս զԿարապետ, և զծնող-քըն իմ զՍտեփաննոս քահանայ և զՄինա, և զկենակիցն իմ զխոնդ-խա-թուն, և զորդեակս իմ զՍտեփանոս քահանայ /// զԱբդլմսեճն (˝) [և] զՄել-քոն և բոլոր (˝) [սրտ]իւ աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողոր[մեսցի]։

Դարձեալ, յիշեցէք յաղաւթս ձեր զՅովաննէս քահանայն, [որ] ստացաւ զսուրբ գիրքս և եդ ի դուռն սուրբ առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի. և մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սրբոց առաքելոցս գողա[նալով կամ] ծախելով կամ [գրաւ դնելո]վ, և եթէ ոք [յանդգնի]՝ նա պատժի [ի սուրբ Առ]աքելոցս։

Այլ և յիշեցէք ի Քրիստոս զքահանայք սուրբ Առաքելոցս զՍտեփան-նոս, զխաչատուր, զԱւետիս, զԿարապետ, զԹումա, զԳրիգոր, և զմիւս Կա-րապետ, զԴանիէլ...:

## 330

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Փիրդ. Նստ. 231—232, Հոգւոց վանք*

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

... Գրեցաւ եղանակաւոր տառս ձեռամբ ... Կարապետ գրչի... ի հայ-րապետութեան տեառն Ստեփաննոսի, և մերոյ առաջնորդի սուրբ ուխտիս Վարագայ տէր Յովաննէս եպիսկոպոսի, և ի թագաւորութեան Ջհանշայ փաթշահին, որ յայսմ ամի եկեալ բազում զօրօք և կամի պատերազմել ընդ Հասան-բէկին, զոր տէր աստուած յաջողումն տայցէ սմա, վասն զի պարիսպ ամուր է քրիստոնէից։

Եւ աւարտեցաք ի քաղաքս Վան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածած-նիս, և նախավկայ սուրբ Ստեփաննոսիս, և սուրբ Սահակ հայրապե-տիս...*։

* Հիշատակարանի տարեթիվը չի պահպանվել, բայց այն գրված պետք է լինի 1467 թ. մայիս-նոյեմբեր ամիսներին, որովհետև Ջհանշահը Ուզուն-Հասանի դեմ արշավանք սկսեց 1467 թ. մայիսին և պարտություն կրեց ու սպանվեց նոյեմբերին։

## 331

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրդ. Նոտ. 229. Դերդին գյուղի եկեղեցի*

*գրիչ՝* Յակոբ
*վայր՝* Արծկէ

*... Եւ արդ, դրեցաւ սա ի քաղաքս* Արծկէ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս և սուրբ Նշանիս պատերազմի, ի թուին Հայոց ՋԺԶ. (1467), ի թագաւորութեան որդոյ* Ջհանշայի՝ Հասան-Ալի *իմիրզին, և ի կաթուղիկոսութեան տեառն* Ըռըստակէսի՝ *ընդհանուր Հայոց,* Աղթամարայ՝ *տեառն տէր* Ստեփաննոսի: *Յայսմ ամի յորում* Ուզուն-Հասան զՋհանշէն *կոտորեաց, և մեք յահ ենք և ի փախ, և ի դառնութեան ժամանակի, ձեռամբ* Յակոբ *եպիսկոպոսի։*

## 332

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 0390*

ա

*գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Ոստան

275բ *... Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց՝ սուտանուն քահանայ* Կարապետ *... կատարեցի զսա մեղսամած մատամբս ի մայրաքաղաքս ի յ*Ոստան, *ի դուռն Աստուածածնին Քարի, որ է ծովահայեաց, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Ստեփաննոսի նախավկային. ի հայրապետութեանն տեառն տէր* Ստեփանոսի *և ի թուականիս մերոյ ի ՋԺԶ. (1467) ամին... ի ստոյգ և յընտիր օրինակէ, կենօք տառապանօք և բազում տրտմութեամբ, ի դառն և ի վշտաբեր ժամանակիս, որ՛ կանք ի ձեռս այլազգացն ի ծառայութիւն։*

276ա *Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս... յիշեցէք... զիս՝ զամենամեղ և զմեղսաթաւալ գծագրող սորին* զԿարապետ, *և զծնօղսն մեր՝* զՍտեփանոս *քահանայն և* զՓաշայ, *և զպապն իմ* զՅոհաննէս *քահանայն, և զեղբայրն իմ* զՅովաննէս *քահանայ, և զքոյրն իմ* զԱրմանի, *և զկենակիցն իմ* զՇամէլէf, *և զայլ ամենայն արեան մերձաւորսն...։*

276բ *... Յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք ստացողի սորին* Սուլտանշին, *և ծնօղաց նորա, և ամենայն զարմից նորա, մանաւանդ ի ժամ սուրբ և սոսկալի և հաշտարար և մեղսաքաւիչ սուրբ պատարագին լի բերանով և ուղիղ մտօք աստուած-ողորմի ասացէք* Սուլտանշին, *և իւր ծնօղացն* Աւետիսին *և* Ջամելէfին. *և կենակցին* Նիգարին, *և որդոցն* Մկրտչին, Յովանիսին, Յոհանիսին *և* Մխիթարին, *և դստերացն* Գուլումին *և* Սուլթանին, *քուերցն* Խումարին, *և որդոցն* Նորատունկ *սարկաւագին և* Խաչատուն *և* Խալինասին, *և եղբարցն* Շուվանին, *և որդոցն* Մուրատշին, *և* Պարընգու-

ծին, և Ջրճանշային, և Շայինշին, և հօրեղբօրն Թաւաֆալին, և որդում Ջաֆարին, և պապում Մկրտչին, և չոչ մօրն Ուլուխաթունին, և Խաթմելէֆին, և այլ ամենայն ազգականացն և արեան մերձաւորացն նորա, և աստուած-ողորմի ասացէք նոցա, զոր աստ գրեցաք...։

Բ

ծաղկող՝ Մինաս

Ցբ ԶՄինաս բազմամեղ Հոգի ամենայն մեղաւք ի լի նկարող յիշեցէք ի բարին Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ ի յիւր միւսանգամ գալուստն, ամէն*։

## 333

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սեբաստիա, ս. Նշան 31, ՀԱ, 1925 ստուն. 258—259

գրիչ՝ Կարապետ

վայր՝ Ոստան

...Պատուական քահանայն Յովհաննէս ցանկացող եղեալ այս աստուածախօս սուրբ Աւետարանիս ետ գծագրել զսա ի հալալ և քրտնաջան վաստակոցն իւրոց յիշատակ բարի հոգոյն իւրոյ, և ծնողացն իւր՝ հօրն Թումային, մօրն Մոչանին, և կենակցին՝ փոխեցելոյն ի Քրիստոս Նշխունին, և որդոյն Սարգիս քահանային, և զաւակաց նորին, և կենակցին Սուլտանին, և տղայոցն Տովլաթիարին և Թիմին, հօրեղբօրն Յովհաննիսին և Սիմէօնին, պապին Մարտիրոսին, և չոչ մօր Ղըբելին, եղբօրն Ջանիբէկին, և քուերն Խալիմին, մօրքրոջն Սառային, տանուտիրոջն Յովհաննէսին, որդոյն Աստուածատրոյն, դստերացն Սաղտաղատլուին, որդոյն Թորոսին, հօրքուերն Շարմէլէֆին, և զաւակացն Սիմէօնի, Յոհաննիսի և Յովանիսին, և այլ ամենայն արեան մերձաւորացն և ամենայն ազգականացն իւր՝ կենդանեացն և հանգուցելոցն ի Քրիստոս...։

Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց՝ սուտանուն քահանայ Կարապետ՝ տեսի զսէր և զփափագ պատուական քահանային Յովհաննէսին և զորդոյն զՍարգիս քահանային, զոր ունէին առ հոգևորն, և իմով իսկ տկարութեամբ և անարժանութեամբ ի յանձն առի և ամենակարողն զօրութեամբն աստուծոյ կատարեցի զսա մեղսամած մատամբս իմոյ ի մայրաքաղաքս ի յՈստան, ի դրունս սուրբ Աստուածածնին Քարի, որ է ծովահայեաց, ընդ հովանեաւ սորին և սուրբ Ստեփաննոսի նախավկային, ի հայրապետութեան տեառն տէր Սաեփանոսի և ի թուականին Հայոց ի ՋԺԶ. (1467) ամին։

---

* Նկարչի այս հիշատակագրությունը գրված է մի մեծագիր խաչապատկերի ստորին լուսանցքում։

Խաչի աջ կողմում նկարված է ձեռագրի ստացող Սուլտանշան, հետաքրքիր հագուստներով. նկարն ունի մակագրություն. «Սուլտանշան՝ ստացող սուրբ Աւետարանիս՝ յիշեցէք»։

## 334

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏՈՒՄԱՐԻ ՅԱԿՈԲԱՅ ՂՐԻՄԵՑԻՈՅ

Երևան 9222,գ

գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Տարօնոյ գաւառ, Եղրդտ վանք

... Իսկ* ի մեր սկսանելն և ի գրել զՏումարատետրս ի ՋԺԶ. (1467) թվականին Հայոց, ի խնդրոյ ցանկալի և սրբասէր կրօնաւորին /// (քերված) սուրբ Աստուածածնէն, վասնորոյ աղաչեմ զամենեսեան արասաւալի ղի||մաւք յիշեցէք առաջի անմահ գառինն Քրիստոսի զկուսակրօն աբեղայն զԴաւիթ, և զիւր վարդապետն՝ ղծաղկեալ ալեաւք ծերունին զտէր Նիկողայոսն, և զհայրն իւր զԱպտլմսէհն, և զմայրն իւր զՇամամ, և զեղբայրն իւր զՅովաննէս, և զամենայն արեան մերձաւորսն իւր...։

Գրեցաւ Տումարատետրս ընդ հովանեաւ սուրբ Յովանիսին, սուրբ Աստուածածնին, և սուրբ Ստեփանոս նախավկային, և սուրբ Գրիգոր մեր լուսաւորչին, ի գաւառն Տարօնոյ, ի հռչակաւոր վանքս Եղրդտ կոչեցեալ, ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի Ստեփանոսի: Վա՜յ ինձ հազար բերան, որ զանունս ունիմ և զգործս ոչ. աղաչեմ զձեզ, որ միոյ ողորմու արժան առնէք զանարժանս. և Քրիստոս ողորմի ձեզ և մեզ և ամենայն քրիստոնէից ննջեցելոցն, ամէն։

Բայց աղաչեմ զօրինակողսդ, որ ուշիմ մտօք շարագրէք զսա, զի տումարական արհեստ անհնար է առ ի ներընդունել զյաւէտն և զնուաղն, զի բոլորովին արհեստս այս ի վերայ ճշմարտութեան է հիմնաւորեալ, և ստութիւն ի սա ամենևին անկար է առ ի ներգործել...։

## 335

## ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 8393

գրիչ՝ Մարգարէ
վայր՝ Մեծկերտու գաւառ, Սիրունքարի վանք

ա

354ա ...Գրեցաւ եղանակաւոր տառս ի թւ. ՋԺԶ. (1467), ի սուրբ ուխտս որ կոչի Սիրունքարի, ի գաւառիս Մեծկերտու, ընդ հովանեաւ սուրբ Յակովբա, ձեռամբ բազմամեղ գրչի Մարգարէ սուտանուն կրամաւորի, յիշատակ ինձ և ծնաւղացն իմոց Ներսէսին և Խութանին:

Արդ, աղաչեմ ըզձեզ զամենեսեան, ով ոք տեսանէք կամ եղանակէք յիշեսջիք ի Քրիստոս զՄարգարէ անպիտան գրողս և խոշորութեան և
354բ սղալանաց մի մեղադրէք, || զի կար մեր այս էր, զի հարցըտես չունէի և անճարեցա և գրեցի ի լաւ և յընտիր աւրինակէ, որ ասի Խլուկ։ Այլ

* Նախորդում է հեղինակ Հակոբ Ղրիմեցու հիշատակարանը «Մեկնութիւն Տումարի» աշխատության գրության մասին (տե՛ս 1416-ի թվաշարքում)։

և յիշեսջիք ի Քրիստոս աստուած զառաջնորդ սուրբ ուխտիս զտէր Ստեփանոս եպիսկոպոսն և զայլ միաբան եղբարքս, որ կան ի սմա՝ զԲ. (2) Պաւղոս ծեր քահանայքն, և զԿիրակոս կրաւնաւորն, և զԱլէքսիանոսն, և զՅովսէփն, և զԳ. (3) դերաբոյսք մանկտին՝ զԿարապետն և զԳրիգորն և զՅովաննէսն, և զհաւատուոր մայրապետն, որ աշխատէր և պատրաստէր զմարմնաւոր կերակուրն, և ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս, առհասարակ, ողորմեսցի Քրիստոս աստուած, ամէն։

Բ

225բ Ո՛վ սպասաւորք եկեղեցոյ, յորժամ տեսանէք կամ պաշտէք յիշեցէք ի Քրիստոս զանիմաստ դրչակս զՄարգարէ մեղաւք լցեալս և անմեղադիր լիցուք, զի ժամանակս Թամզում ամիսն էր, և Թանաքն մած էր, և կար մեր այս էր․ և մեզ և ձեզ ողորմի Քրիստոս, ամէն։

336

ԱՒԵՏԱՐԱՆ

Սեբաստիա, ս. Նշան 30, Հ.Ա. 1925, այուն. 257

գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Կիւրղի վանք

314բ … Արդ, գրեցաւ ի Թուականութեանս Հայոց ՋԺԶ. (1467), ի վանքս որ կոչի Կիւրղի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Լուսաւորչին և սուրբ Յովհաննու աւետարանչին և սուրբ Նշանին և այլ բազմահաւաք սուրբ նշանացս, որ աստ կան հաւաքեալ, ի յառաջնորդութեան տէր Ստեփանոսի և Կարապետ վարդապետիս և այլ սրբասէր կրաւնաւորացս և միաբանիցս սուրբ ուխտիս, ձեռամբ բազմամեղ և անարհեստ գրչիս Ստեփանոսի, զի այսչափ էր կար մեր. և անհաւասարութեան և խոշորութեան և սխալանացս մի մեղադրէք…։

Ես նուաստս հողս Սանակ երէցս զմտաւ ածի զայս ամենայն և յիշեցի զբան մարգարէին որ ասէ, Թէ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընտանեակ յԵրուսաղէմ… ի յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց՝ <և> Տէր-Գարոնին և մաւրն իմոյ Մամա-Խաթունին, և կենակցին իմոյ, և դեռաբոյս զաւակին իմոյ Խաչատուրին, զոր տէր աստուած վայելել տացէ…։ Յիշեսջիք սրտի մտաւք ի մաքրափայլ աղաւթս ձեր զփցում և զխոշոր գրչով զՍտեփանոս, և յանդգնութեանս իմոյ ոչ մեղադրել, զի կար մեր այս չափ էր։

Եւ կրկնակի յիշեսջիք զՍանակ երէցն …։

337

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5553

Ա

գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Կիւրղի վանք

…Արդ, ես՝ նուաստ հողս Ստեփանոս, ծոյլս և անարժանս յեպիսկոպոսաց դասուց, որ միայն զանուն ունիմ և ըզգործ ոչ, որ լոկ անու-

ամբ եմ եպիսկոպոս և ոչ այլ ինչ իրաւք, միայն յուսացեալ եմ յաղաւթս
328ա սրբոցդ, որ գայք յետ մեր և աստուած-ողորմի ասելով, զի և դու[ք] գըտ||-
չիք ողորմութիւն ի յողորմածէն, աստուծոյ։

Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց Ջ. և ԺԶ. (1467), ի վանքս որ կոչի Կիւրղի, ընդ հովանեաւ սրբոյհոյ Աստուածածնիս, և սուրբ Լուսաւորչիս, և սուրբ Յովհաննու աւետարանչին, և սուրբ Նշանացս, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Ստեփանոսի և Կարապետ վարդապետի, զոր տէր աստուած ՝հաստուցումն առնէ երախտեաց նոցա ի յիւր միւսանգամ գալստեանն, և Գրիգորի փակակալին սուրբ տաճարացս, և այլ կրաւնաւորացն ամենեցուն, զոր յանուանէ ոչ կարեմք գրել զամենեցունցն։

Արդ, աղաչեմ զձեզ... յիշեցէք սրտի մտաւք ի մաքրափայլ աղաւթս ձեր զփծուն և զանարհեստ գրչակս և սղալանաց սորա և անհաասարութեան գրոյս ոչ մեղադրել, զի կար մեր այս չափ էր, ղի գուք զմեր սղալանս ոչ յիշէք և աստուած զձերն չյիշէ։

ստացող և կազմող՝ Գրիգոր
վայր՝ Աւթմըճա վանք (մերձ ի Տիվրիկ)

Բ

328բ Ես՝ Գրիգոր աբեղայս, որ փափաքեցա այս սուրբ և աւետաքարոզ
Աւետարանիս և մարգարէին բանին, թէ՝ Երանի որ ունիցի յիշատակ ի
Սիովն և ընդանեակ յԵրուսաղէմ, և գրել տուի զսուրբ Աւետարանս ինձ
և ծնաւղաց իմոց յիշատակ՝ Ներկըրար Գրիգորին, և մաւրն իմոյ Շուշանին՝ զփոխեցեալն առ Քրիստոս, և մաւրուն իմոյ մըղտեսի Մելիքին, և եղբարցն, և ազգականացն, և ամենայն արեան մերձաւորացն, ի հալալ արդեանցն իմոց, և դրբի յիշատակ ի վանքն որ կոչի Աւթմըճա, ի դուռն սուրբ Աստուածածնին և սուրբ Յակովբայ, ի հայրպետութեանն տէր Մըկրտչին, և Բարսեղին, և Մարտիրոս աբեղին Վաւտըրցուն։

Այլ խնամով պահողքն աւրհնին յաստուծոյ, և ի սուրբ յԱստուածածնէն, և ի սուրբ Յակովբա սքանչելագործ սուրբ խաչէն, և վատթար պահողքն պատժին յաստուծոյ և ի սրբոց նորին։

Այլ և փակակալ սուրբ ուխտիս զգաստութեամբ լիցի, զի յորժամ ահ
329ա անկանի և փախուցանէ և տանի ի քաղաքն, և յորժամ || խաղաղութիւն
լինի՝ դարձուցանէ և բերէ ի վանքն, զի մի ապերախտ գտանիցի յաւուրն դատաստանին։ Այլ և յայն սակս գրեցաւ, զի յորժամ զտաւմն սուրբ աւետարանչին կատարեն և զ՚էր ընդ եզբարսն կարդայք, և հետ ժամ արձակմանն՝ զյիշատակարանն կարդայք, և Քրիստոս որդի ասէք, և հայր մեր որ յերկինս ասէք, և աստուած ողորմի ասէք, և թողութիւն խնդրէք յաստուծոյ և աստուած զձերն թողցէ ձեզ՝ զյանցանրս ձեր, ամէն...։
329բ Արդ մի ոք իշխեսցէ հանել զսա ի դրանէ սուրբ Աստուածածնէս և ի
սուրբ Յակովբայ. ոչ առաջնորդ, ոչ հայրապետ, և ոչ ազգական, և ոչ գեղի կամ երէց կամ տանուտէր, և կամ այլ ոք։ Եթ[է] յանդդնի ոք և հանէ զսա ի դրանէ սրբոցս՝ նա պատիժ կրեսցէ յաստուծոյ և ի սրբոց նորա,

այլ խնամով պահողքն ահրհնին յաստուծոյ և յամենայն սրբոց նորա, ամէն և եղիցի*։

Գ

329բ Եւ զկազմող սուրբ Աւետարանիս՝ զԳրիգոր սուտանուն կրաւնաւորս, զմեղաւք խոցեալ հոգիս, և զծնաւղսն իմ՝ զԳրիգոր ներկըրարն զՏիվրիկու քաղաքին, և զմայրն իմ զՇուշան՝ զփոխեցեալսն ի Քրիստոս, և զմղտեսի Մելիք մայրն իմ, որ յոյժ աշխատութեամբ սնոյց, և զամենայն արեան մերձաւորսն իմ՝ աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ կրաւնաւորք, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր. և որք յիշէ յիշեալ լիցի ինք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն**։

## 338

## ՃԱՇՈՑ

Նիկոմեդիոյ առաջնորդարան, Մ.Տ.Մ.

ստացող՝ Ծովան
վայր՝ Սեբաստիա

133ա Ի թվ. ՋԺԶ. (1467) բերաւ աստ։ Յիշատակ է սուրբ գիրքս մղտիսի Ծովանին, ի քաղաքիս Սեբաստիոյ, ի շուկայի մահալայն, ի դուռն սուրբ Աստուածածնի եկեղեցոյ։

## 339

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՍՕՎ 111 (900), հա. Ա, 497—498

կազմող՝ Աբրահամ
վայր՝ Պաւնտոս քաղաք (Տրապիզոն)

309ա Կազմեցաւ ցանկալի սուրբ Աւետարանս ի ծովահայեաց քաղաքս Պաւնտոս, ի դրան սուրբ Ամենափրկչիս, որ է վանք և տեղի կրաւնաւորաց ձեռամբ յոգնեղկելի և անարժան կրաւնաւորի՝ Աբրահամ պիտակ անուն վարդապետի...։
Ի թվին ՋԺԶ. (1467), յամսեանն աւգոստոսի, և Հայոց՝ ահկի։

---

* Այս Բ. հիշատակարանը ստացողի անունից գրել է ձեռագրի դրիչ Ստեփանոս եպիսկոպոսը։ Հաջորդ հիշատակագրությունը (Գ.) գրված է արդեն ստացող և կազմող Գրիգորի սեփական ձեռագրով։

** Ձեռագրում կա նաև հետագա ստացող Թշթշեց խոջա Ամիրաղի անթվական հիշատակարանը։ Ամիրաղան իր եղբայրների հետ միասին «նորոգել ետուր զսուրբ Աւետարանս, որ կենա ի դուռն սրբոյն Ստեփանոսի Նախավկային և Սահակա հայրապետի, յիշատակ իւրն և ծնօղաց իւրոց» (էջ 330ա)։ Հնագրական տվյալներով այդ հիշատակարանը գրված պետք է լինի ԺԶ. դարում։

## 340

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Բակուրան, «Կիպրոս կղզի», էջ 56—57

Հետ. ստացող՝ Սարգիս եպիսկոպոս,
առաջնորդ Քաղաքիս Լաւքօշայ*

...Եւ եղև այս, ո՜վ քրիստոսասէր ժողովուրդ, ի Կիպռոս կղզոչ, ի մայրաքաղաքն Լեֆուսիեայ՝ սքանչելագործութիւնս և զնշանս այս, զոր բազում բաղձանաւք կամիմ պատմեզ ձեզ։ Ի Քրիստոսէ փրկչէն մերմէ մարդեղութենէն ՌՆԿԷ. (1467) ամի և ի մեծ թուականութեանս Հայոց ՋԺԶ. (1467), ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսի, և յեպիսկոպոսութեան Կիպռոսիս տէր Սարգսին, և թագաւորի ռէ Ճագին** դեկտեմբեր ԺԶ. (16)։ Եղեալ էր երաշտութիւն և անձրև ոչ գայր վասն մեղաց մերոց... և բազում չրհորք և աղբերակունք ցամաքեցան. և ելեալ Հոռոմնին և Ֆրանկնին ի յաղաչանք ի տէր ողորմեան երկու երեք անգամ վասն անձրևու, և ոչ անձրևեաց։ Եւ ապա յետոյ Հայոց ազգս առին հրաման ի Ֆռանգաց, զի և նոքա ելանիցեն ի յաղաչանք ի տէր ողորմեան. և ժողովեցան և ելին եպիսկոպոսն և քահանայքն և ժողովուրդքն և վանականքն, արք և կանայք, ծերք և տղայք առհասարակ. և ապաւինեցաք ի գթութիւն խաչեցելոյն վասն մեր Քրիստոս աստուծոյն և ի սուրբ Խաչ նորին սուրբ Նշանին Հայոց, որ կայ այժմ ի քաղաքին Լեֆուսեայ՝ զսքանչելագործ։ Եւ ընթացան ամենեքին առհասարակ սուրբ զգեստիւ շուրջառաց, և սուրբ նշանաւ և սուրբ աւետարանաւ, սաղմոսիւք, աւրհնութեամբ և երգովք հոգևորաւք և բազում արտասուաւք և պաղատանաւք ելեալ ի յարևելից դռանն քաղաքին և գնացեալ մինչ Ասորոց վանքն սուրբ Խաչն, և անտի դարձեալ եկեալ պաշտելով ի քաղաքն, և մտեալ ի միւս դուռն Արևմտից քաղաքին. և երկինք և աւդն ամենևին պարզ էր իբրև զամառնային, և եկեալ ի տեղի մի որ կայր ջուր, և որժամ ընթերցան զսուրբ Աւետարանն և զաղաւթսն, և հասուցեալ զսուրբ Նշանն ի ջուրն, ո՜վ զարմանալի հիացմանս, զի ի նոյն ժամայն ամպեց երկինքն արևմտից հիւսիսոյ կողմն և սկսաւ անձրև, և մինչև զերկիրն լիացոյց։ Եւ ուրախացեալ բերկրեցան ամենայն հաւատացեալ քրիստոնեայքն և առաւել Հայոց ազգս, որ փառաւորեաց զսուրբ Նշանն։ Եւ ծանեան ամենայն ազգ քրիստոնէից, զի ճշմարիտ և ուղղափառ հաւատ է Հայոց ազգս...։

## 341

## ՅԻՍՈՒՍ ՈՐԴԻ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Երևան 6642

գրիչ՝ Սողոմոն
վայր՝ Երուսաղէմ

127բ ... Արդ, գրեցաւ Յիսուս որդիս ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի վանքս սուրբ Փրկչի, ի թըւիս Հայոց ՋԺԶ. (1467), ձեռամբ յոգնամեղ և սուտ-

* Հիշատակարանի հեղինակի մասին տվյալը քաղում ենք գրքի 68 էջից։
** Իմա՝ Ցակոբ Բ. Լուսինեան։

անոմ աբեղայի Սողոմոնի, որ անուամբս միայն կոչիմ և գործովս եմ յոյժ հեռի. ի խնդրոյ եղբաւր մերոյ Յովաննէս միակեցի՝ մահդասի և
128ա ճգն||աղդեաց առաքինի։

Արդ, աղաչեմ ղամենեսեան, որք հանդիպիք սմա, յիշեցէք ի մաքրափայլ և ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր զՅովաննէս միակեցն, որ ստացաւ ղսա ի վայելումն անձին իւրոյ, և յիշատակ յետ իւր հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հաւր և մաւր իւրոյ, և եղբաւրն՝ Կարապետին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։ Նա և զեղկելի և զանպիտան գրիչս անարհեստ՝ զՍողոմոն, հանդերձ ծնողիւքն իմ, յաղաւթս յիշեցէք և մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ առհասարակ վերոգրելոցդ ի սմա, և զձերն թողցէ Քրիստոս աստուած, զի ի միասին ցնծասցուք ի Քրիստոս, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 342

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երեւան 7433

գրիչ՝ Մարտիրոս
վայր՝ Կաֆա

440բ ...Տեսեալ ղայսպիսի գանձս աստուածային, ցանկացաւղ եղեալ աստուածային գանձուցս և եռափափաք սիրով և յոյժ բաղձմամբ սրտիւ ես Մարտիրոս անպիտան կրաւնաւորս, և գրեցի զԱյսմաւուրքս զայս յիշատակ հոգւոյ իմո և ծնաւղացն, ի թվականութեանս Հայոց ՋԺԶ. ((1467), ի նուաղեալ ժամանակիս ըստ իմաստնոց կարծեացն, ի հայրապետութեանըն տեառն Առիստակիսի կաթուղիկոսի սուրբ Էջմիածնին, և նահանգիս Հոնաց աշխարհիս արհիեպիսկոպոսին տէր Մաղաքիայի ամենայն հիւս[իս]ական կողմանց, և յաջորդին իւրո տէր Յովաննէս արքեպիսկոպոսին, գրեցաւ սա ի յանբարի և ի դառն ժամանակիս, որում պակասեաց սուրբք և ճշմարտութիւնք ի մարդկանէ, և նուազեաց յերկրի փափաքումն սուրբ գրոց և ընթերցումն սուրբ բանից աստուածայնոց։

Արդ, ստացաւ զսա յայսմ ժամանակիս վերոգրեալ Մարտիրոս անպիտան կրաւնաւորս, և գրեցի ղսա ձեռամբ իմով և եդի յիշատակ ի եկեղեցիս սրբոյն Յակոբա Մծբնա հայրապետին, ի յիշատակ հոգւոյ իմոյ, և ծնողաց իմոց՝ Ստեփաննոսին, և մաւրն Էտիլ-Մելիքին, և եղբարցն Խոջերեսին և Ավետիքին, և քրոջն Պէմելիքին, որ տարաժամ մահուամբ գնացին առ Քրիստոս յոյսն ամենեցուն։

441ա Այլ և յիշեսջիք և նախապապսն՝ զտէր Տուրն և || Ստեփաննոսն և զհանեբսն՝ զԳարանէն, և զնշոնորն:

Եւ դարձեալ, յիշեսջիք զմաւրքոյրն զՀոեփսիմէն և զՇիրին-Մելիքն՝ զհանգուցեալն ի Քրիստոս։ Այլ և յիշեսջիք զհաւրքոյրն զՄար-Տիկինն և զՖռանկ-Խաթունն, ընդ նմին յիշեսջիք և քեռին իմ Յուսէփն, ղորդին իւր զՊարոնլուսըն, զոր տէր աստուած երկայն աւուրս արասցէ, ամէն։ Այլ և յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զնախնիքն մեր՝ զկենդանիսն և զհանգուցեալսն ի Քրիստոս, ամէն։

Դարձեալ, յիշեսջիք զառաջնորդ վանացըս՝ զարհիեպիսկոպոսն զտէր Մաղաքիայն, որ միշտ և հանապազ մեզ հոգևոր և մարմնաւոր կերակրաւ ուրախացուցանէ զմեզ, զոր տէր աստուած զիւրքն իւր անմահական կեանս ուրախ առնէ՝ զիւր հոգին և զիւր ծնողացն, և զտէր Յովանէս եպիսկոպոսն իւր յաջորդ և ժառանգապահ իւր սուրբ աթոռոյ, ամէն։

Այլ և յիշեսջիք զտէր Խաչատուրն, զաւրինակիս ջնորհաւղն, զոր տէր աստուած փոխարէն հատուսցէ զիւր արքայութիւն, ամէն։

Այլ և յիշեսջիք զվանիցս միաբան եղբարքն՝ զտէր Ղազար կրաւնաւորըն, և զտէր Ստեփանոս աբեղան, որ զգրոցս թուղթն կոկեաց, զոր տէր աստուած վարձս տացէ իւր, ամէն, և իւր ծնողացն։

Դարձեալ յիշեսջիք զՄեղիտէ զմանկագոյն կրաւնաւորն և զծնողսն իւր, որ ծաղկով զարդարեաց զգիրքս զայս, զոր տէր աստուած անփորձ պահէ, ամէն։ Այլ և յիշեսջիք զհոգևոր հայրն զՆիկողոս աբեղան և զծնողսն իւր։

Դարձեալ, յիշեսջիք զազգակիցն իմ զՄխիթարն և զՄկրտիչն:

Արդ, աղաչեմ զձեզ ամենեսեան, որք հանդիպիք սուրբ նահատակութեան գրոցս կարդալով կամ աւրինակելով, արժանի առնէք յիշման հանդերձ ամենայն վերոգրեալ յիշեցելովքն, զի ի ձեռն սրբոց մարտիրոսացն և նահատակացն բարէխաւսութեամբն թողցէ զմեղս նոցա և փրկեսցէ յանշէջ գեհեննոյն և յանզերծանելի տանջանացն, և իւր աստուածային բարեացն և երկնից արքայութեան արժանաւորեսցէ...։

441բ ...Գրեցաւ գիրքս այս ի մայրաքաղաքս ի Կաֆա, առ ոտն սրբոյն Աննաի՝ մաւր տեառն Մարիամու աստուածածնի, և առաջնորդութեան սրբոյ ուխտի վանացս՝ տէր Մաղաքիա արհեպիսկոպոսի ամենայն հիւսիսական կողմանց։

Ես Մարտիրոս աբեղաս, որ ստացա գիրքս զայս և ձեռամբ իմով գրեցի՝ յիշատակ հոգւ[ոյ] իմո և ծնողացն և վերոգրեալ ննջեցելոցն։ Եւ յիշատակ կու դնեմ, ի սուրբ Յակոբ եկեղեցին յիշատակ. ոչ ոք իշխող չի լինա՝ ոչ ազգ, ոչ տակ, ոչ երէց, ոչ տանուտէր իշխանութիւն չունենա, որ զայս գիրքս կամ ծախելոյ, կամ գրաւելոյ, կամ զյիշատակսն ջնջելոյ, եթէ ոք յանդգնի կամ գրաւէ կամ այլ ինչ՝ զպատիժն ի Քրիստոսէ և ի սուրբ արեամբ նահատակեալ վկայիցն առցէ...։

Ընդ նմին յիշեսջիք զսուրբ եկեղեցոյն եկեղեցապան՝ սուրբ Յակոբա՝ զՄիքաէլ էրէցն, որ միշտ և հանապազ, որ աշխատեցաւ հետ առ մեզ, զոր աստուած զիւր զաւակսն տուրս առնէ, ամէն։

## 343

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԻՔԱՅԷԼԻ ԱՍՈՐԻՈՅ

«Արձագանք», 1888, № 10, էջ 129

Վկայութեամբն աստուծոյ և տէր Մակար եպիսկոպոսին, և տէր Պօղոսին, տէր Վարդանն Բաբերդցի ետ զգիրքս զայս յիշատակ իւր, և ծնողացն իւր՝ հաւրն Սիմէոնին և մաւրն Շանզատին, և կողակցին Փար-

ւարին, և եղբարցն իւր Շահյազին և Ճանումին, ի ձեռն Ղուկաս վարդապետին, յորժամ ընթեռնուք աստուած ողորմի ասէք դոցա հոգւոյն...։

Ի թվին Հայոց ՌԺԶ. (1467) և մարտի ամսոյ ԺԸ. (18) եբեր զգիրքս զայս որդին /Ի/ ասաց թէ ԺԲ. (12) սպ[իտակ] տուր և առ. տուի ԺԲ. (12) սպ[իտակ] և առի։ Պատճառն այն է, որ գրաւ էր դրել։

## 344

## ՄԱՇՏՈՑ

Երևան 4515, էջ 191 (Ղ. Փիրղ. Նշխարք պատմութեան հայոց, Ի.)

գրիչ՝ Մելքիսէթ

...Արդ, ի թուաբերութեանս Հայկազեան տումարի ՌԺԶ. (1467) կատարեցաւ սուրբ գիրքս, որ կոչի Ձեռնադրութիւն, ձեռամբ անարհեստ գրչի Մելքիսէթ սուտանուն քահանայի, ի խնդրոյ հոգևոր եղբօրն իմոյ տէր Թումայ արհիեպիսկոպոսի։



ՋԺԷ 1468

## 345

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7757

գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Հիզան

328բ ... Արդ, կատարեցաւ աստուածախաւս Աւետարանս ձեռամբ անարժան և ախմար գրչի Մկրտչի մեղաւորի, ի խնդրոյ պատուական կրաւնաւորին Սահակին*, Եւ ետ գրել զսայ յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղացն՝ հաւրն Սարգսին և մաւրն Մերդիշին, և եղբարցն Յովանիսին և Մկր[տ]չին: Զոր տէր աստուած բարով վայելել տայ զսուրբ Աւետարանս սոցա, ամէն։

Եւ արդ, ես՝ ունայ[ն]ս ի բարեաց գործոց, ըստ իմում տկարութեանս դրեցի զսուրբ Աւետարանս ի յ[ը]նտիր և ի ստոյգ աւրինակէ, կենաւք
329ա տառապանաւք և || հառաչմամբ սրտիւ Աղաչեմ զհանդիպողքդ այսմ աստուածախաւս մատենիս յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զանարժան գրիչս զՄկրտիչ մեղաւոր քահանայ, և զծնօղսն իմ զԱվրան դարբինն և զԱղուքն, և լի բերանով և բոլոր սրտիւ աստուած-ողորմի ասացէք, ամէն։

Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս յիշեցէք ի Քրիստոս զստացաւղ սուրբ Աւետարանիս՝ զՍահակ կրաւնաւորն, և զծնաւղսն, և զեղբարսն, և զամենայն արեան մերձաւորսն, և աստուած ողորմի ասացէք, ամէն։

Արդ, յիշեցէք ի Քրիստոս զքոյր սոցա զԱրղուն, և զդուստրն իւր զՇամամն, և զհարսներն՝ զՇամամն և զԳուլստանն և զՄլքանն, և աստուած-ողորմի ասացէք սոցա, ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս այս ի քաղաքիս որ կոչի Հիզան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Յարութեանն, և սուրբ Սարգսի զաւրավարին, և սրբոյն Գէորգեա, ի թվ. հայոց Ջ. և ԺԷ. (1468),

---

* Ստացող Սահակ կրոնավորի կենցաղագրական անսակեաից ուշագրավ նկարը գտնում ենք ձեռագրի 8ր էջի վրա, հոգեգալստյան պատկերի ներքևում։ Ծաղկողը թողել է հետևյալ մակագրությունը. «Սահակ արեղայն է՝ ստացող սուրբ Աւետարանիս, աղաչէ զԱստուածածինն և խնդրէ զթողութիւն մեղաց իւրոց և ծնաւղացն»։

Ձեռագրի մեջ եղող մանրանկարները Վանի (Խիզանի) դպրոցի ուշագրավ և ինքնատիպ գործերից են և արժանի են մասնագիտական ուսումնասիրության։

ի դառն և ի դժւար ժամանակի, զի յայսմ ամի* եւ Ջհանշայ ղանն ի քաղաքէն
329բ Շահաստանայ, որ է Թաւրէզ, բազում հէնիւ և զաւրաւք, և || կամէր երթալ ի վերայ քաղաքին Ամթայ, և այլ ի վայր՝ մինչ ի Դամասկոս։ Եւ ի յերթալն ի ճանապարհին բազումք գողային ի յահէ սորայ, զի այս Ջհանշայս բազում գաւառաց և քաղաքաց տիրէր և ունէր զսայ եւ՝ զիշխանութիւն Պարսից աշխարհին, մինչ ի Հրէ և բոլոր տանն Խորասանայ։ Եւ արևելք և արևմուտք ի յահէ սրոյ սորայ գողային, և մնամ թէ հիւսիս և հարաւ ի հարկապահանջութիւն էր սորայ։ Եւ էր քրիստոնէից ազնական. և բազում եկեղեցիք ի յաւուրս սորայ շինեցան և նորոգեցան. և էր խաղաղու[թիւն] Հայոց աշխարհիս. և բազմացան քահանայք և կարգաւորք և վանորայք. և էր շինութիւն ի բոլոր իշխանութիւն սորա։

Արդ, ի չուել ճանապարհի սորա՝ բազում գաւառք աւերեցան և բնակիչք գաւառացն փախչէին ի յայրս և ի ծերպս վիմաց, սովալլուկ մեռանէին։ Եւ եկեալ եհաս ի գաւառն Տարաւնոյ, ի դաշտն Մշոյ. և անդ բազում աւերս արարին զաւրքն նորա, զի բազում էին և անհամար, և ոչ
330ա ճա||նաչէին զաստուած, և ասէին թէ ի՞նչ է քրիստոնեայն, և քրիստոնէին աչք և բերան կա՞յ։ Եւ դիմեցին ի վանքն Ղազարու, և զլուսարարն խորովեցին ի կրակն և նահատակեցին, և անցին, գնացին։ Եւ ի ճանապարհին իշավանեցան. և զաւրքն ի յիւրմէն ի բաց արձակեաց, և անահ և անկասկած գոլով ի թշնամեաց, ասելով, թէ՝ Ոչ ոք է ի վերայ երկրի, որ կարէ կալ առաջի իմ և սուր քաշել ի յերեսս իմ։

Զոր աստ արարեալ թշնամեացն՝ դիմեցին ի վերայ նորա, և առին յաւարի զինչսն և զնա սպանին և զորդիս նորա։ Եւ ի սպանմանէ սորա բազում աւերք եղեն յամենայն տեղիս, եւ առաւել ի յերկիրս Հայոց. և բազում եկեղեցիք աւերեցան, և բազում քրիստոնեայք սրով և սովով մեռան, և ոչ ոք կարէ գրով արկանել և պատմել զոր եղև ի վերայ երկրի։ Եւ թանգութիւն եղև յամենայն տեղիս, և զկապիճ հացն ՃԻ. (120) թանկայ գնեցաք և զսուրբ Աւետարանս գրեցաք։

330բ Եւ արդ, գրեցաւ սայ ի կաթողիկոսութեան տեառն Ստեփաննոսի Աղ||թամարեցոյ, և ի ղանութեան այլասեռից Հասան-Ալուն՝ որդոյ Ջհանշին. զոր տէր աստուած անսասան պահեսցէ զաթոռ հայրապետական և զթագաւորական մերոյ ազին, ամէն։

Եւ արդ, աղաչեմ զձեզ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, խոշորութեան և սխալանացս անմեղադիր լերուք, զի կարն իմ այս էր։

Արդ, յիշեցէք ի Քրիստոս զստացողք սուրբ Աւետարանիս զՍանակ կրամաւորն, և զծնաւղսն՝ զՍարգիսն և զՄերդինշէն, և զեղբարքն զՅովաննէսն և զՄկրտիչն, և զքոյրն զԱրղուն և զՇամամն, զհարսերն զՇամամն և զԳուլստանն և զՄլքանն, և զամենայն արեանն մերձաւորսն. և աստւած-ողորմի ասացէք վերագրելոցս ի սմայ. և աստուած ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի յիւր միւսանգամ գալուստն, ամէն։

* Ջհանշահն իր արշավանքն սկսել է 1467 թ. մայիս ամսին։

## 346

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Հ. Ոսկյան, «Արցախի վանքերը», Վիեննա, 1953 էջ 161—162*

*նկարող՝* Ազարիա
*վայր՝* յերկիրս Գանձակայ, յաթոռս Գառնակերի

*...Արդ եղև աւարտ գրչութեան սորա ի գեղաքաղաք* Եղիվարդ, *ի կաթողիկոսութեան տեառն* Գրիգորի, *ի թվ. Հայոց ՋԺԷ. (1468), ի ղանութեան* Ճհանշահին, *ի խնդրոյ* Մատթէոս *քահանայի...:*

*Աղաչեմ յիշել զնկարող սորա զանարժան* Ազարիայ *կրօնաւոր...:*

*Եղև նկարակերտութիւն ի յերկիրս* Գանձակայ, *ի յաթոռս* Գառնակերի, *ի գուռն Ծաղկոցի սուրբ Աստուածածնիս... ի կաթողիկոսութեան տեառն տէր* Յովհաննիսի *և տեղոյս աթոռակալութեան տէր* Ներսէսի *արքեպիսկոպոսի...: Յայսմ ամի թագաւորն Վրաց* Կաւ[ր]կի *ձեռն ///*

## 347

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Հ. Ոսկյան, «Տարօն-Տուրուբերանի վանքերը», էջ 256*

*գրիչ՝* Մկրտիչ
*վայր՝* Խլաթ, Մատնէվանք

*Գրեցաւ սուրբ Աւետարանս ի* Խլաթ *քաղաքի, ընդ հովանեաւ Մատնէվանից սուրբ Աստուածածնին, սուրբ Սարգսին և սուրբ Գէորգուն, ձեռամբ յոգնամեղ և անիմաստ գրչի* Մկրտչին *սուտանուն քահանայիս, յամի ՋԺԷ. (1468)*...:*

*Եւ արդ ես* Մկրտիչ *և կողակիցն իմ* Սաղղաթ-խաթունն *տուինք զԱւետարանն սուրբ Աստուածածնին ի գուռն, որ կենայ ի ձեռն տէր* Կիրակոս *հերպետին, և տէր* Վարդանին, *և տէր* Սարգսին, *և* Յովսէփին, *և տէր* Յոհանին...:

## 348

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*«Թորոս Աղբար» Բ., էջ 377—378, Բալու, Հաւաւ գիւղ*

*գրիչ՝* Մարգարէ
*վայր՝* Մենծկերտ, Սիրունքարի վանք

*... Գրեցաւ սուրբ մատեանս ի ձեռն* Մարգարէ *կրամաւորի, ի գաւառիս* Մենծկերտու, *ի յանապատն որ կոչի* Սիրունքարի, *ընդ հովանեաւ սուրբ Յակոբայ, ի թվ. Հայոց ՋԺԷ. (1468), յաշխարհակալութեան Հա-*

* Հ. Ոսկյանի մոտ թվականը տպագրված է այսպես՝ «ՋԺԷ. (1466)»: Եթե ճիշտ է փակագծի մեջ նշվածը, ապա պետք է կարծել, որ Հայոց թվականը եղել է ՋԺԵ, ուստի և ձեռագիրն ընդօրինակվել է 1466 թվականին:

սան բէկին...։ Եւ վասն ծովացեալ մեղաց մերոց ելաւ Թավրիզու խանն և եկաւ յաշխարհս մեր, և մեծն և փոքրն շահէն սասանեցան և փախուստ առին։ Եւ ողորմածն աստուած յետս դարձոյց, և ոյժ և զաւրութիւն ետ Հասան բակին, և քան ղփարաւոն և քան զՌափսակ ի սուր սուսերի մատնեց զինքն՝ որդովք և հեծելովք, և զքրիստոնէք ազատեց ի գերութենէ։ Փառք աստուծոյ նախախնամութեան։ Այս եղև ի հայրապետութեան Վաղարշապատու տեառն Ռստակիսի սուրբ էջմիածնի աստուածագիր աթոռոյն, յեպիսկոպոսութեան տէր Ստեփաննոսի և ծերոյն՝ տէր Ղազարոյ...։

349

## ԱՆՅԱՅՏ ԶԵՌԱԳԻՐ

Ալիշան, «Հայապատում», Բ, էջ 579 «Սիսուան», էջ 228

Ի մեծ թուին Հայոց ՋԺԶ. (1467), ի բազմանալ մեղաց մարդկան և յազդմանէ չարին, Տոլղարցի ոմն Շահ-Սուար* անուն՝ եղեալ հակառակ Մսրայ սուլտանին, և շատ աւերակ էած անոր աշխարհին և շատ Թուրքման, զոր Ապաների կոչէին՝ զամենն քշտեց, և բազում չարութիւն գործեաց, և էառ զՎանկայն։ Եւ յետ այսր ամենայնի խորհեցաւ չարութիւն Սըսոյ քաղաքին և բերդին. ուստի բազում հեծելազորօք խաղաց ի վերայ նորա ի յունիսի երկրորդ օրին. և հրկէզ արարեալ անցեալ գնաց, և էառ զԱտանա և զՏարսոն և զծովահայեաց քաղաքն Յայաս. էառ նաև զԱնարզաբա, զԿովառա և զամենայն դաշտն. էառ և զՊաղրասու բերդն, զԱնրապ, զՆայիպենց, և զԼեւոն բերդն, և զԿոպիաառա, և յետոյ զԲարձրաբերդ, և տիրեաց ամենայն լեռնակողմանցն։

Եկան յետոյ սուլտանայ հեծելազօրքն. և գնաց Շահ-Սուարն ընդդէմ Շամցուն**, և կոտորեաց և արար փախստական մինչ ի Հալապ, և աւերեաց զբազում տեղիս, և դարձաւ մրմռալով ի վերայ բերդին Սըսայ, և այրեաց. և Զագամ*** պարոն կայր ի բերդն՝ պատերազմ արարին քրիստոնեայքն ի բերդէն, շատ տաճիկ**** սպանին. բայց աւելի տագնապելով տուաք զբերդն ի դեկտեմբերի երեք։

Եւ ի թուին ՋԺԷ. (1468) գնաց Շահ-Սուարն դարձեալ ի Շամցուն երկիրն, և առեալ հազար տուն տաճիկ Շամցի՝ ելից ի Սիս քաղաքն։ Դարձեալ եկն Շամցուն մեծն, և Շահ-Սուարն գնաց ընդդէմ նոցա. և Սըսու Թուրքերն և Շամցիքն***** եղան մէկ՝ ի մայիս ամսոյ չորեքտասան, և արարին պատերազմ. և խլեցին զբերդի պարոնին զձիան և զջորեստան. և պարոնն բռնեց զքրիստոնեայս և ետ ի հորն։ Եւ քաղաքացիքս ամէն

---

* Շահ-Սուար Զիւլգադրեան, Կիլիկիայի ժամանակագրության մեջ սա կոչվում է «որդի Թագաւորին Գերմանիկոյ» (տե՛ս «Սիսուան» էջ 545)։

** Այսինքն՝ Դամասկոսի տիրոջ դեմ։

*** Տպված է «Զաք» ուղղում ենք «Սիսուանի» հավելվածի համապատասխան ծանոթագրության հիման վրա (տե՛ս էջ 545)։

**** «Սիսուանի» մեջ՝ «մարաիկ»։

***** «Սիսուանի» մեջ՝ «Շահցիքն»։

*թողաք զտուն և ըռզակ. և ֆարսահ* թուրքմանն թալնեց զքաղաքն. և շատ ըռզակ առաւ. և զեկեղեցեաց անօթս կողոպտեցին. և զամենայն աւերութիւն զոր արարին՝ չեմ բաւական ընդ գրով արկանել։ Եւ մեք եկաք ի* Կոպիտառոյ *բերդն**։*

## 350

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*ԼԾՎ. 188, սյուն. 451—452, (Վարագ 2)*
*Երևան 9223, ժե*

*գրիչ՝* Ղազար
*վայր՝* Խիզան, Գամաղիէլի վանf

*Փառք... որ տրամադրեաց զմեղսամած մատոմս տասանց անարժան և ապիկար ոգոյ* Ղազարի՝ *նուաստ և անարժան կրաւնաւորի՝ գրեալ և կարդեալ զփառս երախտեաց աստուածագործ սքանչելեացն...։*

*Արդ, կատարեցաւ աստուածախաւս և տիեզերաքարոզ Աւետարանս ի խնդրոյ աստուածասէր և հաւատարիմ* Սարգիսին, *յիշատակ իւրն, և զաւակացն* Անձրևին *և* Գալին, *և ծնաւղացն* Կարապետին, *և մաւրնեղբաւրն* Յովհաննիսին, *և հաւրեղբաւրն* Յովանիսին, Թաւաֆալին *և* Աղբրացին****։ Եա դրել զսուրբ Աւետարանս յիշատակ իւրեանց, և ծնաւղացն իւրեանց, և հոգոյն իւրոյ՝* Սարգսին, *և քւերն* Ամբարին, *և* Թումին, *և* Գոգունին *և այլոցն ամենեցուն։*

*Եւ արդ, ես՝ ունայնս բարեաց գործոց, սուտանուն գրչակս, որ անուամբս եմ և եթ և ոչ արդեամբք, և երկեակ (՞), որ և հոգով կո[ւ]րացեալ և մտաւք մոլորեալ, ըստ իմում տկարութեանս գրեցի զսա՝ զսուրբ Աւետարանս՝ ի վանքս որ կոչի* Գամաղիէլ, *ընդ հովանեաւ առաքելոյս* Գամաղիէլի *և ամենայն սրբոցս, որ աստ շուրջ զմեաւք բանակեալ կան, ի յառաջնորդութեան վանացս՝ րաբունոյս մերոյ* Յոհանէս *վարդապետի և* Գաւիթ**** *եպիսկոպոսի, և ի յայլ միեղէն եղբարցս՝* Սարգսին, *և* Կարապետին, Գրիգորին, *և* Յոհանիսին, Կիրակոսին, *և* Սուքիասին, *և* Ստեփանոսին, Յովանիսին, *և միւս* Յովանիսին, *և* Ներսէս *փոքր երիցուն, զոր տէր աստուած խաղաղական կենաւք պահեսցէ զնոսա մինչև ի խորին ծերութիւն, ամէն։*

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԺԷ. (1468), ի զանութիւն* Հասան-Ալուն, *և մերոյս քուրդ ամիրիս՝* Ամիր-Մելեքին։

---

** Ըստ Ալիշանի Վարշագ ցեղի մասին է խոսքը։*

*** Հիշատակարանում նկարագրված դեպքերի մասին մանրամասնություններ տե՛ս Ալիշանի «Սիսուանի» «Ցաւելուած և ուղղագրութիւնք» բաժնում, 228 էջին վերաբերվող Բ. լրացման մեջ (էջ 545)։*

**** Տպված է «Աղբրային»։*

***** Հիշատակարանի վերջին թերթը, որ սկսում է այստեղից, այժմ գտնվում է մեր Մատենադարանի հիշատակարանների պատառիկներից կազմված տուփի մեջ, որ մուծված է Ձեռագրաց ֆոնդ 9223 համարի տակ։*

Որ և կրկին զաղերսալին,
Ձեզ առաջի արկեալ բանին,
Ջերեսս դնեմ ձեզ ի մոխրին՝
Յիշել յաղաւթս վերստին
Զանարժան գրիչս զՂազար
Եւ զհայրն իմ զԹումայ և զմայրն զԹամարին...։

Այլ և աղաչեմ զամենեսեան, որք համդի[պի]ք սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով՝ սխալման և խոշորութեան գրիս անմեղա-դիր լերուք, զի միտք իմ կուրացեալ էր ի բազում մեղաց իմոց։

Այլ և կրկին աղաչեմ զձեզ յիշեսջիք... զստացող սուրբ Աւետարանիս զՍարգիսն, և զաւակն Անձրեն և զԳազիկն, և զծնաւղսն զԿարապետն, և զմայրն, և զեղբարքն զՍամոնն (՞), և զՂազարն, և զՅովաննէսն, և զիւր որդիքն, և զամենայն արեան մերձաւորքն, և աստուած-ողորմի ասացէք սոցա, ամէն։

## 351

## ԳԻՐՔ ՍԱՀՄԱՆԱՑ ԴԱՒԹԻ ԱՆՅԱՂԹԻ

ՄՊՄ, առ Կ. Եղեան, դնված Սանասարյան վարժարանի համար, 110

գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Խարբերդ

ա

53ա Այս գծածք հանդիսադիր խմբից առաջնոցն տաւից տրամախոհ իմաստասէր մակացու արանց ներբողեան ի Դաւթէ եռամեծէ ընթաղրեցաւ։

Աւարտեցաւ Սահմանք Դաւթի եռամեծի և քաջ հռետորի ձեռամբ Խաչատրի փցում և փանաքի և անարհեստ գրչի... յիշեցէք զմեզ... և զմեր եղբայրս՝ զտէր Մկրտիչ եպիսկոպոսն...։

Ի թվին՝ ՋԺԷ. (1468), սեպտեմբեր ամսոյ Թ. (9), ի Խուլաու վանքս, որ է սուրբ Գէորգ, ի Խարբերդ:

բ

38բ Ո՛, զմեղօոր գրչակս, որ միտքս դեգերեալ կա ի զբաղմանց աշխարհիս, վա՛ ինձ։

## 352

## ՄԱՇՏՈՑ

ԲՑՎ 418

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Գամաղիէլի վանք

Փառք... որ ետ կարողութիւն... անարժան անձինս Յովանէսի հասանել յաւարտ այսմ աստուածաշունչ կտակիս, որ կոչի Մաշտոց...։ Արեցի զսա յիշատակ ինձ, և ծնողաց իմոց Մելքիսէթ քահանայի, և մօրն իմոյ Խաթուն-Մէլէքի...։ Եւ արդ, գրեցաւ սուրբ գիրքս... ի վանքս որ կոչի Գամաղիէլ, ի թուականիս մերոյ ՋԺԷ. (1468)։

### 353
### ՄԱՇՏՈՑ
*Կիպրոս, Նիկոսիա քաղաք, Մ.Տ.Մ.*

*գրիչ՝* Յակոբ
*վայր՝* Խարբերդ

*Գրիչ* Յակոբ *քահանայ*, ընդ հովանեաւ սուրբ Սարգիս զաւրավարի և որդւոյն Մարտիրոսի, ի թաղն որ կոչի* Սինամուտ, *ի քաղաքն* Խարբերդ, *ի կաթողիկոսութեան տեառն* Արիստակիսի *և յեպիսկոպոսութեան տէր* Սիմէոնի *և տէր* Առաքելի:

### 354
### ՄԱՇՏՈՑ
*Երևան 6273, էջ 366 (Փիրղալեմյանի ձեռագիր մատյանը). Ուսաստոյ՝ ի ս. Թաղաւոր եկեղեցի*

*վայր՝* Բալու դղեակ

*... Աղդանազեանս գրոհի*
*Թուաբերութեանս տումարի*
*Իննհարիւր տասն և ութի (1468)*
*Ջրաւ եղև այսմ տարի,*
*Որ անուամբ Մաշտոց կոչի.*
*Յամուր դղեակս երևելի,*
*Որոյ անուն* Բալու *կոչի,*
*Ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի,*
*Որ* Հաւավանք *վերակոչի,*
*Աթոռ մերոյ հայրապետի,*
*Հրեշտակատես տիպ տենչալի*
Մեսրովպ *անուն վարդապետի,*
*Ձեռամբ /// փծուն գրչի ///*
*Նաև զտեսուչ սուրբ ուխտիս*
*Միաբանօքն իւր գովելի...:*

*Յիշեցէք ի մաքրափայլ զաղօթս ձեր զստացող տառիս* զՇնաւֆորն *... որ ստացաւ զսա... եդ յիշատակ ի դուռն սուրբ Աստուածածնին, ի ձեռս* Առաքել *քահանային, և որդւոյն նորա* Յովհաննէս *քահանային:*

### 355
### ԱՒԵՏԱՐԱՆ
*Երևան 6933*

*գերութիւնից ազատող՝* Առաքել
*վայր՝* Թացու գիւղ

366բ *Դարձեալ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զտէր* Առաքելն, *որ բազում աշխատութեամբ դարձոյց ի գերութենէն զսուրբ Աւետարանս ի*

* *Փակագծերի մեջ, հարցական նշանով, որպես գրիչ հիշատակված է նաև Մարտիրոս քահանան:*

Թուվ[ականին] Հայոց ՋԺէ. (1468), զի գողացան զԱւետարանս ե տարան յԵզընկայն: Եւ բարեխորհ քահանայն՝ Առաքելն գնաց և բազում
307ա աշխատ||ութեամբ դարձոյց յետս։ Ինքն՝ տէրն մեր Յիսուս Քրիստոս վարձահատոյց լինի տէր Առաքելին և հանգուցանէ զիւր արքայութիւն զինքն, և զիւր ծնօղքն, և զամենայն մերձաւորքն իւր, ամէն։

Ես՝ Առաքել քահանայս, գնացի խնդիր Աւետարանիս և շատ նեղութիւն կրեցի, և դարձուցի ի գերութենէ զսուրբ Աւետարանս, և բերի յիմ բնիկ գեղն՝ ի Թացու: Եւ դուք որ կարդաք աստուած-ողորմի ասացէք Առաքել քահանային։

Ե. (5) տարի յայլոց ձեռն եկաց։ Շատ լալով ու դառնութեամբ շուրջ եկի հետ Աւետարանիս, է. (7) ամիս ի դուս կացի՝ ապա գտի [Մ. (200) կարմիր դին տուի]*։

### 356

### ԲԱՌԳԻՐՔ ԳԱՂԻԱՆՈՍԻ

Նւեան 266

գրիչ՝ Ամիրտովլաթ բժիշկ Ամասիացի

115բ Կատարեցաւ բառն Գեղիանոսի կամաւքն աստուծոյ, որ աւրհնեալ է յաւիտեանս, ամէն։

Եւ զանարժան և զանպիտան ծառայն զԱմիրտովլաթ բժիշկն յիշեցէք ի տէր, և Քրիստոս զձեզ յիշէ ի վերին յԵրուսաղէմ, ամէն։

Գրեցաւ գիրս յունվարի ԻԲ. (22), աւրն ուրբաթ, ի թվական Հայոց ՋԺէ. (1468) ամին, որ է նահանջ։

### 357

### ԱՒԵՏԱՐԱՆ

Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, № 184, ոյուն. 896

Հիշատակարանի գրիչ՝ Յովանես Երէց
վայր՝ Անկիւրիա

472-473 ...Ի թվականութեանս Հայոց ՋԺէ. (1468) էառ զսուրբ Աւետարանս ի հալալ յարդեանց իւրոց մղտեսի Մարքայ խաթունն, պղընձգործ Ոստումին դուստրն, յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնօղացն՝ Ոստումին և Մելիքին, և եղբարցն Տուրսունին, Գալիին, և մղտեսի Էմինին, և ամենայն արեան մերձաւորացն, և եդիր ի Սուրբ հոգի։ Ով հակառակի և կորզէ ի դրանէ Սուրբ հոգոյն և հանէ ըզսուրբ Աւետարանս՝ Յուդայի և խաչահանուացն մասնակից լինի, և անիծեալ յամենայն սրբոց. զի իառ ԴԾՄ. (450) սպ[իտակ], և իբեւելաց (՞) սորա ով տամահ անէ, և մի ի սորայ հանէ, նայ կրկին ամենայն սրբոց անէծք և նզովանք ի վերայ նոցա լինի։

Զյիշատակիս գրողս՝ անուամբ միայն Յովանէս երեցս, և ստացօղ, սորին յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր, և յիշօղացդ Աստուած ողորմի ի միւսանգամ գալստեան իւրում, ամէն։

* Փակագծի մեջ առնված բառերը քերված են և հազիվ են նշմարվում, հատկապես կասկածելի է Մ. (200) թվանշանի ընթերցումը։

Գրողընծգործ Ուսումին դուստրն մղտեսի Մարքային եղբայրն՝ խաւճայ Գալիին որդին մղտեսի Փալատս առ տէր յիշէք և դուք յիշեալ լիցիք ի Քրիստոսէ, ամէն։

Ի յանօրինաց ձեռքն դերի էր սուրբ Աւետարանս և բերին ի յԱնկուրիայ և ծախեցին, և էր ծախող սմա ի Գանկռոյ, ի Զուէի գեղէն, անումն Մուրվաթ։

## 358

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Գառապետեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց ի Բուլղարիա № 33 (ի Պլովդիւ), ՀԱ, 1942, սյուն. 253—254

ա

կազմող՝ Աբրահամ
վայր՝ ի քաղաքիս Պաւնդոսի (Տրապիզոն)

225ա Ջվերջի կաղմաւղ սուրբ Աւետար[ան]իս զաստուածասէր և զբարեպաշտ մանուկն զՇամշատին ոսկէգործն, որ ետ վերստին նորոգել զցանկալի սուրբ Աւետարանս մեծաւ յուսով և եռափափագ սիրով, ի պահպանութիւն աստուածապահ կենաց իւր և զաւակաց, և բարեխաւս հոգոյ և մարմնոյ իւրոյ, և յիշատակ ծնաւղացն իւր՝ հաւրն և մաւրն, և ամենայն արեան մերձաւորացն։ Արդ, որք հանդիպիք սուրբ Աւետար[ան]իս և գրիս յիշեցէք յաստուածահաճոյ աղաւթս ձեր զոսկէգործ Շամշադին Բաբերդացին և ծնաւղսն իւր...։

Ընդ նմին յիշեսջիք և զԱլեքսանոս քահանայն, զորդի Նուրպէկ աղային, որ յորդորելով մասնակից եղև կազմութեան և պայծառութեան սուրբ Աւետարանիս։

Կազմեցաւ ցանկալի սուրբ Աւետարանս ձեռամբ յոգնեղկելի և անարժան Աբրաամ կրամաւորի և պիտակ անուն վարդապետի, ի քաղաքիս Պաւնդոսի, ի դրան սուրբ Ամենափրկչի, յիշողքդ զմեզ ի բարի՝ յիշեալ լիջիք առաջի Յիսուսի։ Թվին ՋԺԷ. (1468), և յամսեանն յունիսի և Հայոց՝ մեհեկի։

բ

ստացող՝ Շամշատին ոսկէգործ
վայր՝ Կողոնիայ (Ղարասար) քաղաք

225բ Ջվերջին ստացաւղ սուրբ Աւետարանիս զպարոն Շամշատինն աղաչեմ յիշել յաղաւթս ձեր, ո՛վ մանկունք սուրբ եկեղեցոյ, որ ստացաւ զԱւետարանս ի հալալ արդեանց և յարդար վաստակոց իւրոց, և բերեալ ի քաղաքս Կողոնիայ, որ արդ ասի Ղարասար, և եդ յեկեղեցի սուրբ Աստուածածնին, յիշատակ իւր, և ծնաւղացն իւրոց Ֆախրաթինին և Հումա-խաթունին, և կենակցին իւրոյ Կուլքանին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։ Եւ մի ոք իշխեսցէ հանել զսուրբ Աւետարանս ի դրանէ սուրբ Աս-

տուածածնիս՝ յիմոց և կամ յաւտարաց՝ իմմ է ասելով, ծախելով կամ գրաւելով, կամ այլոց բաշխելով...։

### 359

### ԱՒԵՏԱՐԱՆ

Մյունխեն 1, ՀԱ, 1891, էջ 238

Հիշատակագիր՝ Մարտիրոս
վայր՝ Կիպրոս

267ա Քրիստոս աստուած, քո սուրբ ծընողին բարեխաւսութեամբ ողորմեայ Վահրամայ՝ որդոյ պրն. Ասպետի, և ծրնողաց իւրոց, և ամենայն զարմից, և քաւրն իւրոյ տիկին Թիֆանէ: Զի պարգեւեցին զԱւետարանս սուրբ Աստուածածընին սուրբ Բարսեղայ եկեղեցոյն յիշատակ, որ է ի Կիպ-րոս...:

Յայսմն ժամանակի պարգեւեցաւ սուրբ Աւետարանս ի թվաքերու-թեան Հայոց ԹՃԺԷ. (1468) ամի։ Զգրող յիշատակարանիս [Մարտիրոս]* յիշեսջիք ի Քրիստոս։

### 360

### ՄԱՇՏՈՑ

«Թորոս Աղբար» Բ., էջ 465
Ջնքուշի սիրահայեաց սուրբ Աստուածածնի վանք

գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ Երուսաղէմ

Գրեցաւ յաստուածակոխ սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի վանքս որ կոչի սուրբ Փրկիչ, ի թվին Հայոց ՋԺԷ. (1468), ի խնդրոյ... Առաքել աբեղային, ձեռամբ Աստուածատուր... աբեղայի Տրապիզոնցի:

### 361

### ԱՒԵՏԱՐԱՆ

Տեղը անհայտ, Մ.Տ.Մ.

գրիչ՝ Մկրտիչ

... Երկիւղած աստուծոյ առն Թումա անուն, որ և փափագաւղ եղեալ աստուածային և կենսաբեր սուրբ Աւետարանիս ի յիշատակ հոգւոյ իւրոյ, և եղբաւրն իւրոյ Ստեփաննոս վարդապետին, և միւս եղբաւրն Կիրակէտուրին, և ծնողաց իւրեանց՝ հաւրն իւրեանց** և մաւրն իւրեանց**, և զդեռաբոյս և զնորաբողբոջ զաւակն իւր զԱռաքել սարկաւագն, զոր տէր աստուած պահեսցէ զնա մինչև ի խորին ծերութիւն, ամէն։

* Մյունխենի նախկին Արքունի գրատան հայերեն ձեռագրերի ցուցակի կազմող Գ. Գ.-ն հայտնում է, որ անվան տեղ եղել է «մենագիր մը», որն իր կարծիքով պետք է կարդալ «Մարտիրոս»։

** Անունները չի նշանակված։

Արդ, աղաչեմք զամենեսեան որք հանդիպիք յայսմ լուսատր և կենսունակ սուրբ Աւետարանիս կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող սորա զՍտեփաննոս բաբունապետն. և զամենայն արեան մերձաւոր իւր՝ զկենդանիս և զհանգուցեալսն։ Եւ զիս մեղապարտ գրիչս՝ սուտանուն քահանայ Մկրտիչս յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։ Արդ, գրեցաւ լուսաւոր և սուրբ Աւետարանս ի թվ. Հայկազեան տումարի ՋԺէ. (1468), ի դրան կամակատար սուրբ Աստուածածնիս և Գէորգեայ զաւրավարիս, ի հայրապետութեան տեառն տէր Արիստակէսի, և ի վերագիտողութեան տեղւոյս տէր Ղուկաս արքեպիսկոպոսի։ Արդ, ես Թումէս և իմ որդի Առաքելս տուաք ընծայ զսուրբ Աւետարանս Սումբեց Աստուածածնին՝ վարդապետի գերեզմանին յիշատակ, և ոչ ոք ունի իշխանութիւն հանել զսուրբ Աւետարանս ի դրանէ Սումբեց Աստուածածնին, ոչ քահանայ և ոչ աշխարհական, ոչ իմոց և ոչ աւտարաց։ Եթէ ոք յանդգնի թէ ի քահանայից, կամ յաշխարհականց, կամ իմոց, կամ աւտարաց, կամ ծախելով, կամ գողանալով, կամ գրաւելով, կամ այլ ինչ պատճառանաւք, որ հանել շանայ վարդապետի գերեզմանէն՝ մասն Յուդ[այի] առցէ և դատի աստուծոյ, ամէն։

## 362

### ՏՈՄԱՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ

Երևան 3587

գրիչ՝ Ստեփանոս

ա

85 Յիշեա եղբայր զմեղուցեալ գրիչս և մի բերան աստուած-ողորմի ասա, և տէր աստուած քեզ ողորմի, ամէն։

Ի թվականիս ՋԺէ. (1468)։

բ

19 Ջեղկելի քարտուղարս անարհեստ քերթողութեան՝ զՍտեփանոս մոլորեալ մտաւք յիշեա, ո՜վ տէր։

Ձեռքս փտի և հողանայ,
Գիրքս յիշատակ առ ձեզ մնայ։





## 363

### ՇԱՐԱԿՆՈՑ

Վենետիկ 115

գրիչ՝ Յովհաննէս Մանգասարենց
վայր՝ Արճէշ

Գրեալ յԱրճէշ քաղաքի, ի դուռն սուրբ տաճարիս Գէորգ զօրավարիս, ի մեծ թուիս Հայոց ՋԺԸ. (1469) ամին, ի ղանութիւն Ուզուն-Հասանին, որ յայս Ա. (1) տարի Գ. (3) փաթշահ կորոյս՝ զօրօք և զաւակօք՝ զՋհանշահն, զՀասան-Ալին և զսուլտան Բուդախն, և իշխեաց ի Շամայ դռնէն մինչև ի Խորասան, և է կաթողիկոս ի սուրբ Էջմիածինն տէր Ոստակէս քաջ և արի հայրապետն։

Յանկացող եղև կրօնաւորն Զաքէոս ի սուրբ ուխտն յԱրծւաբեր Աստուածածին, ածանդակութիւն և քաջալերութիւն առաջնորդաց սուրբ աթոռոյս Յովհաննէս իմաստուն վարդապետի և տէր Յովհաննէս արհիեպիսկոպոսի, ձեռամբ Յովհաննէս երէցի՝ աշակերտի Թումայ րաբունւոյ*։

## 364

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Ն. Ջուղա 587, Ս.Հ.Ա., Մ.Տ.Մ.

գրիչ՝ Իսրայէլ
վայր՝ Մոկք, Փասավանք գիւղ

...Արդ, աւարտեցաւ սուրբ գիրքս ի յերկիրս Մոկաց, ի գեղս որ կոչի Փասավանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գրիգորիս, և սուրբ Կարապետիս, որ աստ կան կառուցեալ, ձեռամբ մեղապարտ գրչիս Իսրայէլի: Եւ ես՝ անպիտանս ի կարգաւորաց գրեցի և շնորհաւքն աստուծոյ ի յաւարտ հասուցի յիշատակ մահգասի Ստեփաննոսին, որ եռափափաք սիրով ետ գրել զսա ի հալալ արդեանց իւրոց յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, ի թուականիս Հայոց Ջ. և ԺԸ. (1469) ամին, ի կաթողիկոսութեան տէր Ստեփանոսի Աղթամարցւոյ, և ի թագաւորութեանն Հասան-բէկի, որ զանհուն զաւրսն Ջանշայ միրզին կորոյս, ի Հալպայ մինչև ի տունն Սըմրղնդայ էառ և հարկատու արար, և ոհ զանբաւ դառնութիւնս բարձած ի քրիստոնէից։ Գրեցաւ սուրբ գիրքս յիշատակ մահգասի Ստեփանոսին, և ծնաւղաց իւրոց Մելիքշահին և Մինային, և եղբաւրն Հէրապետին, և որդոցն Թումային, որ սրախողնող եղաւ ի յայլազգաց, և մայրն Մարգարիտ բազում

* Պարզ երևում է, որ Մ. Տեր-Մովսիսյանը, որի ձեռագիր ցուցակից ենք վերցրել հիշատակարանը, ընդօրինակելիս համառոտել է այն։

կրսկծմամբ տագնապէր հանապազ, և դեռաբոյսն բանրուս (՞) Յովանիսին և Խաչատրոյն և Գրռուզին... Ներսէսին, և կողակցոյն Մինային, և տղայոցն Վարդանին, Գուլստանին, Գուհարին, և գքըերն Ազգին, և որդոցն Ներսէսին, Սանակին, և որդոյն Յովանէսին, Սիոն քահանային, և Սֆանդարին, և քըերն Ամբարին, և զՆոինին, և Յովանէս քահանային, և որդոյն Ներսէս սարկաւագին, և Հազրավարդին..., Ստեփաննոս մահդ[ասո]յն, և միւս քըերն Հաքունին, և որդւոյն, և Յովանիսին, և տղայոց Յովսէփին, և մաւրքըերն Հաքունին, և Թագունին, և որդոցն Մելքիսէթին և Առաքելին...։

...Դարձեալ, յիշեցէք Ջաֆարոնց Յովաննէսն, և ղորդին իւր Ջաֆարէն, և զիւր որդիքն զԱռաքելն, զՄովսէս, զԽաչատուրն, և Ջաֆարա քահանայն՝ և զիւր խընամին՝ զՏիրանցն, զի յոյժ երախտաւոր է ի վերայ մեր, և զԿիր[ակ]ոս որդին իւր, ամէն։

Դարձեալ, աղաչեմք և յերես անկեալ պաղատիմք զդասդ քահանայից, որք կարդալով կամ աւրինակ դնելով՝ նա շաղաւթով և պատրաստելով ի յառնելն և ի ղընելն։ Ճշմարիտն աստուած վկայ է, որ յիմ գառն դատմանէն եմ տըւեր գրել զԱյսմաւուրս, վասն սիրոյն Քրիստոսի և յուսոյ արքայութեան, ամէն, ամէն։

365

ԱՒԵՏԱՐԱՆ

Սեբաստիա, ս. Նշան 31, ՀԱ, 1925, պյուն. 259

ծաղկող և կազմող՝ Գրիգոր
վայր՝ Տայշող գիւղ

... Այլ և զիս՝ զանարժան սուտանուն Գրիգոր քահանայ, որ զանունս ունիմ և գործս ոչ, որ ծաղկեցի և կազմեցի զսա ի դառն և ի կսկծալի ժամանակիս, յորում գնաց Ջհանշայն ի վերայ Ամդայ և կոտորեցաւ, և այն անիծեալ Ճսաինշէրն երեկ և թալան արար զերկիրս Ուշտունեաց, յաւուր տօնի ծննդեանն Քրիստոսի, զոր ասէ Աւետարանն, եթէ՝ Արթուն կացէք և յամենայն ժամ աղօթս արարէք, զի մի լիցի փախուստն ձեր ի ձմերանի և մի՛ յաւուր շաբաթու, զոր եղև վասն ծովացեալ մեղաց մերոց։ Եւ մեք փախուցեալ դառն սրտիւք և լալոտ աչօք, ձիմաթաթախ և տառապանօք, անկեալ ի յօտար երկիր, ի տեղիս տեղիս։ Այսպիսի կսկիծ յայսմ ամի պատահեցաւ ազգիս Հայոց, և խափանեցան եկեղեցիք և վանօրայք ի յաղօթից և ի պատարագաց։

Ցայսմ չար ժամանակիս ստացաւ զսուրբ Աւետարանս Յովանէս քահանայ, բարի յիշատակ հոգո իւրո և ծնողաց իւր, որ և ի վայելումն որդոյ իւրոյ Սարգիս քահանային և իւր զաւակացն, զի տէր աստուած պահեսցէ զսոսայն ընդ երկայն ամօք առողջ մարմնով և արդար հոգով մինչև ի խորին ծերութիւն։ Պահեսցէ տէր աստուած հոգով և ուրախ սրտով։

*Ջկորեկն յղարկէ յոլով,*
*Որ ծաղկողն ուտէ շուտով,*
*Ի գարունն եմէ բարով։*
*Թալնած ենք ու մէկ չուխով,*
*Քաղցած ենք ու մէկ հացով։*
*Այս երթայր, չէ մնալով.*
*Աստուած, ողորմեայ մեզ խիստ շուտով։*

*Կարդացողացդ և լսողացդ ողորմի Քրիստոս աստուած ողորմութեամբն ամէն։*

*Նորոգեցաւ սայ ի դառն ի վշտալից ժամանակին, ի թուականութեան Հայոց ի ՋԺԸ. (1469), ի գեւղս որ կոչի* Տայշող, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Ստեփաննոսի նախավկային, զի պահեսցէ զձեզ աստուած հոգին, ամէն։*

## 366

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՒՂԻԿԷԻՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

*Երևան 4515, էջ 198–199 (Ղ. Փիրղ. Նշխարք պատմ. Հայոց Բ.)*

*գրիչ՝* Մատթէոս
*վայր՝* Եղիվարդ

*...Արդ, գրեցաւ գիրքս այս ձեռամբ անարհեստ գրչի* Մատթէոսի *սուտանուն աբեղայի... ի թուաբերութեանս հայկազեան տումարի ՋԺԸ. (1469), ի հայրապետութեան տեառն տէր* ի յաթոռն սուրբ* Էջմիածնի. *և ի ղանութեան* Ջհանշի *սկսեալ եղեւ գիրքս, և սպանաւ նա ի ձեռաց* Հասան-բէկի, *և եկեալ տիրեաց երկրիս մեր, և փախոյց զորդի* Ջհանշին՝ զՀասան-Ալի: *Եւ մեր առեալ զգիրքս փախեաք տեղէ ի տեղ, և յամենայն ժամ փախուստ և սասանումն գայր և հասանէր ի վերայ։ Եւ մեր զամենայն արհամարհելով՝ ի բաց ընկեցաք զայս ամենայն, զի մէկ տարի և վեց ամիս նոյնպէս կայեաք ի վարանի ի գաւառիս* Արարատեան** *ի գեղաքաղաքիս* Եղիվարդայ, *որ կայ առ ոտս* յԱրառյ *(լերինն), ընդ հովանեաւ սուրբ և գմբէթաձեւ և խարսխայտակ և հաստակառոյց վիմօք շինեալ սուրբ զանկագատանս, որ յանուն սուրբ Աստուածածնի է անուանեալ, և սուրբ Յակոբիս, և սուրբ Կուսանաց, և Աստուածընկալ լուսատու սուրբ Նշանիս, ի յառաջնորդութեան վանիցս նմին տէր* Մանուէլի***: *Ստացող տառիս* զՄանուէլ *եպիսկոպոսն...։*

---

* Ղ. Փիրղալեմյանը հայանում է, որ մոռացել է գրել կաթողիկոսի անունը։

** Շարունակությունը մեջ է բերում իր «Այրարատ»-ում Ղ. Ալիշանը, առանց նշելու ձեռագրի բովանդակությունը և այլ կարևոր տվյալներ (էջ 198)։

*** Ղ. Ալիշանի մոտ վերջավորությունը այլ է. «յառաջնորդութեան վանիցս նմին տէր Մանուէլի և եղբաւրն Բիշքէնի»։

## 367

### ՈՂԲ Ի ՄԿՐՏԻՉ ՆԱՂԱՇԷ

*ՔՈԲ № 84, էջ 67, Փիրղ. 6273, էջ 369*

*Ես Նաղաշ եպիսկոպոս՝ ծառայ կուսին*
*Աչաւք տեսայ դառն կսկիծ ողորմագին,*
*Լալով լացի և ողբացի արտասուագին,*
*Դառն արտասուաւք զողբս ասացի նոր մեռելին։*
*Ի Հայոց մեծ թվականին յինն հարիւրին,*
*Եւ համառաւտ այլ աւելի տասն և ութին,*
*Աչաւք տեսի զողբս և զկսկիծն ողորմագին*
*ԶՄէրտին քաղաքն արար զամէնն լալագին**։

## 368

### ԱՆՅԱՅՏ ԶԵՌԱԳԻՐ

*Ալիշան «Հայապատում» Բ. էջ 575*

*... Որոց նմանող ընթացող և հետևող, տինա յաւետ մի ի նոցանէ տեսանեմք այսօր ղպատուեալս յաստուածայինսն գերալրապէս և ի մարդկայինս արժանապէս՝ ղիսկապէս հետևողս աստուծոյ և աստուածայնոցն, զառաւելեալս յամենայն առաքինական և ի սրբազնական վարս, վեհագոյն գտեալ ամենայն համացեղից եղբարց՝ տէր Կարապետ կաթողիկոս ամենայն Հայոց, որ և փառաց արժանաւոր գտեալ և անուն բարի ստացեալ, և գործս հրաշազանս կատարեալ, որով աստուած հայր փառաւորեալ. և զթագն արքայական սուրբ արփիաւորչին մերոյ ի գլուխ եդեալ և հրաշալի պատուով պսակեալ, և յաջորդ սուրբ Լուսաւորչին յաթոռ հաստատեալ, և վերստին կրկին նորոգեալ զաթոռ մայրաքաղաքիս Կիլիկիոյ, և զհետ հետոցն նախնեացն ընթացեալ մաքրազարդ այցելուս և պատրիարք առաքելաշնորհ սուրբ աթոռոյս, հաստատեալ ի յաստուածաբնակ սուրբ ուխտս տէր Պօղոսի, որ կայ ի հարաւակողմն քաղաքիս Սսոյ, ընդ հովանեաւ Վանկոյ սուրբ Նշանիս և սուրբ աջոյն Գրիգորի մեր լուսաւորչին, և մօրն Տիրամօր աստուածածնին՝ Աննայի, յորոյ անուն կառուցեալ կայ եկեղեցի։ Զոր նախնեաց հետևող գտեալ մեծ պատրիարք տէր Կարապետ, հանճարեղ և կորովամիտ, քաջ հռետոր և վարդապետ աստուածաբան, անտարակոյս գիտող և խոհեմ, մեկնող հին և նոր աստուածաշունչ կտակարանաց. մանաւանդ առնող և ուսուցող, տեառն իւրում նմանելով, և զարծաթն ի հոգևոր սեղանս արկանելով։ Սա՝ աստուածարեալ այրս տէր Կարապետ կաթողիկոս՝ ի վերայ իւր անրաւ բարեացն և անմոռանալի յիշատակացն, մանաւանդ տանն աստուծոյ և նո-*

* *Ողբն սկսվում է «Արարիչն արարածոց մեղ բարկացաւ...» տողով։ Անանուն Սեբաստացին իր ժամանակագրության մեջ (տե՛ս Վ. Հակոբյան «Մանր ժամանակագրություններ» Ա, էջ 168) ողբի գրության առթիվ հայտնում է հետևյալը. «Ի թվին ՋԺԸ. (1469) մահ անկաւ յամենայն աշխարհ, առաւել ի Մերտին։ Նաղաշ վարդապետ ողբ ասաց»։ Հավանաբար այս տվյալի աղբյուրը ողբի վերը բերված հիշատակարանն է։*

րին սպասուցն զարդարմանց, ստացաւ զսուրբ մատեանս յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և եղբօրն պարոն Առաքելին, և եղբօրորդւոյն տէր Գրիգորին, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։

Արդ, այս երջանիկ հայրապետս տէր Կարապետ կաթողիկոս՝ եկեալ ի Թոխաթոյ և վերստին հաստատեաց զսուրբ աթոռս Լուսաւորչիս ի մայրաքաղաքս Կիլիկիոյ, զոր քսան հինգ ամ խափանեալ մնաց վասն անյայտ լինելոյ սուրբ աջին մերոյ լուսաւորչին. և յետոյ գտեալ նորոգեաց զսուրբ աթոռս. և ելեալ գնաց յԵրուսաղէմ և երկրպագեաց սուրբ տեղեաց տնօրինականացն Քրիստոսի. և տեսեալ զամենայն պակասութիւն Հայոց վանացն սրբոյն Յակոբայ, զի յայնմ ժամանակի եկեղեցին Հայոց ի ներքև պարտուց անկեալ կայր, և խաչ և աւետարան և շուրջառ ի ձեռս այլազգեաց յաւանդ կային։ Եւ անտի ելեալ տէր Կարապետ կաթողիկոսն գնացեալ էջ յԵգիպտոս առ սուլտանն Տահիրն, և մեծարեալ պատուեցաւ ի նմանէ. և առեալ խիլայս մեծագինս և պարգևս մեծամեծս, որպէս օրէն է թագաւորաց տալ պարգևս մեծամեծաց՝ ըստ արժանեացն։ Եւ եկեալ կրկին յԵրուսաղէմ և ազատեաց զեկեղեցին ի պարտուց և զսրբութիւնսն ի յանօրինաց։

Եւ անտի եկեալ սեփականեաց զսուրբ աթոռս Կիլիկեցւոց, ի սուրբ ուխտս տէր Պաւղոսի. զոր տէր աստուած վայելել տացէ նմա զաթոռ և զգիրքս, և անջինջ յիշատակ պահեսցէ նմա, և ծնողաց իւրոց, և եղբօրն պարոն Առաքելին, և եղբօրորդւոյն տէր Գրիգորին, ամէն*։

## 369

## ՕԳՈՒՏ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ ԱՄԻՐԴՈՎԼԱԹԻ ԱՄԱՍԻԱՑԻՈՅ

«Օգուտ բժշկութեան», 1940 թ., էջ 5—8։
Երևան 414

Հեղինակ՝ Ամիրդովլաթ

...Յորժամ ես այս արուեստիս հմուտ եղայ և տեսա շատ գրեանք, որ շինած էր ի յայս արուեստն և շատաբանած, և մարդ կատարեալ չէր իմանար. և չկար դիրք մն, որ ինքն փոքր և համառօտ և օգուտ, և մարդ օգտէր, որ ինքն հեշտ լինէր և փորձած և օգուտ։

Այսպէս գիր մն շինեցի ես՝ անպիտան և անարժան նուաստ ծառայս աստուծոյ Ամիրառլվաթ բժիշկն Ամասիացին, ի մայրաքաղաքն ի Ֆիլիպայ, ի թվականութեանս Հայոց ՋԺԵ. (1466) ամին** և ամսոյն դեկտեմբերի ԻԵ. (25)-ին, օրն հինգշաբթին, և ծնունդն էր փրկչին այլազգեաց։

* Այս անթվական հիշատակարանի գրության մերձավոր ժամանակը որոշվում է այսպես։ Հիշատակարանում ասված է, որ Լուսավորչի աջը Սսից անհայտանալուց 25 տարի հետո Կարապետ կաթողիկոսը (ըստ Օրմանյանի աթոռակալել է 1446—1477 թթ.) «նորոգեաց զսուրբ աթոռս», այնուհետև պատմված են դեպքեր, որոնք կարող էին կատարվել 1—3 տարիների ընթացքում։ Արդ, Լուսավորչի աջը Սսից գողացվել է 1441 թվին (տե՛ս այդ թվաշարքի հիշատակարանները), ուրեմն այս հիշատակարանը գրված պետք է լինի 1441-ից մոտ 26—28 տարի հետո, այն է 1467—69 թթ.։ Ըստ այդմ էլ տեղադրում ենք 1469-ի թվաշարքում։

** Հիշատակարանի վերջում հեղինակը նշում է ՋԺԸ. (1469) թվականը։

*Եւ այնչափ որ իմ ուժն ընկերեց՝ նա ջանացի զսայ կատարել։ Եւ ով կարդայ կամ օրինակէ, թէ եկեղեցական է, թէ բժիշկ է՝ մի խափանէք. և ով որ ջանայ որ կտրէ մի թուխթ ի սմանէ և կամ դողանայ՝ նա բանադրած է ՅԺԸ. (318) հայրապետացն. և շանացէք, որ ղրանադրանքն չի ընդունիք, և զինչ որ գրած է՝ զայն արէք։*

*Զայս գրոցս անունն անուանեցաք Օգուտ բժշկութեան, որ տաճիկն Քիֆայէթի իտիպ ասէ։ Եւ արարի զայս գիրքս երկու բաժին. և առաջին բաժինն է Ուսումն բժշկութեան և թպտիբ առողջութեան և ստածումն ամենայն անձինն, և Բ. բաժինն յիշէ զկերակուրն և զդեղերն նորա, որ ի Ա. ի Ա. են խառնուած, և զբնութիւնն, և զօգտութիւնն, և զօրութիւնն, և զչափն առնելոյն, և զփոխան ամէն մէկին։ Համառօտ ժողովեցի և գրեցի զհին և զնոր բժշկապետացն զխօսքն, որ զամէն մէկին անունն ի յիր տեղն պիտի յիշենք։ Եւ արարաք զայս ի վերայ այբուբենի կարգաւ...։*

*...Եւ այսմ յետէ գրեցի շատ աշխատանօք զայս ձեռամբ իմով. եւ շատ դժարութիւն և պատահմունք եմ քաշել ի յանօրինաց, ի յայլազգացն, ի դատաւորաց, ի թագաւորաց և իշխանաց. եւ շատ գրեանք էի ժողովել ի յարապոյ, և ի պարսից, և ի թուրքաց. և շատ ղարիպութիւն էի քաշել. և զժամանակին զչարն և զբարին և զպատահմունքն էի կրել. զհարստութիւն և զաղքատութիւն էի քաշել, և ի յերկրէ ի յերկիր շատ բժշկութեան զարուեստն էի գործել. և փորձել էի ես իմ միտքն շատ դեղեր և թարքիպնի և շատ ծառայել էի հիւանդաց և մեծամեծաց, և իշխանաց, և հազարապետաց, և հարիւրապետաց, և քաղաքացոց, և աղքատաց՝ մեծի և փոքու, և շատ չար և բարի էի տեսել։ Եւ հանց եղայ ես հիմայ, որ ոչ հարստութեան կու խնդամ, և ոչ աղքատութեան կու տրտմիմ, և զամէն չարն և զբարին մէկ կու տեսնում, և անհոգել եմ այս ամէն ցանկութենէն կենցաղոյս. և յուսամ ի տէր աստուած մեր Յիսուս Քրիստոս որդին միածին, և երկոտասան առաքեալքն, և սուրբ Գրիգոր լուսաւորիչն Հայաստանեաց, և ՅԺԸ. (318) հայրապետքն։ Եւ արարիչ տէր աստուածն՝ արքայութիւն պատրաստէ ձեզ և մեր ծնօղացն, և անարժան և անպիտան ծառայիս աստուծոյ* Ամիրտովլաթ *բժիշկն, և տէր աստուած ձեզ արքայութիւն տացէ, ամէն։*

*Թարգմանեցաւ պատուական բժշկարանս ի մայրաքաղաքն ի* Ըռումիայ, *որ թարքմանի* Ֆիլիպիայ, *ի թվականիս Հայոց ՋԺԸ. (1469) ամին, ի դեկտեմբերի ԻԵ. (25)*, որ ծնունդ էր փրկչին այլազգաց հաշուովն, ի կաթուղիկոսութեան տէր* Ըռստակիսի, *և եպիսկոպոսութեան տէր* Յովակիմին:

*Որք կարդայք կամ օրինակէք՝ թողութիւն մեղաց խնդրեցէք ի Քրիստոսէ թարգմանողի գրոցս* Ամիրտովլաթ *բժշկին. աստուած զձեզ յիշէ իւր միւսանգամ գալուստն, ամէն։*

---

* *Երևանի 414 ձեռագրում՝ «ԻԶ. (26)»։*

370

ՏԱՂԱՐԱՆ

ՄՑՎ 299 (359), հտ. Բ. 1112—1114

գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ Բիւրակաճ

ա

316ա ... Արդ, ես նուաստ յամենայնի
Մկրտիչ անձն եղկելի
Փափաքեցայ այս մատենի՝
Աստուածաշունչ դատաստանի,
Որում չափեալ ի յոտանի՝
Սուրբն Ներսէսըն Կլայեցի,
Որ և անուն տառիս կոչի
Ցիւր նախագիծն՝ Ցիսուս որդի,
Որ բաւանդակ ի յինքն ունի
Զուժ հին և զնոր կտակարանի.
Այլ և զԳրիգոր Մագիստրոսի
Եւ զՆերսէսին Լամբրանեցի,
Եւ զՅոհաննու Եղընկացի
Զվանկեալն ի սմայ շարադրեցի։
Նայ և Սիմեաց Սըտեփանոսի
ԶՈղբումըն սուրբ էջմիածնի,
Եւ Վահրամայ Հայոց դպրի
ԶԱրքայք Կլայիցըն պատմողի։
Այլ և Անյաղթ մեծին Գաւթի՝
Բարձրացուցէքն ի յերգ խաչի,
Եւ զՈւռհայու Եդեսայի
ԶՈղբըն շարեալ նոյն Ներսէսի,
Եւ այլ բազում աստի ու անտի
Ըստ բաղձանացս իմ խնդրելի
Ժողուեալ ի տուփ՝ մի արարի,
Ըստ անուշ խնկոցն աւրինակի.
Նախ ի բուրումն մերըս հոգի,
Ապա այլում հանդիպողի,
Զի որ սովաւ զուարճասցի
Ցիշեսցէ զանձն իմ եղկելի։
Այլ և զծնաւղսն մերոյ մարմնի,
Որ կան տքնեալ ի տապանի,
Զհայրն իմ Յակոբ և զԹաղտադ՝ մայրն իմ բարի,
Այլ և նախնեաց մեր հաւատի
Զպապ անուանեալքըն գովելի,
Եւ ամենայն արեան մերձաւորի,
Քրիստոս նոցայ ողորմեսցի։
Այլ և Հալաֆըն մահդասի,

Իւր ծնօղաւքըն արժանացի՝
Ջերանաւէտ ձայնն լըսի,
Քրիստոս նոցա ողորմեսցի։
Այլ զաւակացըն մեր մարմնի՝
Մեսրոբի, Կարապետի,
Յոհաննէսի, Եփրիսինի՝
Քրիստոս նոցա ողորմեսցի։
Այլ Աբրահամ քահանայի,
Մաղթումի, Ասուդայի՝
Քրիստոս նոցա ողորմեսցի։
Այլ և Բարսեղ քահանայի,
Իւր ծնողաւքն ամենայնի՝
Քրիստոս նոցա ողորմեսցի։
Եւ մեր եղբարցն որովայնի,
Սոցին անուամբս որ յիշեցի,
Որ կան թաղեալ ի հող երկրի,
Պսակեսցին ընդ Քրիստոսի։
Այլ և զպարոն Բաքանանի
Եւ զԹամար իշխանուհի՝
Իւրեանց զաւակօքն ծաղկալի,
Որ են թիկունք մեզ ի յերկրի՝
Դէմ այլազգեաց բռնաւորի,
Ու արդիւնարարք մեզ ի մարմնի
Եւ խնամարկուք ամէն բանի,
Տէր աստուածն ամենայնի՝
Պահէ զնոսա անդրդուելի,
Եւ յետ ատեացս անցաւորի
Տացէ զանանցն ըզրիւր բարի,
Եղբաւրորդոցն իմ պերճալի
Յովաննէսի և Գրիգորի՝
Տացէ Քրիստոս կեանս ի յերկրի։
Այլ և զծաղկաւղ և զկազմող Յոհաննէսի,
Եղբայր նորին Բերամշայի։
Գրուին նոքա ի գիր կենդանի,
Ծաղկին ի փառս յաւրն վերջի՝
Հանդերձ ծնողօք ամենայնի։
Այլ և հոգևոր որդոյ մեր Գաբրիէլի
Եւ նորագոյն քահանայի,
Տէր տայ սմայ իմաստ հոգի՝
Կառավարիլ անփորձ յերկրի,
Զի յիշատակ մեր եղիցի՝
Եւ պահպանիչ մեր տապանի։
Այլ և զԵղիսաբեդ մայրըն բարի

*Եւ ղհաւատով որ վառ վառի**
*Տացէ Քրիստոս վարձս բարի՝*
*Յաւրըն մեծի դատաստանի։*
*Այլ և զ*Տեղերոյ *արհեպիսկոպոսի*
*Եւ զիւր միաբան ամենայնի,*
*Եւ ըզհանգուցեալ ի տապանի՝*
*Տէր* Անդրասի *և* Գրիգորի,
*Քրիստոս նոցա ողորմեսցի*
*Յաւուր մեծի դատաստանի, ամէն։*
*Այլ և զրաբունապետ վարդապետաց*
Գրիգորի *և* Սարգսի,
*Պահեա զնոսա Քրիստոս յերկրի,*
*Քարոզող խրատիչ Հայոց ազգի։*
*Այլ և նոցա տէրն ողորմի,*
*Որ երախտիք առ մեզ ունի,*
*Վարձահատոյց տէրն լինի։*
*Նայ և բոլոր քրիստոնէի,*
*ԶՔրիստոս աստուած դաւանողի,*
*Մեզ և մերոցն ամենայնի՝*
*Առհասարակ տէրն ողորմի։*
*Թվին իննհարիւր տասն և ութի*** *(1469)*
*Գրեցաւ դիրքս այս Յիսուս որդի,*
*Սկիզբն և աւարտ լինի*
*Ի* Բուրական, *ընդ հովանեաւ*
Տեղերոյ *սուրբ Աստուածածնին*
*Եւ սուրբ Լրչակին և սուրբ Յովաննէսին։*
*Աւրհնեալ է հայրն անճառելի,*
*Աւրհնեալ որդին անքննելի,*
*Աւրհնեալ հոգին անպատմելի,*
*Երրորդութիւն անզրննելի, ամէն։*

Բ

317բ *Քրիստոս աստուած... յիշեայ զմեղաւոր ծառայս քո* զՄկրտիչս, *և զկենակից* զՀալափ. *և զմանկակոտոր զաւակն մեր՝* զՄեսրոպն, *և* զԿարապետն, *և* զՅոհանէսն, *և* զԵփրիսին, *և զհայրն մեր* Աբրահամ *քահանայն, և* զԱկօբն, *և զմայրն մեր* զԱսուդան, *և* զԲաղդատն, *և զեղբայրսն մեր* զՄաղթումն, *և* զՄուրաթշին, զԿիրակոսն, *և* զՅոհանէս, *և զքուերսն մեր* Շնաճօրն, *և* զՍադատն...։ *Յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր* զԲարսեղ *քահանայն, և զծնողսն իւր...* զՍաֆարշէն, զՍալթանշէն, զէվաթշէն, *ընդ նմին* զ[Յ]ուսէփ, *զպադրոն* Աստուածատուրն, զՄեհրան, Սաթըլմիշն, *և* զՀայրապետն, Նուրադին, *և* զԿարապետն, *և* զՔաչըբէկն, *և* զԱռաքելն, զՍաթիկն *և* զըՄրութն:

* *Հրատարակիչը տպել է «Վառվառի» որպես հատուկ անուն։*
** *Բնագրում՝ «Թվ. ՋԺԸ.ի»։*

Այլ և աղաչեմ յիշել... զՆիկողոս քահանայն և զՍտեփանոս քահանայն, զՂազար աբեղայն և զԱստուածատուրն քահանայն, զՅոհանէս աբեղան [և] զԲերում, զՍարգիսն և զՄրուքն, զՍադատն և զԹուխիկն, զՅովանէսն և զԳրիգորն, Սալչուկն և զԴաւիթն, զԽաքունմելիքն և զՆիֆարն...:

Արդ, գրեցաւ սայ ձեռամբ մեղապարտ և անիմաստ գրչի Մկրտիչ մեղաւոր ու անարժան քահանայի... ի մենարանի Բիւրականի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Նշանի, և սուրբ Յովանիսի, այլ և ամենայն սրբոցս, որ աստ կան հաւաքեալ։

Գրեցաւ սայ ի թվիս Հայոց ՋԺԸ. (1469), ի կաթողիկոսութեան Հայոց տեառն Ռստակէսի, ղանութեան Հասան-բէկի։ Յայսմն ամի շինեցաւ պարիսպն Տեղերոյ սուրբ Աստուածածնի, ձեռամբ Սարգիս վարդապետի, որ կոչի Բիւրականացի. աստուած զինքն ապրհնի, որ սուրբ Աստուածածնի դուռն ի բաց պահի, շաբաթ ու կիրակի պաշ[տ]ամն ու պատարագ լինի, որ իսկի չխափանի...։

Գ

219ա Այլ յիշեցէք յաղօթս ձեր տէր Խաչատուր, տէր Մատթէոս, տէր Յոհանէս, տէր Ալեքսան, զԱնբերդոյ ժողովուրդ առհասարակ։ Այլ և յիշեցէք յաղաւթս ձեր զԲուրական ժողովուրդս առհասարակ՝ զԲէօշն և զիւր ծնօղք. զՊօղոս և զիւր ծնօղքն։ Այլ և յիշեցէք յաղաւթս ձեր զՆերսէս և զԾերուն, Յովանէս քահանայն և զտէր Աստուածատուր, զտէր Յակոբ, զտէր Սեթն, զտէր Վարդան, զտէր Մարատարոն (՞), զտէր Յովանէս, զտէր Ներսէս, զԿարապետ աբեղայն, զԳրիգոր վարդապետն, զԳրիգոր աբեղայն, և զՅոհանէս դրադիր։ Այլ և յիշեցէք յաղաւթս ձեր զԿարապետ եպիսկոպոս, և զՄկրտիչ եպիսկոպոս, և զԹադէոս եպիսկոպոս։ Եւ դուք որ յիշէք՝ աստուած-ողորմի ասէք և զՀայր մեր յերկինս, աստուած ձեզ ողորմի առհասարակ ի հանդերձեալն յաւիտենին, ամէն։

371

## ՄԱՇՏՈՑ

Երևան 901

գրիչ՝ Անանիա
վայր՝ Հերմոնի վանք

...Ձեռնադրութեանս գիրքս գրեցաւ ի վանքս Հերմոնի, ընդ հովանեաւ
10բ սուրբ Լուսաւորչիս, և սուրբ Յակոբիս, և սուրբ || Ստեփանոսիս, և սուրբ վարդապետացս, որ աստ կան հանգուցեալ, ի թվ. ՋԺԸ. (1469), ձեռամբ բազմամեղ և անարժան, տարտամ և անպիտան փցուն գրչի Անանիայիս, որ անուամբս միայն եմ խաբեղա և ոչ աբեղա։

Տէր աստուած, զայս ձեռնադրութեան գիրքս շնհաւոր արնէ պարոն տէր Պաղոսին, խաղաղութեամբ և առողջութեամբ վայելել տա իւր միաբանովքն և Աս[տու]ածատուր հայրպետովն։

*Այլ և աղաչեմ զամենեսեան խոշորութեան և սղալանաց գրոյս անմեղադիր լերուք, զի կարն մեր այս էր, զի վիշտ շատ և գառնութիւն ի յանաւրինաց և յաւրինաւորաց. և հեծեծանաւք յերեսս անկեալ աղաչեմք, վի որք տեսանէք և կարդայք և աւրինակէք՝ յիշեցէք զանարժանս ի յաղօթս ձեր. և աստուած ղձեզ յիշէ յիւր յարքայութիւնն, ամէն***։*

## 372

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Թավրիզ, Մատնաւորայ 66, ԱՍԹ, էջ 13։*
*ՄՕՀ, հա. Բ. 3, էջ 33–34*

ա

*գրիչ՝* Անանիա
*վայր՝* Հերմոնի վանք

249—250բ *...Եւ արդ, գրեցաւ սա ի Թուաբերութեանս Հայոց ՋԺԸ. (1469) ի հայրապետութեանս տեառն* Ըռըստակէսի: *Գրեցաւ սուրբ Աւետարանս ի վանքս* Հերմոնի, *ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս, և սուրբ Յակոբիս, և սուրբ Ստեփանոսիս, և սուրբ վարդապետացս որ աստ կան հանգուցեալ, և ի յառաջնորդութեան* Սարգիս *րաբունապետիս, ձեռամբ սուտ յանուն* Անանիեաի *գրչի, որ անուամ[բ]ս միայն խաբեղա և ոչ գործով։*

բ

*ստացող՝* Ստեփանոս

*Արդ, ամենայն ոք բարոյ ցանկայ վասն սիրոյ արքայութեան, որպէս ասէ առաքեալն, թէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոնի և ընդանի Երուսաղէմ։ Ես* Ստեփանոս *քահանայս ստացայ սուրբ Աւետարանս և ետու գրել զսայ յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմո* Ամիրին *և մաւր իմ* Թանիկին, *և հաւրեղբաւրն իմ* Մկըրտչի *կուսակրաւն աբեղայի, և կողակցին իւր*** Մարթին, *և որդին իւր* Յակոբ, Ալէքսանոս, Գրիգոր, Արիստակէսն, *և զգուստրն իմ* զՄարգարիտն, Նուկպարն, *և զքոյրն իմ* Նուրմէլիք, զՀուփսիմէ, *և զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն, և աստուած, որ առատն է ի տուրս ողորմութեան՝ ձեզ յիշողացդ և մեզ՝ յիշելոցս ողորմեսց[ի] իւր միւսանգամ գալըստեամբն, ամէն և եղիցի։*

## 373

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 219*

*գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Գաւրի քաղաք

*...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականութեանս Հայոց ՋԺԸ.*
301բ *(1469) || ի գեղաքաղաքս* Գաւրի, *ընդ հովանեաւ կաթուղիկէ սուրբ Աս-*

* *Ձեռագրի մեծ մասը գրել է Յովանէս գրիչը, որից պահպանվել է միայն մի փոքր հիշատակագրություն՝ ձեռագրում պահպանված ամենավերջին թերթի (227բ) վրա. «Ձծրող սուտանուն* Յովանէսն *յիշեցէք և աստուած զձեզ յիշէ իւր միւսանգամ գալուստն. Քրիստոսի» (այսպե՛ս)։*
** *Իմա՛ ստացող Ստեփանոս քահանայի։*

*տուածածնիս, ձեռամբ անարհեստ և փցուն գրչի* Գրիգորի, *վասն յիշատակի ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն* Զարֆասին, *մօրն* Վարդետիկնայ, *և եղբարցն, և ամենայն արեան մերձաւորացն։ Եւ ետու զսայ անչինչ յիշատակ ի դուռն սուրբ Լուսաւորչին* Բրէծու, *ձեռամբ կուսակրաւն աբեղաին* Յովանիսին *և սրբասէր քահանաիցն* Վարդանին *և* Եզեկիէլին: *Վասն որո աղաչեմ յիշել ի տէր զծնաւղսն, [և] զարեանառու մերձաւորսն մեր, և զամենայն երախտաւորսն և զուսուցիչսն մեր։ Եւ զիս զփտեալ ծերունիս՝ ղմեղաւք զառածեալս զ*Գրիգոր *անուամբ միայն աբեղա, նաև զհոգևոր որդեակս իմ զ*Մարտիրոս *դպիր, որ ձեռնտու և աւգնական է ամենայն աշխատանաց գրե///*

## 374

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Բոդլեան գրադարան* Ms. Arm. E. 4
*Մատենադարան, Անհատական արխիվներ, թղթ. 120,*
*Ձեռ. № 01, էջ 062—064*

*գրիչ՝* Յակոբ
*վայր՝* Խարբերդ

ա

240 բ ...*Ուստի տեսեալ ըղսորա փրկագործութեան խորհուրդ պատուական և սրբասնեալ քահանայն* Յովաննէս *և ետ գրել զսա յիշատակ իւր, և ծնաւղացն՝ հօրն* Շահպարոնին *և մօրն* Լուսխաթուն[ին], *և ամենայն արեան մերձաւորացն։ Վասն որոյ աղաչեմ զձեզ զամենեսեան յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր ղվերոյգրեալքս ի սմա, և բոլորով սրտիւ և լի բերանով աստուած-ողորմի ասացէք նոցա, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։*

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվ. ՋԺԸ. (1469), ի քաղաքս որ կոչի* Խարբերդ, *ընդ հովանեաւ սրբոյն [Սարգսի զաւրավարին] և որդւոյ նորա [Մարտիրո]սի, ի հայրապետութեան տեառն* Արիստակիսի, *և յեպիսկոպոսութեան տէր* Սիմէոնի, *ի թագաւորութեան ազգին նետողաց* Հասան-պէկին, *ձեռամբ* Յակոբ *անարժան քահանայի, զոր բազում աշխատութեամբ դրեցի և ծաղկեցի և կազմեցի ի մեղաւոր և անարժան ձեռամբ իմով։ Արդ, աղաչեմ զձեզ, որք հանդիպիք սմա տեսութեամբ և ընթերցմամբ, յիշեցէք ի Քրիստոս* զՅակոբ *քահանայ՝ զգծող սորա, և զծնօղքն իմ՝ զ*Գրիգոր *և զ*Թանսուխ, *և զեղբարքն իմ, և զորդիքն մեր, և զդստերքն, և զամենայն արեան մերձաւորքն մեր, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։*

*Այլ և յիշեսջիք ի Քրիստոս զհաւատարիմ տանուտէրն* զԱրիստակէսն *և զորդիքն իւր* զՅակոբն, *և զեղբայրն իւր* զՅովհաննէս, *և աստուած ողորմի ասացէք նոցա, որ աւգնական եղեն ի գին սուրբ Աւետարանիս, աստուած իւրեանց աւգնական լինի յահեղ ատենին, ամէն։*

բ

*Յիշեցէք ի Քրիստոս զհաւատարիմ տանտիկինն* զՄարգարիտն, *և զիւր որդին* զէմին-պէկն, *և զազջիկն իւր* զԳոհարն, *և* զՍիմաւոնն, *և* զՎարդն,

և զԽասն, և զհամօրէն ննջեցեալքն, որ ստացաւ զսուրբ Աւետ[արանս] յիշատակ, և եդ ի դուռն եկեղեցուն*։

## 375

### ԱՒԵՏԱՐԱՆ

ԼՑՎ 189, այուն. 453—456, Աղթամար 194

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Գամաղիէլի վանք

ա

Արդ, կատարեցաւ աստուածախաւս և տիեզերաքարոզ Աւետարանս ի խնդրոյ աստուածասէր և հաստատրիմ տանուտրոչն Առաքելին, յիշատակ իւրն, և ծնաւղաց իւրոց Շատարեւին, և մաւրն Նազ-խաթունին, և կողակըցին՝ Մարգրտին, և մօրն Խըպբեյին, և հօրն Ստեփանոսին, և ամենայն արեան մերձաւորացն, և զաւակաց Առաքելին, Խէրապէտին և Աւետին, և դստերացն Սուրաթին, և Գոհարին, և Խելաւքին, և Մելիտոնին. արարիչն աստուած իւրն պահապան լին[ի]։ Այլ և ընդունելի արասցէ տէր աստուած զայ[ս] զԱւետարանս որպէս զպատարագն Հաբէլին և Նոյին և զԱբրահամուն, և փոխանակ սորա պարգևէ տէր աստուած զիւր երկնային արքայութիւնն և զիւր աստուածային տեսութիւն Առաքելին, և իւր ծնաւղաց Շատարեւին և Նազ-խաթունին, և կողակցին Մարգրտին, և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։ Այլ և քւերն Խոնդին և զաւակին Ղազարին։ Այլ և Սահակ քահանան խնամածու և պահապան լինի Աւետարանիս և պահէ զսուրբ Աւետարանս ի դուռն սուրբ Յովաննէսին, և մի ոք իշխեսցէ զսա հեռացուցանել ի դրանէ սորա, մինչ փախ** լինի՝ փախուցին, դարձեալ բերեն ի դուռն սուրբ Յովաննէսին. և մի ոք իշխեսցէ զսա իւրն սեփհականել՝ քահանայ կամ տանուտէր. այլ գ[ե]աւղն ամենքն խնամ տանեն ի վերա և պահեն, զի Աւետարանս գեղին եմ տուեր։ Ով որ կարդա և ով որ լսէ՝ յիշէ զԱռաքէլն, և զծնողսն իւր և աստուած-ողորմի ասէ, և աստուած իւրն ողորմեսցի, ամէն։

Այլ և գրեցաւ սուրբ Աւետարանս ի դուռն Գամաղիէլի սուրբ առաքելոյս, ձեռամբ յոգնամեղ Յովաննէս վարդապետի, ի թվաբերութեան Հայոց Ջ և ԺԸ. (1469)-իս, ի յառաջնորդութեան վանացս Յովաննէս վարդապետի և Գրիգոր եպիսկոպոսի, զոր տէր աստուած պահեսցէ զսոսա ընդ երկայն աւուրս, ամէն։ Եւ յայլ միաբան եղբարցս՝ Ղազարին, Սարգսին, Սուքիասին, Ստեփանոսին, Յովաննէսին, միւս Յովաննէսին, Յոհաննէսին, և Ներսէսին, և այլ եղբայր մի Առաքելին՝ Յակոբ անուն յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք...։

---

* Բ. հիշատակարանը գրված է նոտր գրով, այլ գրչի կողմից։ Նույն այս Մարգարիտը որպես ստացող հիշատակվում է նաև Ցակոբ գրչի 1470 թվականին ընդօրինակած Ավետարանի հիշատակարանում (տե՛ս)։

** «Փախ» բառից հետո, հրատարակիչը, փակագծերի մեջ առնելով, լրացնում է իբր անհրաժեշտ «դէպ» բառը։ Կարծում ենք, որ դրա անհրաժեշտությունը բոլորովին չի զգացվում։

Այլ և ննջեցեալք, որ ի Սուրս, ի դուռն սուրբ Յովաննէսի հանգուցեալ, Քրիստոս աստուած ներումն և թողութիւն արասցէ ամենայն սխալանաց նոցա, ամէն...։

Այլ և յիշեցէք ի Քրիստոս աստուած և ասացէք ղաստուած-ողորմին պարոն Առաքելին, և ծնաւղաց նորին՝ Շատարևին և Նազէ-խաթունին, Մարգարիտին, և ծնաւղացն նորին՝ Ստեփանոսին և Դբէլին, և յիշողացդ, ամէն։

Դարձեալ, յերեսս անկեալ աղաչեմ զդասդ ժողովրդոց, որ լի բերանով ասացէք զաստուած-ողորմին Սահակ քահանային, և կողակցին Ընդ-Մէլիքին, և իւրեանց զաւակացն՝ Ղազարին, Թանգ-Մէլիքին, և դեղչիս որ Սուրս կոչի, և իւր տանուտէրացն՝ մեծի և փոքու, առհասարակ, ողորմեսցի, ամէն։ Եւ մի ոք իշխեսցէ զսուրբ Աւետարանս հեռացուցանել ի դրանէ սուրբ եկեղե[ցե]ացս՝ ի սուրբ Յովհաննէս[է] և ի սուրբ Գէորգեայ ղաւրավարէս։ Եւ որք որ հակառակէ՝ ի Քրիստոսէ դատապարտի։

**Բ**

Եւ զԻսրայէլ զրծողս յիշեցէք և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 376

## ԱՒԵՏԱՐԱՆ

ՍՕՎ 180 (1591), հտ. Ա, 751—752

գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Տիւրիկի երկիր

**ա**

274բ ...Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՋԺԸ. (1469), ի յերկիրս որ Տիւրիկի կոչի, ի վանքն Վաւտըռ գեղջին, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Յակովբայ նշանին, և Յովհաննու, և այլ սրբոց որ աստ կան հաւաքեալ, ի հայրապետութեան տէր Մկրտչին և տէր Բարսեղին, զոր տէր աստուած զփոխարէնն բարի հատուսցէ յիւր միւսանգամ գալստեան, ամէն։

Եւ արդ, գրեցաւ ձեռամբ յոգնամեղ և անմար գրչի Ստեփանոսի՝ անուամբ միայն կոչեցեալ հայրապետի...։

**բ**

276ա ...Արդ, որ շարժողն է ամենայն բարութեանց՝ տէրն մեր Յիսուս Քրիստոս, շարժեաց ի սէր աստուածային նախանձու զՆորմանուկ, և զկողակիցն իւր զՇնոֆորն, որ ցանկացան... և ստացան զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց իւրեանց, և եդին ի սուրբ անապատն Աւագ վանք կոչեցեալ, ի դուռն սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, և երկոտասան առաքելոցն, յիշատակ իւր, և ծնողաց իւրոյ Յովանիսին և Մարեմ-խաթունին, և հարեղբաւրորդոյն Անտոնին, և որդոյն Ստեփանոսին...։ Եւ որ ոք ընթեռնուք կամ աւրինակէք՝ յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զստացող սորա, և զծնողս իւր, և զՆերսէս սրբասէր աբեղայն, որ պատճառ

*եղև այս բարութեանս, և զծնաւղսն իւր...։ Դարձեալ, յերես անկեալ աղաչեմ յիշել ի տէր զմահդասի տէր* Ներսէս *սրբասէր կրօնաւորն, և զհայրն իւր* զԱստուածատուր *պատուելի քահանայն, որ մականուն* Գառ-նուկ *կոչի, և զմայր իւր* զԼալխաթուն, *և զեղբայրն իւր՝ զհաւատարիմ քրիստոնեայն* զԱրիստակէսն, *և զեղբարքն իմ՝ զփոխեցեալսն առ Քրիս-տոս* զՅոհանէսն *և* զՄելքիսէթն, *և զհօրեղբայր որդիքն իմ* զՍարգիսն, զԳրիգորն *և* զՄարտիրոսն, *որ են յերկրէն* Լերդկայ, *որ եդին իւրեանց յի-շատակ ղատիֆա շուրշառ մի բոլոր սգեստով ի սուրբ անապատս որ կոչի* Աւագ վանք՝ *ի դուռն սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, և սուրբ Առաքելոցն...։*

## 377

## ՄԱՇՏՈՑ

*Հ Նիկոմիդիոյ առաջնորդարան Մ.Տ.Մ.*

*գրիչ՝* Կիրակոս Տրապիզոնցի
*վայր՝* Կեսարիոյ գաւառ, Նիսիա գիւղ

*Գրեցաւ ի թվ. ՋԺԸ. (1469), ձեռամբ* Կիրակոս *եպիսկոպոսի* Տրապի-զոնցոյ, *ի գաւառիս* Կեսարիոյ, *ի գիւղն որ կոչի* Նիսիա, *ընդ հովանեաւ սուրբ Հայրապետի Գրիգորի՝ եղբաւր Բարսղի, և այլ բազմահաւաք սըր-բոցս... ի խնդրոյ* Խաչատուր *քահանայի, հաւրն* Մարտիրոսի, *և մաւրն* Մարթայի, *և հաւրեղբայրն* Ստեփանոսի... *(յիշեցէք) նաև զվարպետն մեր* զՅովանէս *նախաշն* Եզնկեցի, *որ եմք պանդուխտ յերկրիս այս...։*

## 378

## ԱԻՆՏԱՐԱՆ

*Երևան 5462*

312ա *... Արդ, կատարեցաւ աստուածախաւս և տիեզերաքարոզ Աւետա-*
*րանս ի խնդրոյ պատուական և հաւատարիմ տանուտրոջն* Յոհանիսին,
*որ վառեալ էր հաւատով և սիրովն, որ ի Քրիստոս Յիսուս, և ետ գրել*
*զսուրբ Աւետարանս յիշատակ իւրն, և ծնաւղացն* Յոհվաննիսին, *և մաւրն*
Արուսին, *և մեծ պապուն* Ատոմին, *և կողակցին* Խաթունին, *և ամենայն*
*արեան մերձաւորացն, զոր տէր աստուածն Յիսուս Քրիստոս ընկալցի*
*զսա որպէս պատարագն Հաբէլին և զԱբրահամուն և զամենայն նախա-*
312բ *հարցն սրբոց, որպէս || հայեցաւ ի Հաբէլ և ի պատարագն նորայ, նոյն-*
*պէս հայեսցի հաճեսցի ընդ* Յոհաննէսն *և ի պատարագ սորին, զոր վասն*
*իւր և ամենայն մերձաւորաց է՝ արեան իւրոյ է։ Եւ արժանի արասցէ*
զՅոհաննէսն *և զծնողսն իւր* զՅովաննէսն *և* զԱրուսն *դասակից և պսակա-*
*կից լինել սրբոց իւրոց՝ Յոհաննու աւետարանչին և Յոհաննու Ոսկեբե-*
*րանին, և* զՅովաննէսն՝ *սրբոյն Յովաննու Կարապետին աթոռակից և*
*դասակից արասցէ զսոսայ ի լուսեղէն խորանսն, ամէն։*

*Այլ զսանն իմ* զՍահակ *սարկաւագ, որ տարաժամ հասակաւ փոխեցաւ*

ի Քրիստոս և մեզ սուգ անմխիթարելի եթող յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք սոցա ամենեցուն։

Այլ և կատարեցաւ սուրբ Աւետարանս ի թուաբերութեանս Հայոց ՋԺԸ. (1469), ի յառաջնորդութիւն վանացս Յոհաննէս վարդապետի, և Գրիգոր եպիսկոպոսի, և Դաւիթ եպիսկոպոսի, և այլ միաբան եղբարցս՝
313ա տէր և վանից հօրն Ստեփաննոսին, || և Ղազարին, և տէր Սարգսին, և Սուքիասին, և Կիրակոսին, և Ներսէսին, և Յովանիսին, և միւս Յովանիսին, և Ստեփաննոսին, և Յոհաննիսին, զոր տէր աստուած Յիսուս Քրիստոս անարատ և ամբողջ պահեսցէ ընդ երկայն աւուրս, ամէն։

Այլ և սխալանացս և խոշորութեան գրոցս անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր, և ես տկար և ծեր անձամբ և պանդուխտ կենաւք դրեցի զսուրբ Աւետարանս Յոհանիսին յիշատակ, և ծնաւղացն Յովանիսին և Արուսին, և մեծ պապուն Ատոմին...:

Արդ դարձեալ կրկին անգամ աղաչեմ զձեզ, ո՜վ դասք սուրբ քահանա-
313բ յից, յիշեցէք ի Քրիստոս զբարի տանուտէրն || զՓանիկն, և զեղբայրն իւր զՅուսեան, և զկողակիցն զՄովինարն: Այլ և աղաչեմ զձեզ, լի բերանով աստուած-ողորմի ասացէք Փանկէն, և իւր կողակցին Գոհարին, և տղայոցն զՄարտիրոսն, Խնկկէն, և դստերացն Սառին* խաթուն, զԴիլդարն։ Եւ որ զսուրբ Աւետարանս լաւ կու պահէ ի դուռն սուրբ տաճարիս և սուրբ Յո..ան.., և յամէն օր զճրագն անխափան կու վառէ և զխունկն ծխէ, աստուած ի միւսանգամ գալստեանն լուսեղէն պսակին արժանի արասցէ, հանդերձ ծնօղաւքն և ազգականօքն ղերկնից արքաութիւն ժառանգէ, ամէն։

## 379

### ՄԱՇՏՈՑ

ԲՑՎ 421

գրիչ՝ Գրիգոր

... Եւ արդ ես՝ սուտանուն Գրիգորս՝ խաբեբայ և ոչ քահանայ... կատարեցի զտառս որ կոչի Մաշտոց, ի թուականիս Հայոց ՋԺԸ. (1469), ի յերկիրս ///**

---

* «Սառին» անունը գրված է «դստերացն» բառից վերև՝ տողամիջում։

** Տեղեկություն ունենք նաև 1469 թ ընդօրինակված մի Շարակնոցի և Աւետարանի մասին։ Շարակնոցի գրիչն է Արիստակէս աբեղան, ընդօրինակել է Սանահնում, ի խնդրոյ Աստուածատուր և Յովհաննէս եպիսկոպոսների (Մ.Տ.Մ.-ի ցուցակ)։ Աւետարանի գրիչն է Յովհաննէս, գրված է Արճէշում, ծաղկողն է Մինաս քահանա (ՀԱ, 1900, էջ 59, J. Tıkkaner., Tre armeniska miniatyr hanskrifter)։





## 380

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Բոդլեան գրադարան Ms. Arm. E—6,*
*Մատենադարան, Անհատական արխիվներ, Թղթ. 120, ձեռ. № 62*

գրիչ՝ Յակոբ
վայր՝ Խարբերդ

325ա—329ա *...Ուստի և տեսեալ զսորա անճառ փրկագործութեան խորհուրդ պատուական և սրբասնեալ և հաւատարիմ կինն* Մարգարիա, *և ետ գրել զսուրբ Աւետարանս [յ]իշատակ իւր, և կողակցին իւրոյ* Վարդին, *և որդւոյն իւրոյ* էմին-պէկին, *և դստերն* [Գոճարին], *որ ետ յիշատակ ի վանս անապատան, որ կոչի* Սուր...:

*Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց, սուտանուն քահանայս* Յակոբ...:

*Արդ գրեցաւ սուրբ [Ա]ւետարանս ի ք[ա]ղաքս որ [կ]ոչի* Խարբերդ, *ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի զաւրա[վ]արի և որդւոյն նորա Մարտիրոսի, ի թաղս [որ] կոչի* Սին[ա]մու[տ], *ի հայրապետութիւն տե[առ]ն* [Ա]րի[ստ]ակիսի, *և յեպիսկոպոսութիւն տէր* Սիմէոնի *րաբունապետին, որ նստի յանապա[տ]ն, որ կոչի* Սուր *վանք, և [դպ]ր[ո]ց կ[ար]գեալ բազում [ա]շ[ա]կե[ր]տաց՝ լու[սաւ]որելով ըզ[հ]եռա[ւ]որս և զմերձա[ւ]որսն։ Ի թագաւորութեանն ազգիս ազգին [նետո]ղաց* Հասան-պէկին, *որոյ տիրեալ է ի* Բաբելոնէ *մինչև ի* Շիրա[զ] *քաղաք և ի* Տ[ր]ապիզոն, *զոր բազում քաջութիւն արարեալ ի բազում տեղիս, և ի միում ամի Գ. (3) ղան յաղթեաց և սպան զնոսա՝* զՃիհանշայն, *և զորդիքն իւր, և* զԳուսայիա *ղանն, և էառ զնոցա տեղիքն և զամրոցքն։ Ի թըւիսն Հայոց ՋԺԹ. (1470)։ Ձեռամբ անարժան ծառայիս աստուծոյ* Յակոբի, *զոր բազում աշխատութեամբ գրեցի և ծաղկեցի և կազմեցի մեղաւոր և անարժան ձեռաւք իմովք ի դառն և ի դժար ժամանակի, յորում աստուածասաստ բարկութեամբ իջաւ յաշխարհ որ կոչի մահտարաժամ. և բոլոր տարի մի է, որ կայ ի մեր քաղաքս և յերկիրս և ոչ վերենայ։ Եւ շատ դրունք փակեցան, և շատ հայր անորդի արար, և շատ մայր՝ անզաւակ, շատ եղբայր անեղբայր արար, և շատ քոյր՝ անեղբայր, շատ քահանայ անորդի մնաց, և շատ ծըծկան տղայ անհայր, անմայր մնաց։ Արդ, յայս վշտաշատ ժամանակիս գրեցաւ սուրբ Աւետարանս, յորում մարտ ի ներքոյ և արհաւիրք արտաքոյ, ըստ մարգարէին, որ ասէ՝ Ամենայն անձն ի ցաւ և ամենայն սիրտ ի տրտմութիւն, և Յոտից մինչև ցգլուխ ոչ գոյ առողջութիւն։ Եւ այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։*

*Արդ, յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս որդին և դուստրն և թոռներն այս հասատարիմ կնոջս* Մարգարտիս, *և ինքն միայն մնաց՝ լալի և ողորմելի. վասն որոյ եւ դրել զսուրբ Աւետարանս յիշատակ իւր, և ծնաւղացն, և որդւոցն, և դստերացն, և ամենայն արեան մերձաւորացն։ Վասն որոյ աղաչեմ զձեզ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր* զՄարգարիտն *և զամենայն վերոյգրեալսն, և բոլորով սրտիւ և լի բերանով աստուած ողորմի ասացէք, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ. ամէն։*

*Արդ, որ ճաշակէք... յիշեսջիք ի սուրբ յաղաւթս* զՅակոբ *գրիչս, և զծնաւղսն իմ* զԳրիգոր *և* զԹանսուխ, *և զեղբարքն իմ և զամենայն մերձաւորսն իմ՝ զկենդանիքն և զհանգուցեալքն, և զորդիքն իմ՝ զԲ. (2)* Մկրտիչն, *և* զՍարգիսն, *և* զԳրիգորն, *և* զԽուտյէյն, *և* զԳշխոյին, *և զոր ի միւս մահուն մեռան, այլ և* զԱմիր *սարկաւագ զորդին իմ, որ զթուղթս կոկեաց։ Եւ որք զմեզ յիշէք սրտի մտաւք՝ յիշեալ լիջիք յառատ ողորմութիւնն աստուծոյ, ամէն։*

381

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 9720*

*կազմող՝* Խաչատուր
*վայր՝* Գողթան գաւառ

217ա *...Արդ աղաչեմ յիշել ի կենդանի յաղաւթս ձեր կազմող սուրբ Աւետարանիս* Խաչատուր *աբեղայս։*

*Շնորհիւն աստուծոյ սկսա և նորոգեցի սուրբ Աւետարանս ի թվականութեան Հայոց ՋԺԹ. (1470), ի հայրապետութեան տէր* Ըստեփանոսի *Գողթան դիտողի։*

*Փառք հաւրն երկնաւորի... որ արժանի արար զանարժանութիւնս իմ հասանել ի նորոգումն աստուածահրաման Աւետարան[ի]ս։*

217բ *[Յիշեսցիք]* զՀնդուշայ *հիւսն, որ զԱւետաբանիս կողն նորոգեաց։ Յիշեսցիք յաղաւթ ձեր եւ զորդին իւր* Շամար *և* [Յո՞ր]դանան: *Տէր աստուած ամրայծածուկ աչովն իւրով պահեսցէ, ամէն*։*

382

*ՄԱՇՏՈՑ*

*Փիրդ. 6273, էջ 311—312, Վան, ի Մանդան*

*գրիչ՝* Ովանէս
*վայր՝* Վերի-Նորավանք

*...Ո՞վ սուրբ ընթերցողք, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր* զՈվանէս *ողորմելի, զանուն ունիմ քահանայի ու գործ չունիմ իսկի բարի...։*

---

* *Այլ ձեռքով, շարունակությամբ, գրված է մի քանի տող, որից կարդացվում են միայն առանձին բառեր։*

*Քանզի եղև այսմ ժամանակի հարկապահանջութիւն ի տաճկաց. քանզի եկն* Ուզուն-Հասանն *և էսպան* զՋհանշէն՝ *որդին* Ղարա-Ուսուֆին *և զորդիքն իւր, և նստաւ ի թախտն նորա, և եղև թասուպութիւն յոյժ և հալածումն քրիստոնէից. և խափանեցին զհնչումն զանգակին, և քրիստոնեայք նշանաւ շրջէին...։*

*Արդ, գրեցաւ Մաշտոցս թուականիս Հայոց ՋԺԹ. (1470), ի վանքս որ կոչի* Վերի-Նորավա[նս]// *(Յիշեցէք) զգծող* Յովհաննէսս *ի յաշխարհի և քահանայս ներեսլի...։ Գրեցաւ ի վանքս որ* Մեղուս *կոչի, ընդ հովանեաւ լուսոյ մայր սուրբ Աստուածածնիս, առաջնորդութեամբ տեառն* Արիստակէսի, *և ի թուականիս ՋԺԹ. (1470)։*

## 383

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրզ. 6373, էջ 310—311, Վանի Տիրամայր եկեղեցի*

*գնող՝* Աւետիս
*վայր՝* Ոստան

*...Արդ, գրեցաւ յիշատակարանս վերջինս ի դառն և ի նեղ ժամանակիս, որ երկիր ամենայն երերեալ կայ և տատանեալ ի ձեռաց անօրէն ազգին նետողաց։ Այլ և այս երկու ամ է որ թանգութիւն, և ամենայն իրաց պակասութիւն, և մահտարաժամ յաշխարհէս չէ վերացեալ. և այս ամենայն վասն ծովացեալ մեղաց մերոց է։*

*Վասն որոյ ի ձեռն ձեր սուրբ աղօթիցդ և ամենայն սրբոց բարեխօսութեամբ բարձցէ տէր աստուած զամենայն տխուր տրտմութիւն տարադէպ պատահման, այսինքն է զմահ և զսով, զսուր և զգերութիւն յամենայն արարածոցս. և բարձրացուսցէ զեղջիւր եկեղեցւոյ սրբոյ ընդ չորս կողմն աշխարհիս՝ իբր զարեգակն պայծառացեալ, ամէն։ Յամին ՋԺԹ. (1470) թուականութեանս Հայկազեան տումարիս գծագրեցաւ վերջին յիշատակարանս, ի հայրապետութեան տեառն* Ստեփաննոսի *և ի զանութեան* Օրման-բէկի *որդւոյն՝* Հասան-բէկին, *որ* զՋհանշայ *միրզան սպան, և զամենայն հեծեալքն փախստական արար, և զանառիկ բերդորայքն էառ, և տիրեց ամենայն աշխարհի։*

*Արդ, ես* Աւետիս *և հարազատ որդիս իմ* Խօջայ-Ջատէն *գնեցինք զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից մերոց, և զսուրբ Աւետարանս և լաւ շուրջառ մի, և զեկեղեցւոյ գուռն սուրբ Ստեփաննոսի դրան շնորհեցինք, յիշատակ ինձ և ծնողաց իմոց...։*

*Յիշեցէք ի Քրիստոս* զՈստանայ *քահանայքդ, որ էք սպասաւոր սուրբ Ստեփաննոս Նախավկային և վայելող սուրբ Աւետարանիս, նախ և առաջին պատուական քահանայն տէր* Ատոմ, *տէր* Թադէոս, *տէր* Առաքէլ, *տէր* Մեսրոպ, *տէր* Մելքիսէդ, *տէր* Աւետիս, *և միւս տէր* Աւետիս, *և տէր* Յովհաննէս, *և մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ Ստեփաննոսին։*

## 384

### ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 9239

գրիչ՝ Յովաննէս Մանգասարենց
վայր՝ Արնէշ

ա

116բ *Քրիստոս աստուած... ողորմեա սաացուղի սուրբ դրոցս աստուածասէր և հեզահոգի վարդապետին* Մկրտչի, *և ծնաւղաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, և հարազատին իւրոյ՝ խորին իմաստոյն* Գրիգորի *կրաւնաւորի, և ինձ անարժան գրչիս* Յով[աննիսի], *և պակասութեան գրիս անմեղադիր լերուք, զի աչաց լոյս պակասեալ է, և առաւել յայս աւուրս, որ ի գրել Շարակնոցիս Բ. (2) տղայ ինձ յաստուած գնաց՝* Մէնէրն և Սանարբէկն, *վա՜յ ինձ։*

Բ

317բ *Զստացաւղ Շարակնոցիս զեւչանիկ բաբունին* զՄկրտիչ Արգիլանցի *և դերախտաւորսն իւր յիշեցէք։*

գ

*...Արդ, գրեցաւ սուրբ երգս Շարականաց յերկիրս* Քաչբերունի,
338բ *յ*Արնէս *քաղաքի, ի դուռն սուրբ տաճարիս Գէորգեայ զօրա||[վա]րի. և աւարտեցաւ ի դուռն Միրա[նա]ւոր Աստուածածնիս, ի խնդրոյ աստուածասէր հեզահոգի և քաջ բաբունոյն* Մկրտիչ *վարդապետի, որ հաստ[ատ]ուն յուսով, և անկեղծ հաւատով, առատաբաշխ տրօքետ գրել զսա յիշատակ հոգոյ իւրոյ, և բարեպաշտ ծնօղացն իւրոց՝ հօրն* Արաբէկին *և մօրն, և հարազատ եղբօրն՝ իմաստուն կրօնաւորին* Գրիգոր *վարդապետին...։*

*Բայց ես՝ մեղապարտ գրիչս* Յովանէս, *երես ի գետին դնելով աղաչեմ զսուրբ վարդապետդ, որ զիս յիշման արժանի առնես՝ զանարժան[ս], և զաւուցիչն իմ* զԹուման *բաբունապետն, և զծնօղսն իմ։ Եւ պակասութեանն, որ լինի ի սմա անմեղադիր լեր, զի կար իմ այս էր։ Եւ հոգովս հիանդ եմ ի խոցմանէ սատանայի և մարմնովս տկար եմ ի խոցմանէ հրեղէն սրոյն*
*աստուծոյ, որ մահտարաժամ է անմեղ տղայոցս, աչքս կուրացել է ի բա-*
339ա *զում լալոյս, մէջքս կոտո||րել է, ձեռս թուլացել է, զի իմ մէկ որդին* Մխիթար *զողորմելի հայրս սեւեց յայս աւուրքս, և ես մնացի անյիշատակ։ Բայց գոհանամ զաստուծոյ հազար բերան, թուականն է ՋԺԹ. (1470)։*

## 385

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4515 (Ղ. Փիրղ. Նշխարք պամ. հայոց, Բ.)

գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Կռուց

*...Եւ արդ, ես՝ յետնեալս ի կարգաւորաց և անարժանս ի քահանայից և անիմաստս ի գրչաց* Յոհաննէս, *ոչ ունելով իշխանութիւն հպիլ ի սուրբ*

Աւետարանս, այլ յուսալով ի ներողութիւն աստուծոյ, ահիւ և երկիւղիւ սկսայ ղսուրբ Աւետարանս, և բազում զգուշութեամբ աւարտեցի կամաւն աստուծոյ և օգնականութեամբ հոգւոյն սրբոյ, յորում է մեծ թուականն Հայոց ՋԺԹ. (1470)։ Այլ և զանարժան գրիչս զիմ երեսս ձեզ ի գետին դնելով աղաչեմ աստուած-ողորմի ասել ինձ, և ուսուցչին իմոյ Խաչատուր կրօնաւորին, և իւր ծնողացն, ամէն, և Գրիգոր կրօնաւորին, և ծնողաց իմոց Մուրատին և Մարգարտին:

Գրեցաւ և աւարտեցաւ սուրբ տէրունեան Աւետարանս ի վանքս որ կոչի Կտուց, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, և սուրբ Ստեփաննոսին, և սուրբ Գրիգորի Լուսաւորչին։

## 386

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8928

գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Աղթամար

286ա ...Զոր և տեսեալ զայս պատուական գանձս աստուածոմնակ և ցան-
կացաւ աստուածաբան սուրբ Աւետարանիս սրբասէր կրաւնաւորն
Մկրտիչ, և ստացաւ զսա ի հալալ և յարդար վաստակոց իւրոց՝ յիշատակ
իւրն և ծնաւղացն իւրոց՝ հաւրն Կի[ր]ակոսին, և մաւրն Գոճարին, և եղ-
բարցն Թումին և Սաճակին, քուերցն Հաս-խաթունին և Հռիփսիմին և
Խութլուին, և քուերորդոցն Սուֆիասին, և կենակցին Թուրուանդին, և որ-
դոց նոցին Մեսրոպին և Առաքելին, և հարսին Սիրմին, և որդոյ նորին
286բ Աստուածատ||րին, Հալիմին, և զաւակաց նոցին Մխիթարին, Կիրակոսին
և Աւետիսին, և դստերն Շամամին, և մաւրքուերն Արղունին, և որդոյն
Ամիրբէկին, և կնոջն Նիգարին, և որդոյն Յովանիսին, քեռոյորդոցն Աս-
տուածատրին, և Թումայի որդոյն Կաժկէն, հաւրքուերորդոյն Ստեփանո-
սին, և որդոցն Խաչատուր սրբասէր կրաւնաւորին և Մկրտչին, և մօրն՝
Մարթին, և այլ ամենայն արեան մերձաւորացն իմոց՝ կենդանեացն և
հանգուցելոցն առհասարակ...։

Եւ արդ, ես ոմայնս և թափուրս յամենայն հոգևոր բարեմասնութեանց
և հալեալս և մաշեալս վերջին աղքատութեամբ, մեղաւոր և անարժան
287ա ծառ||այս ծառայիցդ աստուծոյ՝ սուտանուն աբեղայ Հայրապետ յանձն
առի զայս սուրբ Աւետարանս և ամենակարող զաւրութեամբ հոգոյն աւար-
տեցի զսա մեղսամած մատամբս յիշատակ բարի իմաստոմ և հեզահոգի
սրբասէր Մկրտիչ կրաւնաւորին...*

287բ ...Այլ և զիս, զյետինս ի կարգս կրաւնաւորաց և զառաջինս ի դասս
մեղաւորաց, զմեղօք մեռեալ գծողս Հայրապետ, և զծնաւղսն իմ զԽաչա-

* Կրկին թվարկվում են պատվիրատուի հարազատների անունները։



Նկ. 14. Մի նմուշ Մինասի նկարներից*։

---

*) Նկարը հանված է Մատենադարանի № 982 ճաշոցից, որի հիշատակարանը տե՛ս № 177-ի տակ, էջ 135—137։

տուր և զՈսկիտիկին, և զեղբայրն իմ զՅոճանէս, և զկենակիցն իւր
զՇարմելիf, և զորդիքն իւր զԿարապետ քահանայն, որ զսուրբ Աւետա-
րանս, որ ծաղկով զարդարեաց, և զերախտաւոր քեռին իմ զՄինասենց
Թումայ կրաւնաւորն, և զաղդականքն մեր և զամենայն արեան մերձա-
ւորսն մեր՝ զկենդանիսն և զհանգուցեալսն, և զայնոսիկ որ սրտի մտաւք
մեզ աստուած-ողորմի ասեն, զի և ձեզ ողորմեսցի Քրիստոս, ամէն։
Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ
սուրբ Խաչիս և սուրբ Սարգիս զաւրավարիս, ի թըւականիս ՋԺԹ. Հայոց
(1470), ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսի, ի դառն և ի նեղու-
288ա թեան ժամանակիս, որ երկիր ամենայն երերեալ կայ և տատանեալ || ի
ձեռաց անաւրէն ազգին նետողաց։ Այլ և Բ. ամ է, որ սուր բարկութեանն
աստուծոյ, այսինքն է մահտարաժամ և թանգութիւն ամենայն իրաց, և
այս վասն ծովացեալ մեղաց իմոց. վասն որոյ ի ձեռն ձեր սուրբ աղօթիցդ
և ամենայն սրբոց բարեխաւսութեամբ բարձցէ տէր աստուած զամենայն
ախուր տրտմութիւն տարադէմ պատահման ի յաշխարհէս, ամէն։
Արդ, աղաչեմ զձեզ յիշեցէք ի Քրիստոս զՄկրտիչ կրօնաւորն, որ յոյժ
փափագմամբ և եռանդաշարժ սիրով ստացաւ զսուրբ Աւետարանս ի հա-
լալ արդեանց և վաստակաց իւրոց, և ետ ընծայ և նուէր Արբերդու վանից
դըան տաճարիս՝ սուրբ Աստուածածնին և սուրբ Գէորգեա զաւրավարին։
Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ Աստուածածնին, ո՛չ
յիմոց և ո՛չ յաւտարաց և ո՛չ յառաջնորդաց, և որք յանդդնին և առնեն
զայն անիրաւութիւնն՝ զանէծքն ղՅուդային և զխաչա՞անուացն առնուն և
զԿայենին, ամէն։
Այլ և յիշեցէք ի Քրիստոս ղվանից միաբանքս, որ են սպասաւոր սուրբ
288բ Աստուածածնի դրանս՝ տէր Մկրտիչ՝ ստացող սուրբ Աւետա||րանիս, և
տէր Խաչատուր հէրպէտ, և տէր Ներսէս, տէր Յովաննէս, տէր Վարդան, և
տէր Աւետիս, և զԹումայ տընտեսն, և զմաճկալ Յոհանէսն, և զՄկրտիչ
ջաղացպանն, և զԱրբերդու տանուտէքն՝ զմեծն և զփոքրն, և զձեզ և
և զլսաւղքդ և ղկարդացողքդ և զաստուած-ողորմի ասացողքն, ամէն և
հազար ամէն։
Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զտէր Մկրտիչն՝ ստացող սուրբ Աւե-
տարանիս, և ղհօրեղբօր որդին զՍադաղէն, և զկենակիցն և ղորդին իւր։
Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զԳրիգոր քահանայն և զծնօղսն իւր և ղեղ-
բարքն։ Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զՍադաղէն և զորդիքն իւր զԱս-
տուածատուրն և զԱւետիսն և զՆշխունեն։ Յիշեցէք ի Քրիստոս զՄարտի-
րոս քահանայն և զծնօղն զՓաշէն և զՄարգարիտն։ Դարձեալ յիշեցէք
զհոգևոր հայրն մեր զԽերապետն, և զկողակիցն իւր զՀանդուտն, և զոր-
դիքն զԽաչատուրն և զԽայխաթունն։ Յիշեցէք ի Քրիստոս զՄարտիրոս
289ա կրօնաւորն՝ զգծո[ղ]ս, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, ամէն, || և
աստուած ձեզ և մեզ ողորմեսցի յաւուր գալըստեան իւրում, ամէն։
Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զԿիրակոսենց Գրիգորն և զկենակիցն
զԳուլփաշէն, ղորդին զՄուրատն և զԳուլիվարդն, և զամենայն արեան
մերձաւորսն իւր, ամէն։ Եւ զեղբարսն՝ զԹումէն և Ստեփաննոսն, և զա-

ւակսն նոցա զԱռաքելն, և զՅակոբն, զՀայրապետն, զՄարտիրոսն, և
զՅովսէփն, և զկանայս նոցա, առհասարակ։ Եւ զԿարապետ արեղէն յի-
շեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք նոցա, որ արտ մի Վա-
խուանց, մաւտ ի Ջալուի արտն, ոհֆ տուին Արբերդու վա[նի]ցն, աստու-
ած ղիւրեա[ն]ց մեղքն թողու, ամէն։

Ընդ նմին յիշեցէք ի Քրիստոս զԱրբերդու Մլխամն, և կենակիցն
զԻնախ-Փաշէն, և ղղուստրն զՆսէֆն, որ ասի Նուշիկ, և զայրն զՎարդանն,
և ղորդին զԱտոմն, և տէր Տիրիկն, ղդստերն զՇաղզադէն և զՇայնսաան,
զԳուլիզարն և զամենայն արեան մերձաւորս իւրեանց յիշեցէք ի Քրիս-
տոս և աստուած-ողորմի ասացէք նոցա, որ զՃիտկանց արտն ոհֆ տուին
Արբերդու վանիցն, աստուած զիւրեանց մեղքն թողու, ամէն։

269բ Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք խաւշայ
Աւիտխսին, որ արար բարութիւն և արար ոխվ Ա[ր]բերդոյ սուրբ Աստուա-
ծածնին՝ զՆերկարուրենց արտն, որ է ի Վարդինիս, յիշատակ իւրն և իւր
ծնաւղացն՝ հօրն Յովանիսին, և մաւրն Խանաթունին, և կնոչն Համաւշ-
խութունին, և եղբարցն Փարեխանին, Կարապետին, և Ներսէս քահանա-
յին, և Բաշարաթին, և Երանոսին, և Խլղաթին, և Յակոբին, և իւրեանց
ամենայն արեան մերձաւորացն, ամէն։

387

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4970

գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Աղթամար

316ա ... Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց սուտա-
նուն Գրիգոր ափեղա... ամենակարող զաւրութեամբն աստուծոյ կատա-
րեցի զսա մեղսամած մատամբս իմով յաստուածաբնակ կղզիս Աղթա-
մար, ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս, ի հայ-
րապետութեան տեառն Ըստեփանոսի, ի յառաջնորդութիւն սուրբ ուխտին
Սալնապատա Ըստեփանոս արհեպիսկոպոսի, ի թուականիս Հայոց ՌԺԹ.
316բ (1470)։ Զոր և իմ անընդունակ գոլով յարու||եստ գրչութեան և բազում
մեղացն ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի իմում, զոր պարգևեաց
ինձ մարդասէր հոգին, բազում աշխատանօք գծագրեցի զսա ի ստոյդ
և յընտիր աւրինակէ կենօք տառապանօք, ի դառն և ի վշտաբեր ժամա-
նակիս, յորում կամք ընդ հարկի անաւրինաց։

Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սե-
ղանոյս, որք պատահիք սմա տեսութեամբ և կամ ընթերցմամբ յիշեսջի-
ջիք յերկնագնաց յազաւթս ձեր զյաաաչ յիշեցեալ ստացող սուրբ Աւե-
տարանիս՝ Ջուլալ-Խաթուն, և զայրն իւր զԱրթուխշէն, և զորդիքն իւր
զԿարապետն և զՄկրտիչն, և զդստերքն իւր զԽայխաթուն և զԳանջխա-
թուն և զՂամարխաթուն, և հանգուցեալքն առ Քրիստոս և զազգն ամե-
նայն...։

317ա ... Ընդ նոսին և զանպիտան Գրիգոր գծող սորա, և զծնօղսն մեր զԱկբն և զԽալխաթունն, և զեղբայրն իմ զԱւփտիս պատանին, որ փոխեցաւ ի Քրիստոս և եթող մեզ սուգ անմխիթար ի յայսմ աշխարհիս. և զքուրն իմ զԱրղունն-Մելէքն, և ըզփեսեայն իմ զՈւսէփն, և զհոգևոր հայրն մեր զԹումա քահանայն, որ ուսո[յ]ց մեզ զարուեստ դըպրութեանս...։

317բ Արդ, յիշեցէք ի Քրիստոս զՅովանէս կրանաւորն և զԳրիգորն, որ միջնորդ և յորդորիչ եղեն սուրբ Աւետարանիս։ Տէր աստուած տացէ վարձս վաստակոց իւրեանց ղերկնից արքայութիւնն և զանբաւ բարութիւնն, ամէն։

388

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7748

գրիչ՝ Ջաֆարէ

վայր՝ Աշոտաց-ձոր, Յանկիւնեաց վանք

...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի յերկիրս Աշոտաց-ձորս*, ի սուրբ ուխտս որ կոչի Յանկիւնաց վանք, ի դուռն սուրբ Լուսաւորչին, և
248ա Վարդիհաւր սուրբ գերեզմանին, և սուրբ Պետրոսի և սուրբ Պաւղոսի, || և սուրբ Սիովնի, և սուրբ Սուքիասանց. ի թուին Հայոց ՋԺԹ. (1470), ամիս, հոկտեմբեր ամսոյն ի ԺԵ. (15), ձեռամբ անարժան և սուտանուն գրչի Ջաֆարէ աբեղայի։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս՝ պատահելով տեսութեամբ կամ ընթերցմամբ, յիշեսջիք յաղաւթս ձեր զստացող սորա զՅեւաք-Մելիքն**, և զծնաւղսն իւր***, և զորդիքն զԱմիր-Ազիզն և զՃաւարն, և զամենայն արեան մերձաւորսն՝ զվերոյասացեալքս ի սմա...։

Գրեցաւ ի յառաջնորդութեան տէր Աստուածատուր հայրպետին, ի յեպիսկոպոսութեանն տէր Գրիգորին: Աղաչեմ զամենեսեան, որ կարդայք սուրբ Աւետարանս յիշեցէք զտէր Գրիգոր եպիսկոպոսն և զտէր Աստուածատուր հայրպետն, որ կամակից եղան սուրբ Աւետարանիս և յորդորեցին զմեզ ի գրելն. աստուած զիւրենք յորդորէ ի յիւր արքայութիւն. և յիշեցէք զՄինաս աբեղայն և աստուած-ողորմի ասացէք, ամէն, ամէն։

---

* 1694 թվականի մի հիշատակագրության համաձայն Աշոտաց-ձորը գտնվել է Վայոց-ձորում («եւտու զսա վախմ Կալասեռու սբ. Գրիգորի եկեղեցոյն, որ է յերկիրն Վայոձորոյ, ի նահանգին Աշոտի-ձոր» ձեռ. № 1511, էջ 608ա)։

** Տեղ է բաց թողնված անունների լրացման համար։ Այդպես է արված նաև հիշատակարանի սկզբի (մեր կողմից մեջ չբերված) մասում, ուր հետագայում (1610 թ.) իր և իր ազգականների անունն է գրել ավել ձեռագրի նոր տեր Նորհատը։

*** Տես նախորդ ծանոթագրությունը։

248բ Դարձեալ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զծնաւղնս իմ զՄելքսէդն, և զմայրն իմ զՄելիքն, և զեղբայրն իմ զՎասիլն, և զքոյրն իմ զՄարիամն, և զմիւս քոյրն իմ զԱսլի*-Մելիքն և Տովլաթն յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք, ամէն։ Եւ զՊէկի սարկաւագն, որ զԹուխթն կոկեց, և զՇերիֆ մամն, և զՄթխալ մամն, ոմն ի ջրին բերել, ոմն ի հացին թխելն, ոմն աւել ածելն, և զՄխիթար մղմտեսին, որ զտաւարն արծեց յիշեցէք և աստուած ողորմի ասացէք։ Ով զաստուած-ողորմին լի բերանով ասէ,·նա աստուած զիւրեանցն մեղքն թողոյ, ամէն, ամէն։

## 389

### ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՄՎ 133 (1251), հտ. Ա., 588

գրիչ՝ Զաքարէ

վայր՝ Աշոտաց երկիր, Յանկիւնեաց վանք

275բ ...Ուստի և տեսեալ զահառն** անճառ փրկագործութեան խորհուրդ՝ աստուածասէր և ընտրեալ քրիստոնէ Սարահրոս, և ստացաւ զսուրբ Աւետարանս յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց Գրիգորին և Շնովորին, և իւր կողակցին Թուխթարին, և եղբաւրն Նորպարոնին, և Կիրակոսին, և Հռեփսիմին, և Վարքէթուփին, Յեւաթմէլիքին՝ որ տղայ փոխեցաւ ի Քրիստոս, ամէն, և քրոջն Դշխոյին, և հանգուցելոցն ի Քրիստոս, և ամենայն արեան մերձաւորացն, և հանգուցելոցն, ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի յերկիրս Աշոտաց***, ի սուրբ ուխտս որ կոչի Յանկիւնաց վանք, ի դուռն սուրբ Լուսաւորչին, և Վարդիհաւր սուրբ գերեզմանին, և սուրբ Պետրոսի և սուրբ Պաւղոսի, և սուրբ Սիովնի, և սուրբ Սուքիասանց։ Ի թուին Հայոց ՋԺԹ. (1470) ամիս, հոկտե[մ]բեր ամսոյն ի ԺԵ. (15), ձեռամբ անարժանի և սուտանուն գրչի Զաքարէ աբեղայի****։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս՝ պատահելով տեսութեամբ կամ ընթերցմամբ, յիշեսջիք յաղաւթս ձեր զստացող սորա զկոչկար Մարտի[րո]սն, և զկողակիցն իւր զԹուխթարն, և զծնաւղսն իւր, և ամենայն արեան մերձաւորսն՝ զվերոյասացեալքս ի սմա, և լի և առատ բերանով և յաւժար սրտիւ աստուած-ողորմի ասացէք, և աստուած, որ առատն է ի տուրս բարեացն, ամենեցուն առ հասարակ ողորմեսցի, ամէն, ամէն։

Գրեցաւ ի յառաջնորդութեան տէր Աստուածատուր հայրպետին, ի յեպիսկոպոսութեան տեառն Գրիգորին: Աղաչեմ զամենեսեան, որ կար-

* Այս անունը մասամբ ջնջված է։
** Ձեռագրում «զտէր»։
*** Մի բառի տեղ դատարկ է թողնված։
**** Այսպիսով Զաքարե գրիչը 1470 թ. հոկտեմբերի 15-ին ավարտել է միաժամանակ երկու ավետարանների (Երևան № 7748 և Վենետիկ № 133) ընդօրինակությունը։

դայք զսուրբ Աւետարանս, յիշեցէք զաէր Գրիգոր եպիսկոպոսն և զաէր Աստուածատուր Հայրպետն, որ կամակից եղան սուրբ Աւետարանիս և յորդորեցին զիս ի գրելն. աստուած զիւրենք յորդորէ ի յիւր արքայութիւնն. և յիշեցէք զտէր Մինաս աբեղայն, որ ի կոկելն աշխատեց, յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք. ամէն։ Ցիշեցէք զՀերիք մամն, որ խիստ աշխատեցաւ ի յեա մեզ՝ ի հացին թխելն, ի ջրին բերելն, յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք, ամէն։

## 390

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Թորոս Աղբար», Բ, էջ 353—356, Մոկք (Կլօպնիկ) գիւղ

Նորոգող
վայր՝ Շուշանց գի՞ւղ

...Արդ, ի դառն և ի նեղ ժամանակիս, որ է թուական Հայոց ՋԺԹ. (1470)...։ Աստուածասէր, համեստ և հարկաւոր կինն Շիրազ մամէն ետ նորոգել զսուրբ Աւետարանն... Ցիշեցէք զՇիրազ-խաթունն..., և զհայրն զԱսլանն, զմայրն Շնաւհորն, և զեղբարսն... զՄուրատշէն, և զայրն իւր զԽնդուբէկն..., և զզաւակսն զԹաւթիկն..., զԱսլանբէկն..., զդուստրն Մամէն... և զԹումաբէկն..., զպարոն Հազարբէկն, և զկողակիցն իւր զԴուխտարն, զորդին զՄխիթար սարկաւագն, զորդին զԱզբէկն, և զկողակիցն զՄուղալ-խաթունն, և զորդիսն... զՌնենուբէկն և զԽնդրածն...։





## 391

## ՄԱՇՏՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԵՒ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ ԵՒ ԹԱԳԱՒՈՐԻ ՕԾՄԱՆ

Երևան 5702

գրիչ՝ Ներսէս եպիսկոպոս
վայր՝ Աղթամար

ա

237ա ... Այլ և այսու ամենայնիւ լցեալ, ղառ ի յաստուծոյ պատուեալ,
երջանիկս արիացեալ, հաւր զաւրութեամբ հովանաւորեալ, բնութեամբ
որդւոյն յարդարեալ, հոգոյն սրբոյ շնորհաւք զարդարեալ՝ ի հոգի և
237բ ի մարմին և ի միտս, նա և ի բարի յարմատոց շառաւ||իղ ընտրեալ շնոր-
հաւքն Քրիստոսի, յազգէ թագաւորին Գագկայ, Հայոց մեծաց տէր Ստե-
փաննոս կաթողիկոս եւ պատրիարգ* ամենայն հայկազեան արեգական
սեռի եւ Աղթամարայ առաջելադիր սուրբ աթոռոյ, զոր հաստատեալ է
սրբոյն Գրիգոր Նարեկացի՝ սքանչելագործ և մեռելյարոյց աստուածա-
բան սուրբ վարդապետն, որ գերագոյն իմն գտաւ քան զառաքեալսն, որ
արևելք է արեգական արդարութեանն, և արևմուտ է բանին աստուծոյ,
այլ և հաճութեամբն աստուծոյ և կարողութեամբ սուրբ հոգւոյն և ողոր-
238ա մութեամբն Քրիստոսի և միջնորդութեամբ սուրբ Աստուածածնին ազդե||-
ցաւ սրբոյն Գրիգորի հաստատել աթոռ զերկնահանգէտ, զհոյակապ
և զհռչակաւոր, ահեղ և զարմանալի, կամարակապ, կըմբէթայարկ, սրով-
բէագումար և երկնանման և հաստակառոյց վիմաւք զարդարեալ հրաշա-
փառ և հրաշազան, հիացուցանող զօրութիւն սքանչելագործ և կենսատու
բարձակումբէթ զսուրբ խաչս* Աղթամարայ։ Եւ հրովարտակ առաքեալ
յամենայն տեղիս՝ առ Սինէմարիմ արքայն և առ Ջեննն կայսրն, որ ունէր
զերկիրն Ապահունեաց, ի յԱյրարատեան գաւառէ տէր Անանիայ կա-
238բ թողիկոսն, մինչ ի Միջագետս: ||Եւ ամենայն ռամկական զաւրքն գրոհ
տըւեալ ժողովեցան դասք թագաւորաց և բազմախումբ վարդապետաց և
հայրապետաց և սուրբ կրամաւորաց. և տամ մեծ կատարեցին և հաս-
տատեցին զտէր Ստեփաննոսն ի սուրբ յաթոռս, ի բարի շառաւիղէն Գագ-
կայ, եւ ցնծութիւն եղև ամենայն բոլոր քրիստոնէիցս, որ յար և
նման էր առաջին կաթողիկոսացն ամենայն առաքինութեամբ զարդա-
րեալ, ի փառս տուիցելոյն ղանպատում բարիս. եւ յերկարեալ լի
աւուրբք փոխեցաւ յանանց կեանսն։

Եւ յետ այնորիկ յաջորդեաց զտեղի նորին եղբօրորդին տէր Դաւիթ. և
239ա յետ նորա տղայ տէր Ստեփաննոսն, || որ զսուրբ աթոռոյ կուբէթն և սա
գերն և երկոտասան քարն ի հարաւակողմ կոաէ յօրինեաց և զանկակն
շինեաց։

* Ընդգծվածը գրված է կարմիր թանաքով։

Եւ յետ այնոր պարդևեցաւ հոգիահրաշ տէր Զաքարիայն գերագոյն
իմն՝ քըւերորդի նորին, որ բազում արդիւնս արար, շինեաց զժամատեղս
առաջին տէր Ստեփանոս կաթողիկոսն, և զժամատունս ու զըման
սուրբ Գէորգն, շինեաց զՏաւնական ու զՍարգիս գիրքն ու զՃառն
և այլ բազում արդիւնս արար, որո յիշատակն աւրհնութեամբ եղիցի։
Եւ յետ այնոր ի շառաւեղէ նոցին պարդևեցաւ տէր Զաքարիայն՝ քաշ
նահատակն, որ ըզպսպանաւ յՈստան, ի յանօրինաց։
239բ Եւ արդ, ես՝ մեղուցեալս ի յարդարոց, մեղանչականս ի յանմեղաց,
անկարգս ի կարգաւորաց, սուտանուն Ներսէս եպիսկոպոս՝ տկար մարմ-
նովս յանձն առի և կարողութեամբն աստուծոյ ի յաւարտ ելաւ, ընդ հո-
վանեաւ գերազարդ սուրբ աթոռոյս սուրբ խաչիս Աղթամարա, և սուրբ Փըր-
կըչին, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Ստեփաննոսին, և սուրբ Սարգսին,
և սուրբ Գէորդ զաւրավարին, ի հայրապետութեան սորին տեառն Ստեփան-
նոսի*, եւ ի նոր թագաւորիս մեր պարոն Սմբատի**, եւ համշիրաք եղբարցս
240ա մեր. նախ՝ տէր Յոհաննէս փիլիսոփաին, տէր Հէրապ||ետ փիլիսոփային, տէր
Ստեփանոս փիլիսոփային, տէր Յակոբին, և տէր Սարգիսին, տէր Մկր-
տչին, և տէր Յովանէս փակակալին, տէր Գրիգորին, և տէր Յովսէփին,
տէր Յովանիսին, տէր Յոհանիսին, և տէր Թումին, և տէր Կարապետ
ծաղկող սորին. եւ ամենեցուն առ հասարակ՝ միա[բա]ն[ից] և սպասաւո-
րաց սուրբ աթոռոյս, որ կան ի սպասու։
Եւ լի բերանով և ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք ինձ, և
ծնաւղացն իմոց՝ հաւրն Կուտչիբէկին և մաւրն Էմնա-խաթունին, եւ
հարազատ եղբօրն իմոյ տեառն Ստեփաննոս կաթողիկոսին, որ տէր
240բ աստուած պահեսցէ || զնա յամերամ ժամանակաւ, ընդ ամրածածով
աջովն ի պարծանս ամենայն ուղղափառ եկեղեցւոյ։ Եւ յետ աստեացս
ելանելոյ զհոգի սորա դասեսցէ Քրիստոս աստուած ընդ սրբոց հայրա-
պետացն՝ Գրիգորի Լուսաւորչին, Գրիգորի Նարեկացւոյն, Յոհաննու Ոս-
կիաբանին, Յոհաննու Աւետարանչին, Եփրեմի վարդապետին, և ամենայն
սուրբ հայրապետացն դասակից, պսակակից, խորանակից արասցէ, և
սեղանակից արդարոցն հարիւրաւորացն և անցեալ պաշտեսցէ, հանդերձ
ծնօղաւքն և ամենայն զարմաւք և ազգայնաւքն, ամէն։
241ա Այլ և զնախն||իքն մեր՝ զպարոն Պըսակն, և զԱղտր-Մէլիք, և զմեծ
պապն մեր զՄարտիրոս, և զԱւթա-խաթուն, և զհայրն մեր զԳուտչիբէկ,
և Ջանիբէկ, զՀասան, և զԱսլան, և զորդին զՊասկ, և զԱմիր, և զՀալի-
Ֆէն, և զորդին զԲէկիկ, և զԱսլան, և զՄարտիրոս, նաև զմայրն իմ
զԷմնա-խաթուն, և զծնօղքն իւր զԳրիգոր և զԹամար, զԼուսինա, և զԴէս-
բանայ, զԱստուածատուր, և ըզՏիրատուր, զՂազարն, և Կիրակոս, և
զԱւագուխ, և զՄամախաթուն, և զազգականքն մեր, և զՍալչուկ-խաթուն,

* Ստեփանոս կաթողիկոսի նկարը պահպանված է ձեռագրի 70ր, 103ր, 212բ էջե-
րում։ Հատկապես ուշագրավ է 70ր էջի նկարը, որ վերաբերում է կաթողիկոսի ձեռնա-
դրության կանոնին։
Նկարի սարքին մասի կապտավուն երիզի վրա, երկաթագիր տառերով, գրված է՝
«Զտէր Ստեփաննոս կաթողիկոս»։
* Ըստ երևույթին Սմբատ թագավորի օծման արարողությունն է պատկերված 212բ
էջի նկարում։ Սմբատը չոգել է Ստեփաննոս կաթողիկոսի առաջ, թագը գլխին։ Կաթողի-
կոսը մի խումբ հոգևորականների ընկերակցությամբ կանգնած է ձախ կողմում։



Նկ. 15. Թագավորի օծման արարողություն (№ 5702 Մաշտոց, էջ 212բ)։

241բ և Խարուշայ՝ ըղկենդանիքն և զհանգուցեալքն, և ըզհօր||քեռին մեր զհե-
զահոգին՝ ըզտէր Դաւիթ կաթողիկոսն, և զամենայն արեան մերձաւորսն
իւր, նաև զուսուցիչն մեր զՄինասենց տէր Թումէն, որ բազում աշխա-
տանք կրեաց ի վերայ մեր, և զտէր Հէրապետ փիլիսոփայն, որ շատ նե-
ղութիւն կրեցին ի վերայ մեր, և զաւրհնօղն մեր զՁարշոնց եպիսկոպոսն,
և զՍօսկոնցի վարդապետն, և զԿիրակոս վանից հէրն, եւ թէ կենդանիքն
են՝ զհամշիրաք եղբայրն մեր զտէր Աւտոմ արհեպիսկոպոսն և զիւր

եղբայրքն զԱռաքել և զԽաչատուր, որ շատ աշխատեցան սուրբ աթոռոյս. եւ թէ կենդանիքն են և թէ հանգուցեալքն, թէ ի կաթողիկոսաց, թէ յե-
242ա պիս///* աշխարհիս, մինչ ի Պարսկաց տունն։ Ի թվականութեան Հայկազեան տոմարի Ջ. ու Ի. (1471), ի յամսեանս արեգի ԻԵ. (25)։ Եւ խոշորութեան և փըծուն դրիս անմեղադիր լերուք։ Ով որ զմեզ յիշէ՝ զառաջ յիշեցեալսն ի սմա, և զայնոսիկ, որ յանձնեցին ի մեզ դրել ի սուրբ գիրքս, զի և դուք յիշեալ եղիջիք յաւրհնութեան պահում, և Քրիստոսի աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս, ամէն։

Բ

211ա … Եւ ես՝ մեռեալ անձն և սակաւ աշխատող ներգևեալ անուն Ներսէս՝ անարժան քան զամենայն հոյլս մեղաւորաց եպիսկոպոս, ծառայ կաթողիկոսին աղաչեմ յիշել ի սուրբ յաղօթս։

ԶՅովանէս փակակալն յիշեցէք ի տէր աստուած, որ օգնական եղև մեզ։

Գ

նկարող՝ Կարապետ

70բ ԶԿարապետ նկարող եւ զուսուցիչն իմ զՄինասն յիշեցէք ի Քրիստոս։

392

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան.4515, էջ 204—205 (Ղ. Փիրղալեմյան, Նշխարք պատմ. հայոց, Բ.)

գրիչ՝ Ներսէս եպիսկոպոս

ա

…[Յիշեցէք] ստացողի սուրբ դրոցս ուսթան պարոն Վարդանին՝ լուսաւոր հոգուն, և իւր ծնողացն՝ հօրն Հէրապետին և մօրն Շամամին, և կողակցին Ղըսմաթին, եղբօրն Դայուտին, քուերն Շնոհտրին, ջոջ մօրն Շնոհւորին, փեսին Թումին… և փէտկիր Կարապետին…։ Ընդ նոսին և ինձ եղկելոյս՝ Ներսէս փծուն գծողիս, և մեր ծնողացն Գուռջիբէկին և Էմնային, և հարազատ եղբօրն իմ տէր Ստեփաննոս կաթուղիկոսին՝ Հայոց վերադիտողին, Ջանիբէկին և Մարտիրոսին, և մեր քեռոյն տէր Դաւիթ կաթողիկոսին։

Բ

Այլ և զիս զՆերսէս մեղօք լցեալ ոգիս, և հարազատ եղբայրն իմ զտէր Ստեփաննոս կաթողիկոսն Աղթամարայ… և զուսուցիչն մեր Մինասենց տէր Թումէն**…։

* Ձեռագրից ընկել է մի թերթ, ուստի շարադրությունն ընդհատվում է։ 242ա էջում պահպանվել է հիշատակարանի վերջին մասը։

** Ցիշատակարանը անթվական է։ Տեղադրում ենք նույն Ներսես եպիսկոպոսի 1471-ին շարադրած նախորդ հիշատակարանին առընթեր։

## 393

## ՄԱՅՐ ՄԱՇՏՈՑ

*Երևան 4773*

*գրիչ՝* Հայրապետ
*վայր՝* Աղթամար

ա

*...Արդ, ես՝ մեղուցեալս և անարժանս յամենայնի* Հայրապետ *սու-*
*տանուն աբեղայս ստացայ զսուրբ գիրքս և իմով մեղսամած մատամբս*
359ա *գծագրեցի || զսա յիշատակ բարի ի յայժմուս ժամանակի հոգոյս իմոյ*
*մեղուցելոյ, և ծնաւղացն իմոց՝ հաւրն իմոյ* Խաչատրոյ *և մաւրն իմոյ*
Ոսկի-Տիկնօջն, *և եղբաւրն իմոյ* Յոհաննիսին, *և քուերն իմոյ* Վարդ-խա-
թունին, *և եղբաւրորդոցն իմոյ* Կարապետ *քահանային, որ զգիրգս զայս*
*զարդարեաց ծաղկով, և զ*Մխիթարն, *և ղողայքն մեր, որ տարաժամ հա-*
*սակաւ առ Քրիստոս փոխեցան։ Այլ և զընտրեալ զհռչակաւոր փիլիսոփայն*
զՄինասենց Թումայն՝ *զքեռին իմ, զի բազում ջան և աշխատութիւն կրեալ*
*է ի վերայ իմ. Քրիստոս աստուած զիւր հոգին ընդ սրբոց դասն դասեսցէ*
*և լսել տայ զձայն երանաւէտ բարբառն, և զծնաւղքն իւր զ*Սիմէոն *և զ*Ար-
ղուն, *և ղմաւրքոյրն իմ զ*Անղալատ, *և զորդիքն իւր զ*Քուրդամիր *և զ*Աւե-
տիս, *և զորգիքն նոցին զ*Թումէն *և զ*Վարդան, *և գդուստրն իւր* զՆըղաչ-
խաթուն, *և զայրն իւր ըզ*Հէրապետ, *և զորդին իւր զ*Խաչատուր, *և զեղբաւր-*
*դուստրն իմ զ*Փաշէն, *և զայլ ամենայն արեան մերձաւորսն մեր՝ զկենդա-*
*նիսն և զհանգուցեալսն, և որոց տէր կամեսցի։*
359բ *...Յամին Թ. հարիւր և քսան թռականութեանս հայկազեան տումա-*
*րիս (1471) դծագրեցաւ սուրբ տառս, որ կոչի Մաշթոց յաստուածապահ*
*կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Աստուածածնիս*
360ա *և սուրբ Սարգիս զօրավարիս, || ի հայրապետութեան տեառն* Ստեփաննոսի,
*և ի թագաւորութեանն* Հասան-բեկին, *ի դառն և ի նեղութեան ժամանա-*
*կիս, որ երկիր ամենայն երերեալ կայ և տատանեալ ի ձեռաց անօրինաց։*
*Այլ և այս Գ. (3) ամ է, որ սովս բարկութեանն աստուծոյ, այսինքն է մահն*
*տարաժամ ի յաշխարհէս և չէ վերանալ. և այս վասն ծովացեալ մեղաց*
*իմոց։ Վասն որոյ ի ձեռն ձեր սուրբ աղաւթիցդ և ամենայն սրբոց բարե-*
*խաւսութեամբ բարցձէ տէր աստուած զամենայն պատուհաս ի ձեզանէ,*
*այսինքն է՝ զմահ և զսով, զսուր և զգերութիւն յամենայն արարածոցս,*
*ամէն...։*
360բ *...Այլ և ես՝ մեղաւոր և անպիտան* Հայրապետ, *շնորհեցի զայս սուրբ*
*գիրքս ընձայ և նըւէր* Աղթամարայ *սուրբ Խաչիս և անարատ և մաքուր*
*սուրբ Աստուածածնի տաճարի դրանս, որպէսզի սպասաւորք սուրբ տա-*
*ճարիս ընթեռնուն զսա և զաստուած-ողորմին անմոռաց ասասցեն մեզ։*
*Եւ մի ոք (իշխեսցէ) հեռացուցանել ի դրանէ սուրբ տաճարացս, ոչ յիմոց,*
*և ոչ յաւտարաց, ոչ ծախելով և ոչ գողանալով, և կամ ով իփք պատճա-*
*ռաւ, և ով յանդըգնի և արասցէ՝ զայն ընդ Կայենի և ընդ խաչահանուացն*
*դասեսցի, ամէն։*

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զխուան* Թումէն, զՔուրդամիրի որդին, և զԱւետիսն, որ վասն դրոց կողիցն կու աշխատին և զուգեն, ընդ Յովսէփայ աստուածահաւրն դասակից արասցէ և մասնակից Քրիստոս աստուածն մեր զնոսա, հանդերձ ծնաւղաւքն իւրեանց. ամէն։

Բ

66ա Ողորմած բնութիւն տէր Յիսուս Քրիստոս, ողորմութիւն և արքայութիւն շնորհեա ինձ՝ անարժան և մեղապարտ սուտանուն կրօնաւորիս Հայրապետի, և ծնաւղացն մերոց՝ Խաչատուրն և Ոսկի-Տիկնէն, և եղբօրն իմոյ Յոհանիսէն, և երախտաւոր քեռոյն իմոյ Մինասենց Թումին, և եղբօրորդոյն իմոյ Մուրատ սարկաւագին, որ զՄաշթոցս ծաղկեց, և զկենդանիքն և զհանգուցեալքն մեր։

66բ Յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք Միրանին, որ գերի գնեց և յուղարկեաց ի յԱղբամար: Քրիստոս աստուած զինքն ափհնէ և զիւր որդիքն, ամէն**։

211ա Քրիստոս աստուած իւր խաչի լուսոյն արժանի արասցէ զՄիրան և զիւր կողակիցն զԱսլի-Փաշէն, ամէն***։

## 394

### ՃԱՌԸՆՏԻՐ

Փիրդ. 6273, էջ 314, Վան՝ ի ս. Պօղոս եկեղեցի

...Արդ, գրեցաւ Ճառս ի թագաւորութեան Հասան պարոնին, ի շրջագայութեան տոմարիս ՋԻ. (1471)։ Արդ, Հասան-բէկս այս երեք տարի է, որ թագաւորեաց ի Պարս, և յԱրևելս, և ի Միջագետս, ի հարաւ և ի հիւսիս՝ խաղաղութեամբ, կամաւն աստուծոյ։

## 395

### ԱԻԵՏԱՐԱՆ

Վրացական ՍՍՌ, Կենտրոնական Պատմական արխիվ, ֆոնդ 233, № 541****

Գրիչ
վայր՝ Հայոց-թառ

336ա Ի խնդրոյ և արդեանց երից երանեալ երջանիկ և հաւատարիմ մայրն իմ Էմին-Խաթուն, և քոյր իմ Սալթան-Մելիք՝ վերայձայնելոյ, առ տէր։

* Իմա՛ «զհիւսն»։

** Գրված է այլ ձեռագրով, ջրօրհնեքի արարողությունը պատկերող նկարի վերին մասում։

*** Գրված է Քրիստոսի խաչելությունը պատկերող նկարի վերին մասում։ Ձեռագրի նկարները ուշագրավ են. հատկապես ուշադրության արժանի է հարսանյաց պսակի օրհնությունը պատկերող նկարը (էջ 82բ), որի աջ կողմում նկարված է «թագավորը» (փեսան) իր ընկերների («աղապբաշիների») հետ միասին, և հարսը՝ երկու այլ կանանց ընկերակցությամբ (տե՛ս նկ. 16)։

**** Ձեռագիրը վերին մասից կիսով չափ այրված է, ընթերցվում են միայն որոշ պարբերություններ։



Նկ. 16. Պսակի օրհնությունը պատկերող նկար № 4775 ձեռագրից։

...Ի թվականութեան հայկազեան տոմարի ՋԻ. (1471) թուի, և ի վշտաշատ ժամանակի, յորում նեղեալք յանաւրինաց և յանիրաւ պահանջողաց, որ և ազգս մեր Հայոց տառապեալ էին և կեզ[եք]էին։

...Եւ ի /// Ուզուն-Հա[սան /// որդոյ Աս///բէկին շէն [է] միջակոտո[ր /// էրեկ և է[առ /// աշ]խարհս և զ[թախ]թս Թաւրիզ և զփաթշահութ[ին], և եսպան զԻանն և զՋանշէն՝ զորդին զՍւսուփին///

...Ի գերահռչակ սուրբ ուխտս Հայոց-թառս, ընդ հովանեաւ սուրբ Ամենափրկչիս, որ է պատկեր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և մաւրս մերոյ սրբոյ Սիովնի, և սուրբ Աստուածածնի, և աստուածընկալ սուրբ Նշանացս՝ կենսատու սուրբ Աստուածածնի, և աստուածընկալ սուրբ Նշանացս՝ կենսատու սուրբ Յակ[ոբի՞ /// կատարեցաք զսա յիշատակ մեզ և մեր ծնաւղացն՝ մաւրն իմոյ Է[մ]ինին և Յովանիսին, և իմ քուրոյն

Սալթան-Մելիքին, և որդւոյ՝ Յոհանէս կուսակրօնի աբեղին, և Սան-վելին, և Յովսէփի՞ն /// և եբեր [ի] սուրբ ուխտս և մեր հայրենի գերեզմանատունս։ Յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր և աստուած զնորա խնդիրքն կատարէ, ի հոգևորն հաատուցանէ///

## 396

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 215

գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Հայոց-թառ

ա

301բ ...Արդ, եղև զրաւ գրչութեան այսմ աստուածաշունչ Աւետարանիս ի
թվ. Հայոց Ջ. և Ի. (1471), և ի վշտաշատ ժամանակի, ի խանութեան
Ուզուն-Հասանին, և ի հայրապետութեան տեառն տէր Ռըստակէս կա-
302ա թողիկոսի՝ || ի սուրբ յաթոռն էջմիածին, ի յերկնահանգէտ և ի սուրբ
ուխտս Հայոց-թառ սուրբ Ամենափրկչիս, որ է պատկեր տեառն մերոյ Յի-
սուսի Քրիստոսի, որ է օրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

բ

153բ Զմեղապարտ գրիչս զՍտեփաննոս, նաև զփոքրն իմ զՅոհաննէս մահ-
դասիքս՝ զնկարող* և զկաղմող յիշեսջիք։

## 397

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8409

գրիչ՝ Վարդան
վայր՝ Աղջոց վանք

281բ ...Այլ և աստանաւր յիշեսցուք զերից երանեալ զքաջ հռետոր և բա-
նիբուն զԴանիէլ վարդապետն Սևանեցի, զոր ի վաղուց հետէ շարժեալ ի
հոգւոյն սրբոյ եդ ի մտի իւրում ըստանալ Աւետարան փոքր տափ՝ գեղեց-
կագիր և ոսուգաբան, լինել անջինջ յիշատակ իւր և ծնողաց և ազգակա-
նաց իւրոց։

Զոր և ես՝ Վարդան եպիսկոպոս, մեղապարտ ոգի, անուամբ միայն և
ոչ գործով, վասն խնդրոյ ճգնազգեաց և սրբասնեալ քաջ րաբունոյն Դա-
նիէլի, ըզմեր տկարութիւն մարմնոյ և ըզսուտ ըզբազումն և խաբող աշ-
խարհիս աստի կենացս ի բաց գնելով, ապաւինեցաք յաստուած և ի միա-
282ա ծին Յիսուս Քրիստոս՝ յորդին || աստուծոյ, և առաջնորդութեամբ սուրբ
հոգւոյն և ձեռընտըվութեամբ նորին ըստ իմում կարի գրեցի զսուրբ Աւե-
տարանս ի թվաբերութեանս հայկազեան տաւմարի ՋԻ. (1471), ի հայ-
րապետութեանն տէր Արիստակէսի՝ ի յաթոռ սուրբ էջմիածնի, և ի թա-

* Բնագրում սխալմամբ գրված է՝ «զնկարաւգօզ»։

գաւորութեանն վրաց Բագրատին, և ի ղանութեանն Հասան-բէկին, ի դառն և յանբարի և վրշտաշատ ժամանակի, որ երերուն և տատանեալ կա ազգ քրիստոնէից ի ձեռն այլազգեաց և յանիրաւ պահանջողաց։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի գաւառս Արարագեան, ի ձորս Քեղոյ, ի վանքս Աղջոց, ընդ հովանեաւ սուրբ Ստեփանոսիս, և հրաշափառ Կաթուղիկէիս, և մաւրս լուսոյ սուրբ Աստուածածնիս, և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան։

Ո՜վ, սուրբ ընթերցողք, յիշեցէք առ Քրիստոս զԴանիէլ վարդապետն, որ ստացաւ զսա ի հալալ ընչից և. յարդար վաստակոց իւրոց յիշատակ
282ր իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն իւր || Կարապետ քահանաին և մաւրն իւր Համատրին, և եղբարցն իւրոց Վրթանիսին, Առըստակիսին և Գրիգորէս քահանաին, և տէր Ներսէս եպըսկոպոսին, և ծնողաց և եղբարց նորին, և Եսաի քահանաին, և որդո նորա Գրիգորէս կուսակրաւն աբեղաին, և այլ ամենայն արեան մերձաւորաց նոցա, ամէն։

Եւ որք պատահիք սմա տեսութեամբ, կարդալով կամ աւրինակելով և լսելով [յ]իշեսջիք աղօթս ձեր, և ինքն ողորմածն աստուած առհասարակ ողորմեսցի ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս, ամէն։

Եւ սակաւ գծողս զՈվանեսէս սուսկանուն աբեղա յիշել ի տէր*։

398

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3990

գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Սիւնիք, Արևյիս գիւղ

633 Փառք ամենասուրբ երրորդութեանն, որ ետ կարողութիւն մատնադէտ և իփչուն (˚) գրչի Գրիգորի, որ աւարտեցաք զառատաբուխ շնորհս ողորմութեան՝ սուրբ Աւետարանս փրկչական։ Թվականութեանս Հայոց ԹԻ. (1471), երկիրս Սիւնեաց, գեղս որ կոչի Արևյիս, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորիս։

Այլ ետ գրել զսա Գալուստ քահանայ ի հալալ ինչ[ից] իւրոց [յ]իշատակ իւր, և ծնողաց իւրոց՝ զհայրն իւր զՄարտիրոս, զմայրն Շատնամ, զաւագ եղբայրն զԹայփշայ, զՕղիայ, զկարգաւորն և զհոգևորն Վարդան, Ոնանէս։

634 Արդ, որք աւգտիք ի [ս]մանէ տեսանելով կամ աւրինակել[ով], անմեղադիր լերուք, զկար մեր այս էր։ Զի փափաքանաւք ետ գրել զԱւետարանս Գալուստ քահանայ աշակերտել մերում, ի ժամանակին, որ եսպան Հաս[ան]-պէկն սուլթան Պուստյիքն:

* Ձեռագրի հիմնական մասի գրիչը, ինչպես պարզ է սույն հիշատակարանից, Վարդան եպիսկոպոսն է։ Սակայն, ըստ երևույթին նրան օգնել են այս Ովանէսը և իբրև նկարիչ ու. գրչիկ անվանոգ Աբրահամը։ Վերջինիս հիշատակագրությունները տե՛ս 1498-ի թվաշարքում։

399

ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 57, Մ.Տ.Մ.

*Յետ. ստացող՝* պարոն Սմպատ

217բ *Ես՝ պարոն* Սմպատս *առի զկենսաբեր* Աւետարանս *յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ զհայրն իմ* Ստեփանոս, *մայրն իմ* Մարգարիտ-Խաթուն, *զպապն իմ* Սմպատ, *զմեծ պապն* Իվանիկ...։ *Ի թվ.* ՋԻ. *(1471)։*

400

ՇԱՐԱԿՆՈՑ

Նախավկա 161/11, Ս.Տ.Ա.

*Կազմի նորոգող՝* Ալեք[ս]իանոս
*վայր՝* Տաթև

ա

79բ *Կամաւ ամենակալին աստուծոյ հաւր և որդոյ և հոգոյն սրբոյ ես* Շապան *գնեցի զՇարակնոցս ի հալալ ընչից իմոց ի* Որդանեան *քահանայէ, յիշատակ ինձ և վայելումն որդոյն իմոյ* Շահտանին։ *Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր* զՇապան, *և զկողակիցն իւր* Ափիմէլիք, *և զհայրն իւր* Ասնաւր, *և զմայրն իւր* Կուլմէլիք, *և զամենայն արեան մերձաւորքն...։*

*Արդ, եղև նորոգութիւն կազմի սոր[ա ձեռ]ամբ* Ալէք[ս]իանոսի *արքեպիսկոպոսի, ի սուրբ ուխտս* Եւթա[թէի], *ընդ հովանեաւ սուրբ Առաքելոյս, ի յառաջնորդ[ութեան]* Շմաւոն *վարդապետի և* Ստեփանոս *արքեպիսկոպոսի, և ի փակակա[լու]թեան արի և քաջ* Ովանէս *կրաւնաւորի, ի թո[ական]ութեանս Հայոց* ՋԻ. *(1471)։*

401

ԱՒԵՏԱՐԱՆ

ИВ АН В—82

*գրիչ՝* Մաթէոս
*վայր՝* Մեղուանց վանք

*...Զօր և տեսեալ զսորայսն անճառ փրկագործութեան խորհուրդ բարեմիտ և սրբահաւատ կինս այս* Անթառան, *դուստր* Թադէոս *քահանային, ոչ ունելով մարմնաւոր զաւակ ի վերայ երկրի, այլ ստացաւ զսուրբ Աւետարանս յիշատակ... հոգւոյ իւրոյ, և բարի ծնաւղացն իւր՝ հաւր* Թադէոս *քահանային և մաւրն իւր* Խիկարին, *և եղբաւրն իւր* Սանակ *սարկաւագին, և հանիկին* Խոնդքարին, *և որդոյ նորին* Յոհանիսին, *և կենակցին իւրոյ* Հովադեղին *և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և ննջեցելոց, և մեղաց թողութիւն խնդրեն ի Քրիստոսէ։*

Եւ արդ, ես՝ ...Մաքէոս մեղուցեալ գրիչս..., գծագրեցի զսա մեղսամած մատամբ իմով ի յաստուածաբնակ վանս, որ կոչի Մեղուանց վանք, ընդ հովանեաւ հրաշափառ Կաթողիկէիս, որ յանուն լուսոյ մաւրս սուրբ Աստուածածնիս, և [ամենա]կով սուրբ Յարութեանս, և վարդապետաց գերեզմանացս, և ամենայն սրբոցս, որ աստ հաւաքեալ կան. ի հայրապետութեան տեառն տէր Ռստակիսի՝ ի յաթոռ սուրբ Էջմիածնի, ի թուականութեանս Հայոց ՋԻ. (1471)։

Եւ արդ, յերես անկեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր հարք և եղբարք յիշել և զիմ անարժանութիւնս... և զուսուցիչն մեր զտէր Յոհանէս ամենայն սրբութեանց վարպետ, և քոյրն իմ զՂատերես մահդասին, որ բազում աշխատանօք ծառայեաց մեզ...։

Աստուած վայելել տացէ զսուրբ Աւետարանս Թադէոս քահանային, որ է թուխ երէց, և որդոյ նորին Սահակ սարկաւագին, և միւս զաւակին Դաւթին, և Քրիստոսի փառք։

# 402

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3756

վայր՝ Անգեղակաւթ գեղաքաղաք

161 Ո՞վ սուրբ ընթերցողք և լսաւղք սուրբ Աւետարանիս, յիշեցէք զՇմաւոն բաբունապետն և զտէր Ստեփանոս արհեպիսկոպոս Սիւնեաց նահանգէ, որ ետ զսուրբ Աւետարանս ի գեղաքաղաքն Անկեղակաւթ, ի սուրբ եկեղեցին Սարգիս նահատակն։ Արդ, եթէ ոք հանել ջանայ զսուրբ Աւետարանս ի դրանէ սուրբ եկեղեցոյս՝ ի մերոց կամ յաւտարաց, հանէ զնա Քրիստոս աստուած ի խաւարն արտաքին, և մասն և բաժին զնոցայն առնու, որ զտէրն ի խաչ հանին, և ընդ նոսա դասակցի, ամէն, եղիցի, եղիցի։

# 403

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 1511

վայր՝ Շնապունեաց-ձոր, Կուքի գիւղ

667բ ...Արդ, այս Տանացոյց կարգեալ բովանդակ տարոյ աշխատութեամբ տէր Իսրայէլի Խաչենեցոյ եպիսկոպոսի, հրամանաւ Վանական վարդապետի, ի խնդրոյ Ջալալ-Դոլին՝ տեառն Խաչենոյ և տէր Գրիգորի եպիսկոպոսի, որք աղաչեցին զտէր Իսրայէլ եպիսկոպոսն, հայեցեալ ի կորովութիւն մտաց նորա և ի ժուժկալութիւն բարուցն։ Եւ նա յանձին կալաւ և շանս եդ գտանել զաւր նահատակութեան սրբոցն, որ գրեալ կայ ի լիակատար պատմութիւնն, համառօտելով նմա զսքանչելի կատարումն սրբոցն, և եդ ընդ այլ կարգեալ Յայսմաւուրսն, զոր կարգ ամսոցն հայիւ և հոռոմիւ միաշունչ եղեալ անսղալ զտարին կատարեն։

Բայց ոմանք յանգէտս եղեալ [հակառ]ակեն այսպիսի գեղեց[իկ և

*սքանչելի ընթեցո]ւածոց, որ ապըստապրէ զլսելիս մեր զարհուրեցուցանէ և դողումն ցաւաղին տայ անձանց մերոց։*

*Եւ արդ, եթէ այնպիսեացն է արքայութիւնն երկնից, ապա մեզ զի՞նչ լինի՝ ծուլիցս և հեղգացելոցս։ Այլ միայն յայս ապաւինեալ յառաջ ընթանալ յաւժար սրտիւ, և առնել զյիշատակ սրբոցն և բարեխօս ունել առ աստուած, զի յաշտեսցի ընդ մեզ, և բարձցէ յաշխարհէ զպատուհաս մեղաց մերոց, և արժանի արասցէ սրբոցն փառաց հասանել ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որում փառք յաւիտեանս ամէն։*

*Ի թվարերութեանս Հայոց ի ՋԻ. (1471) թուականին գրեցաւ գիրքս սոսկացուցիչ ի ձորս* Ճապուռեաց, *ի գեւղս որ կոչի* Կուբի, *ընդ հովանեաւ սուրբ Հաղարաբիւրացս, և սուրբ կաթուղիկէիցս՝ սուրբ Աստուածածնի և սուրբ Ստեփաննոսի, և գեղամիչի սուրբ Գրիգորիս, և սուրբ Նշանիս, և այլ միահամուռ Վարդանանց սուրբ նահատակացս, ի հայրապետութեան տեառն* Ռստակիսի, *և յաշխարհակալութեանն* Հասան-բակին, *որ յաղթեաց* Ջհանշային, *և եկեալ ի դաշտն* Խօեայ *և փախըստական արար* զՀասան-Ալի, *և երթեալ ի* Ղարապաղն *և անդ ես զՊարսկաց բռնաւորն զզուլտան///**

## 404

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 3854**

*գրիչ՝* Յակոբ
*վայր՝* Շարվանոյ երկիր,
Սաւկուբլու գիւղ

**ա**

*Փառք... որ ետ կարողութիւն տկար ոգոյ մեղսաներկ և մատնադեդ անձին* Յակոբի *սուտանուն երիցի ելանել յաւարտ իրիս։*

308ր *Արդ, եղև գրաւ գրչութեան սորա ի թվ. Հայոց ՋԻ. (1471), || ի յերկիրս* Շարվանոյ, *ի գեւղս* Սաւկուբլու, *ի հայրապետութեան* Աղուանից *տեառն* Թումայի, *և ի ղանութեանն* Շէրւանշանի՝ *որդոյ* Խալիլ-պէկի, *ի խնդրոյ եղբաւրս մերում* Աստուածատուր *երիցին, որ ըստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց՝ յիշատակ իւր, և ծնողաց իւրոց՝ հաւրն** և մաւրն**, և որդոցն իւր**, և կողակցին իւրոյ**, և ամենայն արեան մերձաւորացն իւրոց՝ կենդանեաց և որք փոխեցեալ են աստեացս ի յանանց կեանսն։*

*Արդ, աղաչեմ զամենեսեանդ, որք հանդիպիք սմա տեսութեամբ [և] կամ*
309ա *գաղափար առնելով, յիշե||ցէք ի մաքրափայլ և ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր զստացող սորա զտէր* Աստուածատուրն *և զվերոյգրեալքդ ի սմա։ Ընդ նոսին և զհաւրքոյրն իմ* զԽոնգշա *ապաշխարողն, այլ և զմիարանքս առհասարակ և որք մասն ինչ ումին ի սմա երախտիս։ Ընդ նոսին և զեզ-*

---

* *Շարունակությունը չի պահպանվել։ Տողը կարելի է լրացնել այսպես՝ «զսուլտան [Բուսաիտն եազան]»։*

** *Անունների լրացման համար տեղ է բաց թողնված։*

կեալ գծող սորա վՅակոբս՝ գծօղս և զընկղմեալս ի մէջ մեղաց, և զծնաւղսըն իմ յիշել ի տէր, և աստուած յիշողացդ զմեզ ի բարի և յիշեցելոցս ողորմելի Քրիստոս զԹաձն ողորմեսցի այժմ և յաւուրն աներեկի, ամէն, եղիցի, եղիցի։

Այլ և խոշորութեան և անարհեստ գրչութեան սորա անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր։

**Բ**

281ա Ողորմեա ստացողի դրոցս տէր Աստուածատուրին և ծնողացն իւր բարի և զաւակացն և ամենայն արեան մերձաւորացն իւր։

Այլ և գծողիս անպիտանի
Մեղաւք լցեալ յոյժ աղտեղի
Սուտ անուանեալ քահանայի,
Որ և Յակոբ վերակոչի,
Եւ ծնողացն իմ Ջանիպէկի և Մամխաթունի,
Եւ որ ի սմայ մասն ինչ ունի։
Քրիստոս աստուած առհասարակ ողորմեսցի
Յիշողացդ զմեզ ի բարի
Եւ յիշելոցս, ամէնայնի, ամէն, եղիցի, եղիցի*։

## 405

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 2846**

գրիչ՝ Վարդան

305ա ... Բարեպաշտ տանուտէրն Արթուխշէն և կենակիցն իւր Դովլաթն... յաշխարհիս լալոտ աչօք և տրտում կացին ի վերայ իւրեանց զաւակացն՝ սրտարէկ և սրտահառաչ, զի իբրև զ[Յ]ոբայ փորձանք եկն ի վերայ սոցա, որ զրկեցան յորդոց և ի դստերացն, վասն զի զմին որդին ի ճանապարհ սպանեցին, և մինն ի տունն մեռաւ։ Եւ մին որբ մնաց սոցա մխիթար, և նա էլ զարգացաւ և եհաս մահն և զնա միջաբեկեաց, և սոքա մնացին ողորմ ու լալի ի վերայ աշխարհի։ Եւ յետոյ ետուն գրել զսուրբ Աւետարանս յիշատակ իւրեանցն և իւրեանց զաւակացն և իւրեանց ծնողացն, և դուք հանդիպողք սորա՝ ընթերցողք և լսողք, լի բերանով աս-
305բ տուած-ող||որմի ասացէք Արթուխշին և Դովլաթին, և որդոցն՝ Պարոնշին, և Քարիմշին, և այլ տղայոցն, և որբիկ Մուրադին, և նորին մօրն Խաթուն-Փաշին, և Արթուխշի հօրն՝ Քարիմշին, և մօրն՝ Մարթա-Խաթունին, և եղբօրն Դովլաթշին, և Դովլաթի հօրն Էվատշին, և Աւագ-Տիկնոջն, և քեռցըն՝ Դիլշատին և Խայխաթունին, և այլ ամենայն արեան մերձաւորացն սերտ սիրով աստուած ողորմի ասացէք...։

* 310ա—բ էջերում կա անվարժ ձեռագրով գրված և դժվարընթեռնելի ընտանեկան հիշատակարան. «Մաթէոս ծնաւ թվկ. ՋԻԷ. (1478)։ Յովսէփ ի մօրէ ծնաւ թվկ. ՋԺ. (1461), Սարգիս ի մօրէ ծնաւ թվկ. ՋԻԱ. (1472). աւրհնեալ աստուած յաւիտեանս, ամէն.

Յովսէփին մայրն ի Քրիստոս փոխեցաւ թվ. ՋԼԵ. (1486) տանուտէր կչիս, արանց ամսոյ Լ. (30), աստուած ողորմի իւր հոգոյն»։

*Եւ արդ ես՝ անարժան դծողս* Վարդան *սուտանուն էրէց, տեսի զսէր և*
300ա *զփափաք սրտա, յանձն առի զսուրբ Աւետարանս, և || ողորմութեամբն*
*աստուծոյ կատարեցի ի քաղաքս որ կոչի*, ընդ հովանեաւ սուրբ Աստուա-*
*ծածնին և սուրբ Վարդան զօրավարին, ի թուականութեանս Հայոց ՋԻ.*
*(1471), ի հայրապետութեանն տեառն* Ստեփանոսի *և* Արիստակիսի *Բ. կա-*
*թողիկոսացն, ի թագաւորութեանն* Հասան-բէկին, *որ եսպան* զՋհանշէն
*և տիրեց ուլոր աշխարհիս։ Եւ դուք՝ հարք և եղբարք, յիշեցէք ի Քրիստոս*
*զվերոյ յիշեցեալն* զԱրթուխշէն, *և զհօրեղբայրն* զՍուլթանշէն, *և զնորին*
*որդին* զԱւետիսն, *և զքոյրն* զՈլուս-խաթունն, *և զայլ ամենայն արեան*
*մերձաւորք սորա, և զիս՝ զմեղապարտ գծողս՝* զՎարդան *սուտանուն*
*էրէց, և զիմ ծնօղսն, և զիմ եղբարքն, և զորդիքն իմ՝* զՆիկողայոս *քահա-*
*նայն, որ* զՅոհան *գլուխն նա գրեաց, և զմիւս որդին* զՅովաննէսն, *որ երի-*
*տասարդ հասակաւ ի Քրիստոս փոխեցաւ, և զայլ ամենայն արեան*
300բ *մերձաւորքն իմ, և զայնոսիկ, որ ի վերայ մեր երախ||տիք ունին...։*
*Դարձեալ, աստուած-ողորմի ասացէք* Արթուխշի *քեռոյն՝* Ստեփանո-
սին, *և որդոյն* Մխիթարին, *և աստուած ձեզ ողորմի, ամէն։*

## 406

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 5401*

*գրիչ՝* Յովաննէս

ա

*Փառք... որ ետ կարողութիւն ակարութեան իմոյ հասանել յաւարտ սուրբ Աւետարանիս ի դառն և ի վըշալից ժամանակիս, զի խիստ ուրախութեամբ սկսայ և տրտմութեամբ աւարտեցի։*

244բ *Արդ, որք հանդիպիք սմայ կարդալով կամ տեսանելով, լի բերանով*
*աստուած-ողորմի ասացէք ստացողի սուրբ Աւետարանիս* Փաշին, *և*
Թօղանին, *և մաւրն* Շամշայ-խաթունին, *և եղբօրն* Յովանիսին *և* Թաւա-
fալին, *և հաւրեղբօրն* Առաfել *կրօնաւորին, և քուերցն* Սուլտանին *և*
Հռիփսիմին, *և որդոցն* Ազնաւրին, Վարդանիսին *և* Սուfիասին, *և այլ*
*ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեաց և հանգուցելոցն, և* զՍտե-
փանոսն, *և զորդին իւր* զԹումա *կրօնաւորն, և զայլ ամենայն արեան*
*մերձաւորս...։*

*Ընդ նոսին և ինձ՝ անարժան գծողիս մեղաց թողութիւն խնդրեցէք, և իմ ծնօղացն՝ հաւրն իմոյ* Մէլfէսէթ *քահանայի և մօրն իմոյ* Խաթուն-Մէլէfի, *և եղբաւրն իմոյ* Մէլfէսէթ *քահանայի, և* Կարապետ *քահանայի, և* Մկրտիչ *սարկաւագի՝ տարաժամ փոխեցելոյն ի Քրիստոս, և եթող մեզ սուք անմխիթար, զի եկին ազգն անիծեալ և ժանդաբարոյ ի գեօղն* Շատւան, *և զաղայ էրին, և է. (7) հոգի սպանեցին։ Ո՜հ, ո՜հ, զողորմելի մահս, այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։*

* *Քաղաքի անունը չի գրված։ «Կոչի» բառից հետո, տողի վրա կա միայն մեկ կամ երկու տառի տեղ։ Նկատվում է ինչ որ տառի («չ»*)հետք, որով սակայն որևէ քաղաքի անուն չի ստացվում։*

245ա ... Գրեցաւ սուրբ Աւետարանս ընդ հովանեաւ սուրբ Թումայի առաքելս և սուրբ Գէորգեա զաւրավարի, ձեռամբ յոգնամեղ գրչի Յովանիսի, որ միայն զանունս ունիմ և ոչ զգործս բարի, զի անհաստատ եմ ի գործս բարութեանն։ Գրեցաւ ի թվականիս ՋԻ. (1471)...։

Ով ոք որ ղպահա[յա]ն գրոցս կարէ, թէ այս է, ու թէ այլ՝ նայ ինքն շնչի ի դպրութենէ կենաց. գիրքն 'ւ Աւետարանն աստուած անուանի, չէ պարտ զպահարան գրոցն կտրել, շատ թերի 'ւ անհաւատ մարդ կենէ, աղաչեմ զձեզ՝ մի առնէք զայդ։ Աստուած զայն մարգն աւրհնէ, որ զայն բան չառնէ։

Բ

245բ Դարձեալ աղա||չեմ զձեզ, ո՛վ դասք լուսերամից, կրկին յիշեցէք ի Քրիստոս զԹումայ կրօնաւորն, և զծնօղսն իւր՝ զհայրն իւր զՍտեփանոս, որ սրախողխոխ եղեալ կատարեցաւ ի յանաւրինաց, և զմայրն իւր զԴուխտար, և զեղբարքն՝ զԱւետիս և զՅովանէս, և զհարսներն՝ զՇամշայ և զԽաթուն-Մէլէք, և զորդիքն իւրեանց՝ զէլէքսան, զՅոհանէս, զՍտեփանոս և զԳասպար, և զայլսն ամենայն, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ ի միւսանգամ գալըստեանն իւրում, ամէն*։

## 407

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6767

գրիչ՝ Մէլքիսէդ
վայր՝ Խառաբաստոյ վանք

ա

304ա ... Եւ արդ, ես՝ յետինս ի գրչաց և. ունայնս յամենայն հոգեւոր բարեաց, անարժան այսմ շնորհի և աստիճանի, սոսկանուն քահանայ Մելքիսեդ, հարկեալ ի վեհափառ հրամանէ մեծի տէր Գրիգորու, ձեռն ի գործ արկի մեծաւ տաժանմամբ և մեղսամակարթ մատամբ աւարտեցի։ Եւ յուսամ ի մարդասիրութիւնն աստուծոյ սրբանուէր աղաւթիւք ձերովք, ղի իմ բազում մեղացն և անթիւ յանցանացն թողութիւն արասցէ, ամէն։

304բ Եւ արդ, գրեցաւ սուրբ || Աւետարանս ի դեւղս Առեստ, և աւարտեցաւ ի սուրբ անապատս Խառաբաստայ վանք, ընդ հովանեաւ Արծըւաբեր սուրբ Աստուածածնիս, ի հայրապետութեան տեառն Աբստակիսի, և յառաջնորդութիւն սուրբ ուխտիս Յովանէս քաջ վարդապետի և տէր Յովանէս արքեպիսկոպոսի, և ի բռնակալութեանն Ուզուն-Հասանին, ի մեծ թվ. ՋԻ. (1471)։

Արդ, որք ճաշակէք յաստուածային սեղանոյս կամ տեսութեամբ, ընթերցմամբ և կամ աւրինակելով, յիշեսջիք յազաւթս ձեր զստացաւղ սորայ զտէր Գրիգոր Առընջեցի կազմող աբեղայն, և զհարազատ եղբայրն զՄկրտիչ, և զեղբօրորդին զտէր Յոհանէս կրօնաւորն, և զամենայն վերոյգրեալսն, և բոլոր սրտիւ աստուած-ողորմի ասացէք։ Ընդ նոսին և

* Այս Բ. հիշատակարանը հնագրական տվյալներով գրված պետք է լինի ԺԶ. դարում։

ղանպիտան գրիչս զՄելքիսեդ սուտանուն քահանայ, և զծնաւղսն իմ զԿարապետ և զԽոնդ-խաթունն, և զեղբայրն Լմին-բէգն, նաև զհոգեւոր նրախտաւորքն մեր և զմարմնաւոր, և զտէր Իգնատիոս քաջ քարտուղարն, որ զսակաւ գիրս ուսոյց մեզ, յիշեցէք ի տէր զամենեսեան և աստուած զձեզ յիշէ, ամէն։

306ա Դարձեալ կրկին անգամ յիշեցէք ի Քրիստոս աստուած զտէր Գրիգորն, զտէր Յոհանէսն*, և զտէր Կարապետն, և զեղրաւրորդիքն իւր զՄիրանշէն, զՇահմասուրն, և զքոյրն իւր զՊստի-խաթունն, և զԻնախշէն, և զՔարիմշէն, և զայլ արեան մերձաւորսն...։

Բ

241բ Զստացող սուրբ Աւետարանիս զտէր Գրիգոր Առընչեցի յիշեցէք ի Քրիստոս, որ յայսմ աւուր վարգ երեր փիլոնաւն ի լի մեզ։

Գ

243ա ...Խնդրեմ ի ձէնջ... ասել աստուած-ողորմի անարժան գծողի սուրբ Աւետարանիս՝ Մելքիսեդի, զի յոյժ մեղաւոր եմ, և աղքատ հոգւով և անմխիթար մարմնով, որ զրկեցայ ի կողակցէն և յորդւոյն, և աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն։

Դ

նկարող՝ Կարապետ

31բ ԶԿարապետ նկարողս յիշեցէք ի Քրիստոս և աստուած զձե[զ յիշէ]**։

408

ԱԻԵՏԱՐԱՆ

ԲՑՎ 271, Խմիշկ գիւղ

գրիչ՝ Յովհաննէս Մանգասարենց
վայր՝ Արճէշ

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուին Հայոց ՋԻ. (1471) ամին, ձեռամբ անարժան Յովհաննէս երիցու, ի քաղաքիս Արճէշ: Վասն որոյ աղաչեմ զձեզ աստուած-ողորմի ասացէք մեղաւորիս, և ուսուցչին իմոյ՝

* 14ա էջի ներքևում նկարված են երկու հոգևորականներ, որոնք ձեռքերը պարզել են վեր, ուր քառակերպյան աթոռի վրա բազմել է Քրիստոսը։ Ամենայն հավանականությամբ այդ նկարի վրա պատկերված են տէր Գրիգորն ու տէր Յոհաննէսը։

** Հատուկ արժեք է ներկայացնում սույն № 6767 ձեռագրի կազմը։ Կազմի երիզներին փակցված են չորս ավետարանիչների սիմվոլները պատկերող արծաթե արծնապատ (էմալապատ) թիթեղներ։ Արծնապատված են նաև կազմի կենտրոնի մեծադիր խաչի չորս կողմերում ամրացված չորս փոքր խաչերը, ինչպես և փակիչների ծաղկաձև հիմքերը։ Չնայած արծնը լավ չի պահպանված, այնուամենայնիվ այժմ էլ պարզ երևում է, որ օգտագործվել են մուգ կապույտ, կանաչ, երկնագույն և կարմիր գույնի արծներ։ Դրանք, անտարակույս, պատրաստված են հայ վարպետի կողմից, որովհետև պատկերներից առաջինում հայերեն տառերով դրված է՝ «ՄԹ.» (Մատթէոս) և «ՅՀն.» (Յովհաննէս)։ Մատենադարանի ձեռագրերի կազմերից մեզ հայտնի են արծնապատ այլ օրինակներ ևս։ Այսպիսով, պարզ է դառնում, որ հայ արծաթագործները միջնադարյան Հայաստանում քաջ ծանոթ են եղել արծնի տեխնիկային։

քաջ րաբունոյն իմոյ Թովմայի, և ծնաւղաց իմոց Մանկասարին և Փաշային, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Արդ, աւարտեցաւ սուրբ Աւետարանս յիշատակ Մերունիս և իւր բարի կենակցին Ուլու-Մէլէքին, և տուաւ ի գիւղն որ կոչի Խժիշկ, ի դուռն սուրբ և հրաշագործ տաճարիս, որ յանուն սրբոյն Ստեփաննոսի նախավըկային, ի հայրապետութեան աճարկու և հրաշատես հայրապետիս մեր տեառն Ստեփաննոսի, զոր տէր աստուած իբրև զարեգակն պայծառ պահեսցէ, ամէն։ Եւ ի տանուտէրութեան երկրիս և դեղիս աստուածասէր և իմաստուն երիտասարդն պարոն Վաչօն, որդի պարոն Մկրտչին, և քահանայութեան տէր Ստեփաննոսին, և տէր Բարսեղ[ի], և տէր Յովհաննէս[ի], զոր տէր աստուած հաստատ և անսայթակ պահեսցէ։

409

Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Երևան 7782

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Արծկէ

293բ ... Գրեցաւ տէրունեան սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԻ. (1471) ամին, ի քաղաքիս որ կոչի Արծկէ, ձեռամբ անարժանիս Յովաննէս երիցու, վասն որոյ աղաչեմ աստուած-ողորմի ասացէք ան[ար]ժանիս և ծնօղաց իմոց Յակոբ քահանայի, և աստուած ձեզ ամենեցուն ողորմեսցի, ամէն։

410

Մ Ա Շ Տ Ո Ց

Երևան 4515, էջ 201—202 (Դ. Փիրզ. Նշխարք պատ. հայոց, Ի.)

գրիչ՝ Յակոբ
վայր՝ Արծկէ

... Աւարտեցաւ տառս որ կոչի Մաշտոց ձեռամբ Յակոբ սարկաւագի, յամի ՋԻ. (1471), ի քաղաքիս Արծկէ, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս, որ յանուն սրբուհւոյ Աստուածածնին, և սուրբ Ստեփաննոսի նախավկայիս։

Եւ զիս՝ զմեղուցեալ դրիչ զՅակոբ յիշեցէք ի Քրիստոս, և զծնողսն իմ զՅովհաննէս քահանայ և զՄարթայ...:

411

Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Երևան 2632

գրիչ՝ Թումայ
վայր՝ Աղթամար

320ա ... Եւ արդ, ես... սուտանուն քահանայ Թումայ... կատարեցի զսա մեղսամած մատամբ իմով յաստուածաբնակ կղզիս Աղթամար, ընդ

*հովաննեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս, ի հայրապետու-
թեան տեառն* Ստեփանոսի, *ի թուականիս Հայոց ԹԺ. ու Ի. (1471)...։*

320բ *... Յիշեսջիք յերկնագնաց յաղօթս ձեր... ստացող սուրբ Աւետարա-
նիս* Բառեցի Մարտիրոսին, *և ծնաւղացն իւր* Աւետիսին, *և որդոյն* Աւե-
տին, *և կենակցին իւր* Մարգրտին, *և որդոյն* Ներսէսին... *և զայլ ամե-
նայն ազգատոհմսն նոցա և զարեան մերձաւորսն...։*

321ա *... Ընդ նոսին և զամենամեղ* Թումայ *գծագրող սորա, և զծնօղսն իմ՝
զ*Գրիգոր *քահանայ, որ ուսոյց մեզ զարուեստ գրչութեանս, և զ*Քրման-
Խարուն, *և զկենակիցն մեր, և զորդին իմ* զԽաչատուր, *որ յայսմ ամի
փոխեցաւ առ Քրիստոս և եթող ինձ սուգ անմխիթարելի և վէր անողջա-
նալի և ցաւք անբժշկելի...։*

*Եւ արդ, ես՝* Բառեցի Մարտիրոս *և որդին իմ տուաք զսուրբ Աւետա-
րանս յաստուածապահ դեօղն ի* Յիր, *ի դուռն Տիեզերաց սուրբ Աստուա-
ծածնին, յիշատակ մեզ և ծնօղաց մերոց. և մի ոք իշխեսցէ հեռացուցա-
321բ նել զսա ի դրանէ սուրբ Աստուածածնէն Տիեզերաց կամ || ծախելով,
կամ գրաւելով, կամ այլ ինչ աղագաւ, ոչ ի մերոց և ոչ յաւտարաց, ոչ ի
կարգաւորաց և ոչ յաշխարհականաց. և եթէ ոք յանդգնի և հեռացուցանէ՝
նա զանէծքն զաւձին և զԿայենին ժառանգեսցէ, և զմասն զՅուդային և
զայլ խաչահանուացն առցէ ինքն և այլ կամակիցքն նորա, հանդերձ ծնօ-
ղօք և ազգականօք, ամէն։*

*Այլ և յիշեցէք ի Քրիստոս ղհամշիրաք եղբարն մեր զ*Կարապետ *քա-
հանայ, որ աշխատեցաւ ի ծաղկել սուրբ Աւետարանիս. տէր աստուած
տացէ վարձս ըստ վաստակոց իւրոց՝ զերկնից արքայութիւն և զանբաւ
բարութիւն ամէն...։*

## 412
## ԱՒԵՏԱՐԱՆ

***Երևան 6359***

*գրիչ՝* Սարգիս
*վայր՝* Խաչնայձորոյ ս. Ստեփանոս

233բ *Փառք... որ արժանի արար զնեխեալ մեղաւք և զանարհեստ և զա-
նարժան* Սարգիս *գրիչ սուտանուն կրաւնաւոր հասանել ի վերջին գիծ
սուրբ Աւետարանիս, ի թուաբերութեան հայկազան տումարիս ՋԻ. (1471),
ի սուրբ և ի գերամաքուր յանապատիս* Խաչնայձորոյ *սուրբ Ստեփանոսիս,
և սուրբ Սարգսիս, և այլ բազում սրբոց, որ աստ կան հաւաքեալ։*

*Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զընթերձողքդ սուրբ Աւետարանիս և
զհանդիպողք՝ յիշել ի մաքրափայլ յաղաւթս զիս՝ զանարժան գրիչ* Սար-
գիս *սուտանուն եպիսկոպոս և զծնօղսն իմ, զի բազում աշխատութեամբ
և ջանիւ գծագրեցի զսուրբ Աւետարանս...։*

234ա *...* Մաղագիայ *միայնակեցն և եղբայրն իւր* Ազարիա *քահանայն
զսուրբ Աւետարանս գրել տուին ի հալալ ընչից իւրեանց, յիշատակ իւրե-
անց, և ծնողաց՝ հաւրն իւրեանց* քահանային և մաւր*, և այլ ամենայն
արեան մերձաւորաց...։*

* *Անունների լրացման համար տեղ է բաց թողնված։*

## 413

### ԱՒԵՏԱՐԱՆ ՅՈՎՀԱՆՈՒ

*Երևան 6273, էջ 312, (Փիրղ. Նօտ.) Վան՝ Հայկավանք*

*գրիչ՝* Յակոբ
*վայր՝* Խուլայ վանք

*...Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զքրիստոսաւանդ սուրբ մատեանս ի սուրբ անապատս* Խուլայ, *ընդ հովանեաւ սուրբ Գէորգայ և սուրբ Աստուածածնին և սուրբ Սարգսի զօրավարին, ձեռամբ մակոնատ կածնիս* Յակոբ *անուամբ միայն կրօնաւորի, ի խընդրոյ* Մովսէս *դեռաբոյս կրօնաւորի...։ Արդ, գրեցաւ ի Թուին Հայոց ՋԻ. (1471), ի վերադիտողութիւն* սուրբ անապատացս Խուլայ և Աբդըլմսիհայ՝ երիցս երանեալ քաջ հռետորի* Գրիգոր *վարդապետի և այլ ամենայն միաբանիցն։*

## 414

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6379*

*գրիչ՝* Մելքիսէթ
*վայր՝* Բաբերդ

279բ *... Գրեցաւ սուրբ Աւետարանս ի Թուիս Հայոց ՋԻ. (1471), ի յանառ դղեակս ի* Բաբերդու *քաղաքս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Հրեշտակապետի և այլ [սրբութեանցս, որ աստ] կան հաւաքեալ, [ձեռ]ամբ անարհեստ գրչի* Մելքիսէթ *սուտանուն իրիցու։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան որք ընթեռնույք զսա յիշեսջ[իք] զամենայն երախտաւորսն և զուսուցիչքն իմ, և մեղաց թողութիւն խնդրեցէք ինձ և իմոցն ամենայնի. և աստուած ձեզ ողորմեսցի և այնոցիկ, որ ի լսելն զամէնն ասեն։*

280ա *... Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս, յիշեսջիք ի սուրբ և ի մաքրափայլ աղաւթս* զՇնոֆոր-Խաթունն, *որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրեանց, յիշատակ իւր, և կողակցին* Աստուածատուրին, *և իւր զաւակին* Սատաղին, *և ազգականացն իւր* Ջաֆարէ *և* Վարդին, *և ամենայն արեան մերձաւորաց...։*

*Այլ և եդաւ սայ ի դռ[ոն] Գէորգեայ զաւրավարին, որ է ի դղեակն, որ ասի* Յուշապկա. *ի ձեռն* Կարապետ *քահանաին և* Գէորգ *քահանաին և///*

---

* *Գ. Փիրղալեմյանի ընդօրինակության մեջ գրված է «վերադիտողի», կարծում ենք, որ բնագրում եղել է «Վերադիտողուի.» (հապավված)։*

## 415

### ՄԱՇՏՈՑ

*Երուսաղէմ 1286 Մ.Տ.Մ.*

*գրիչ՝* Ավետիք
*վայր՝* Աւագ վանք

*Գրեալ ի Թուին ՋԻ. (1471), ի սուրբ անապատն* Աւագ *վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Կարապետի, ի խնդրոյ* Սարգիս *արքեպիսկոպոսի, ձեռամբ* Ավետիք *կրօնաւորի։*

## 416

### ՃԱՇՈՑ

*Բ. Կիւլէսէրեան, Ցուցակ Անկիւրիոյ, № 28, սյուն. 167—169*

*գրիչ՝* Թորոս Երուսաղեմացի
*վայր՝* Սիւրի-Հիսար Անկիրիոյ

ա

931բ – 932ա *Արդ, ի յոքունց ի մարդկայնոցս ազդէ, ըստ բազմապիսի բարուցն և ախորժակացն իւրեանց թողին յիշատակ յաշխարհիս յապագա ժամանակս յազգս որ ծնելոցն իցեն։ Ոմանք ըստ ճգնութեան մեծութեան և փառացն փարթամութեան, շինուածս մեծաշահս և գումարս մարտի բազմահանդէս պատերազմաց։ Վասն որոյ և ես նուաստ և անմիտս և անարհեստ գրիչս* Թորոս *եպիսկոպոս* Երուսաղեմացիս *ձեռն արկի ի գործս, որ ի վեր է քան զկար իմ, ի ժամանակս ծերութեան, տկարացեալ անձամբ և պակասեալ ի լուսոյ, և յաւտարաբնակ տեղոջ։*

*Արդ, եղև գրաւ գրչութեան սորա ի թվականութեանս Հայոց ՋԻ. (1471), նոյեմբեր ԻԴ. (24), ի յաստուածապահ քաղաքս* Սիվրասարն, *ընդ հովանեաւ սուրբ աստուածաբնակ տաճարիս սուրբ Աստուածածնիս և այլ սուրբ տաճարացս, զոր Քրիստոս աստուած անշարժ պահեսցէ մինչև ի սուրբ և ի միւսանգամ գալուստն իւր. ընդ որս և զպատուելի քահանայք և զքրիստոսասէր ժողովուրդ քաղաքիս այս պահեսցէ Քրիստոս յամենայն փորձանաց հոգոյ և մարմնոյ, որ բազում սիրով և պատուով ընկալան զմեզ, որոց Քրիստոս արասցէ փոխարէն յիւր սուրբ արքայութեանն, ամէն։*

*Արդ, գրեցաւ ի խնդրոյ աստուածասէր և հոգևոր* [Ս]արգսին, *որ ըստացաւ ղգիրգս յիշատակ հոգո իւրոյ և եդ ի սուրբ Աստուածածինն*, ձեռամբ բազմամեղ և փցուն գրչի* Թորոս *եպիսկոպոս* Երուսաղեմացոյ։

*Յերեսս անկեալ աղաչեմ յիշել զսուրբ հանդիպողսդ և զկարդացողս յիշել յազաւթս և մեղաց թողութեան խնդրել ինձ, և ծնողաց իմոց՝ հաւրն իմոյ* Աբրահամի *և մաւրն իմոյ* Նուրիաթունի, *և ամենայն արեան մերձաւորաց իմոց* Շահրիեարենց *կոչեցելոց։ Աղաչեմ յիշել և* զՍտեփաննոս Ջամուշն *և զծնաւղս իւր, որ բազում և անչափ աշխատեցաւ հետ մեզ ի*

* *Ստացողի մասին հատվածը գրված է այլ թանաքով ու դրերով։*

գրոցս դրել, և զամենայն պիտոյս դրոցս և զմերն անպակաս հոգաց, զոր Քրիստոս արժանի արասցէ իւր տեսութեանն և անտրտում ուրախութեանն։

Դարձեալ աղաչեմ անմեղադիր լինել սղալանաց և խոշորութեան և անյարմարութեան գրիս, զի ի ժամանակի ծերութեան և տկարութեան գրեցաւ, այլ միով տէր ողորմայիւ յիշել, զի թերևս թողութիւն մեղաց գտից ծովացեալ մեղաց իմոց, զի բազում են քան զաւազ ծովու. զի և դուք յիշեալ լիջիք յամէնողորմ փրկչէն Քրիստոսի։

Յիշեցէք և զպարոն մղտէսի Ղարան, որ զգրոցս զինն շուտով գտաւ և մեզ երեխտաւոր եղև, աստուած ողորմի իւր ծնօղացն, ամէն*։

## Բ

389բ Քրիստոս աստուած, քո սուրբ յարութեամբդ թողութիւն շնորհեա աշխատողի սուրբ մատենիս մեղուցեալ և փցում գրչի Թորոս եպիսկոպոսի Երուսաղեմացոյ, և ծնողաց իմոց՝ հաւրն իմոյ Աբրահամի և մաւրն իմոյ Նուրխաթունի, և հաւրաքեռն իմոյ Խէրխաթունի, և եղբաւրն իմոյ Յոհաննէս սարկաւագի՝ փոխեց[ել]ոյն առ Քրիստոս։ Նաև Ստեփաննոս Զամուշին, որ բազում և անչափ կու աշխատի հետ մեզ, և հատոյ նմա փոխարէն յարքայութեան քում։ Եւս առաւել այնոցիկ, որ մի սրտիւ աստուած ողորմի ասեն, և քեզ փառք յաւիտեանս, ամէն**։

## 417
## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4515, էջ 204 (Ղ. Փիրղ. Նշխարք պատմ. Հայոց, Բ.)

գրիչ՝ Մկրտիչ եպիսկոպոս

...Արդ, յանկ ելեալ կատարեցաւ սուրբ Աւետարանս... ի խանութեան Հասան-բէկին, որ տիրեաց բազում գաւառաց և աշխարհաց, ձեռամբ յոգնամեղ և անարժան գրչի Մկրտիչ եպիսկոպոսի, և թուականիս Հայոց ինն հարիւր և քսան յաւելորդի (1471), ի խնդրոյ բարեմիտ կնոջն Մարեմ կոչեցեալ, յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հօրն Գամիսէ (՞) և մօրն Շահռուլին, և որգւոյ իւր Սպանդիարին...։

Դարձեալ, աղաչեմ յիշեսջիք զմեղապարտ գծողսս զՄկրտիչ եպիսկոպոս, և զուսուցիչն իմ զՅովաննէս կրօնաւոր, և զՅոհաննէս քարտուղարն, և զծնողսն իմ. և որ յիշէ յիշեալ լիցի ի Քրիստոսէ...։

## 418
## ԺԱՄԱԳԻՐՔ

Երևան 4515, էջ 203 (Ղ. Փիրղ. Նշխարք պատմ. Հայոց, Բ.)

նորոգող՝ Կիրակոս

Զվերջին ստացող տետրակիս՝ զարհեպիսկոպոսն տէր Մկրտիչն, որդի խոջայ Շամշատինին և առաջնորդ սուրբ ափտիս, որ է անուամբ Ամե-

---

* Այս պարբերությունը ևս գրված է այլ թանաքով ու գրերով։

** Մանր հիշատակագրություններ Թորոս եպիսկոպոսը թողել է նաև ձեռագրի 295ա, 534ա և 758ա էջերում։

նտփրկիչ, և է ի սպասաւորութիւն և յաշխատութիւն սորա փոյթ և արի, զոր տէր աստուած պահեսցէ հաստատուն իւրով սուրբ կրօնաւորօքն, ամէն։

Արդ, նորոգեցաւ ձեռամբ ամենամեղ և անարժան Կիրակոս եպիսկոպոսի, ի թուականիս ՋԻ. (1471), սեպտեմբերի Ի. (20)...։

## 419

### ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 4515, էջ 201 (Ղ. Փիրղ. Նշխարք պամ. հայոց Բ.)

գրիչ՝ Անդրէաս
վայր՝ Եւդոկիա

...Գրեցաւ եղանակաւոր տառս որ կոչի Գանձատետրս, ձեռամբ անիմաստ գրչի Անդրէաս քահանայի, ի թվ. Հայոց ՋԻ. (1471), ի քաղաքիս Եւդոկիոյ, ի դուռն սրբոյն Ստեփաննոսի նախավկային և սրբոյն Սիմէոնի ///

## 420

### ԱՒԵՏԱՐԱՆ

ՄՑՀ հա. Ա. 23, էջ 59

գրիչ և տէր՝ Թադէոս
վայր՝ ի սահմանս Երուսաղէմի*

475 Գարձեալ ծաներուք, ո՛վ սուրբ եղբարք, որ տուաք յիշատակ հոգոց մերոց զսուրբ Աւետարանս՝ հոգևոր որդոյ մերոյ և աշակերտին իմ տէր Աբրահամ դեռաբուսիկ քահանային Մսրցոյ։ Աստուած ալրհնէ զինքն, զիւր որդիքն, ողորմեսցի Քրիստոս աստուած իւր ննջեցելոց հոգոյն, զի բազում անգամ աշխատեցաւ հետ ի մեզ, ի մարմնաւոր պիտոյիցս ծառայութիւն անելով. և գայ ի յիսանէ փող մ՛ չէ տեսել։ Աստուած հատուցանէ իւր միաանգամ գալըստեանն, ամէն։

Ծաներուք, ո՛վ սուրբ եղբայրք, վկայութեամբ Աբրահամ վարդապետին, և տէր Տաւնականին, և տէր Սողոմոնին, և տէր Հայրապետին, որ տուաք զսուրբ Աւետարանս յիշատակ հոգոց մերոց տէր Աբրահամին, եթէ ոք կամիցի ի դմանէ դաւի անելով կամ գողանալով՝ ըզմասն Յուդայի առցէ և զխաչհանողացն։ Թվականութեանս Հայոց ՋԻ. (1471)։

---

* Հիշատակարանի հեղինակի և վայրի մասին տվյալը քաղում ենք ընչուԹյան հիշատակարանից, որ տեղադրված է 1455-ի Թվաշարքում։

## 421

## ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 3505*

*գրիչ՝* Մելքիսեթ

183բ *Փառք... որ հասոյց զիս ի յաւարտ Գանձարանիս, զոր փափա[գա]-
նաւք սրբագրել երէտ* Ղարաճա Յոհաննէսն, *յիշատակ իւր և ծնաւղաց
իւրոց. որք հանդիպիք և եղանակէք յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զբցում
գրիչս՝ զ*Մելքիսեթս, *և զստացող սորա զ*Ղարաճա Յոհանէսն, *և զծնաւղս
իւր, և աստուած զձեզ յիշէ իւր յարք[այ]ութիւն, ամէն։*
*Գրեցաւ Գանձարանս ի թվիս Հայոց Ջ[Ի]* (1471*)։*

## 422

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Տեղը անհայտ Մ.Տ.Մ.*

*կազմող՝* Յովսէփ

*Ես* Յովսէփ *եպիսկոպոս կազմեցի Աւետարանս ի թւին Հայոց ՋԻ.
(1471)։ Ով կարդայք՝ ի սուրբ յաղաւթս ձեր յիշեցէք և աստուած ողորմի
ասացէք, և որք յիշէքդ յիշեալ լիջիք և դուք ի Քրիստոսէ աստուծոյ
մերոյ, ամէն։*

## 423

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Ն. Ջուղա 326, Մ.Տ.Մ.*

*Արդ, գրեցաւ ի թվ. Հայոց ՋԻ. (1471), ի հայրապետութեան տէր*
Արիստակէսի, *և յետոյ նստեալ յաթոռ սուրբ Լուսաւորչին՝ տէր* Գրիգոր
*բաքոմապետն ամենայն Հայոց, և զեղբայրն իւր* Շահապ, *որ յանկար-
ծամահ եղև։*

---

* *Տառնավոր թիվը ջնջված է. Թվականի վրա դրված պատվոնշանի երկարությու-
նից կարելի է դատել, որ կամ տառնավորին հաջորդել է որևէ միավոր թիվ (այդ դեպ-
քում ձեռագրի գրության տարեթիվը կարող է ընկնել 1472—1480 թթ. միջև), կամ Ի.
(20)-ի փոխարեն տառնավորը եղել է Խ. (40). վերջին դեպքում ձեռագիրը գրված պետք
է լինի 1491 թվականին։*





424

ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 4515, էջ 205—208

(Ղ. Փիրղ. Նշխարք պատմ. հայոց, Բ.)

գրիչ՝ Մովսէս Արծկեցի

ա

...Արդ, ես նըւաստս յամենեսին,
Որ զվեց տառիւ անունս կոչին՝
Մենն առաջին և Սէն յետին,
Որ համարով վերաբերին
Ութն հարիւր ընդ եօթնեկին
'Ի եօթըն հազար բոլորովին*։
Արդ, ես՝ Մովսէս հոգիս մըթին
Յինըն հարիւր Հայոց թըւին
'Ի ի քսան մէկն** յաւելածին (1472)
Գրեցի զգանձս աստուածային
Ի յԱրծկէ լաւ քաղաքին,
Ընդ հովանեաւ Աստուածածնին,
Պատերազմի սուրբ Նշանին,
Սքանչելագործ զօրեղ խաչին.
Ի ժամանակս հայրապետին
Արիստակէս էջմիածնին
Եւ Ստեփաննոս Աղթամարին,
Սքանչելագործի աթոռին՝
Եպիսկոպոս Ստեփաննոսին։
Մեծ սուգ եղև իմ ծնողին՝
Խաւնծայ տիկնոջ հոգեկանին,
Որ էր խոցեալ սիրտըն խորին՝
Վիրօք սպեաց բազմադիմին.
Զի ի Հայոց մեծի թըվին
Յինն հարիւր և տասն և ինն***
Մեծ դառնութիւն եհաս նմին,
Քանզի մեռաւ սիրում որդին։
Սուգ ոչ միայն էր ծնողին,

* «Մովսէս» անվան տառանիշերի թվական արժեքների գումարը, իրոք հավասար է 7807-ի (Մ=200+Ո=600+Վ=3000+Ս=2030+Է=7+Ս=2000=7807)։

** Բնագրում՝ «ԻԱ.»։

*** Բնագրում՝ «յՋ և ԺԹ.»։

*Այլ որոց զնա տեսեալ էին.*
*Եւ զի անկարք էր ի մարմին՝*
*Հոգովն ի կարգ կարգաւորին,*
*Ի մեռանել Միրանշային*
*Ամ մի և ութ ամիս անցին՝*
*Մեռաւ իմ մայրն՝ ընդ կողակցին,*
*Որբերն անկան ի փողոցին.*
*Աչօք իմովք այս տեսանին՝*
*Սաստիկ կսկիծըս դառնագին,*
*Զի Կարապետն ընդ Մկրտչին,*
*Եւ Յովանէսն ընդ Ղարիպշին,*
*Մեծ Հայր նոցին ծեր մուղդասին՝*
*Որբապահակըն խըղճադին՝*
*Եղև անարգ յաչս ամենին,*
*Համ ընդ Թոռումն ի միասին.*
*Ըզհանդիպողք տառի սըմին,*
*Միշտ աղաչեմ կողկողագին*
*Վերագրելոցս բոլորովին*
*Ասել զամէնն և ողորմին*
*Ինձ՝ Մովսէսիս ծոյլ ի բարին՝*
*Գրըչի այսըմ Գանձարանին,*
*Որ օրինկօք բազմագունին*
*Հասեալ եղէ յաւարտ սորին.*
*Այլ և՝ծաղկօք գունըզգունին*
*Զարդարեցի վայելչագին,*
*Հաւաքելով ի մի տըփին,*
*Կազմեալ զեզերսըն բոլորին.*
*Ինձ և ծնողացն իմ մարմնային՝*
*Դանիէլի քահանային,*
*Եւ մօրն իմոյ Խայ-Խաթունին,*
*Քըւերըն խոջայ Միրանշին,*
*Եւ հօրեղբարցն իմ ի կարգին՝*
*Կիրակոսի կրօնաւորին,*
*Մերունին, ընդ Սիմէոնի,*
*Եւ զաւակացն ի միասին,*
*Հանգուցելոցն՝ որք ննջեցին,*
*Սրտիւ ասել զտէր-ողորմին.*
*Եւ կենդանեաց որ կան ի ժմին՝*
*Տէր Աւագին կեանըս տացցին,*
*Իմ դեռաբոյս պատանեկին,*
*Որ Միքայէլ անուն ասին,*
*Զոր վայելել տայ տէր նըմին*
*Զգիրքս ի յերկար ժամանակին.*
*Գուք՝ որ առնուք սակրս մասին*

Ի քաղցրութեանցս այս երկնային՝
Վերադրելոցս որ ի սըմին,
Աշխոյժ մտօք զուարթագին
Ասցէք զամէն և զողորմին։
Եւ տեառն կամքըն քաղցրասցին
Յաւուր մեծի դատաստանին
Յիշեցելոցս ի միասին
Եւ յիշողացդ ընաւին,
Ամէն, ամէն և եղիցին։

Բ

Յինն հարիւր Հայոց թվական,
Ընդ որ ԺԶ. (16) այլ յաւելան (1467),
Այն մեծ արքան արևելեան՝
Խաղաղարարըն Ջըհանշայն,
Յամէն դիմաց եհան հրաման,
Որ զօրք բազում ժողովեցան.
Եւ էջ նոքօք յԱսորեստան,
Առ ի յաղթել զմիր Հասանն։
Իսկ Հասան-բէկ քաջ փահլուանն,
Զօրօքն իւրով որ գումարան,
Ի քուն եգիտ ըզՋըհանշայն,
Զօրացն ի զատ, անպահապան.
Որ և սպան անդէն ըզայն
Եւ զՄուհամատ՝ որդի նորայն։
Իսկ չար հեծեալքն, որ յետ դարձան,
Առին բազում առ և թաղթան։
Հասան-Ալին, այն չար գազանն,
Որ ի Մակու էր ի զընդան,
Ելեալ գնաց դէպ ի Ղափան,
Եւ կոտորեաց զհազինայն,
Այնչափ երետ պարգևս մարդկան,
Վասն այն բազումք ժողովեցան,
Քան զերկերիւրըն հազարեան՝
Այլ աւելի անդ գումարան։
Իսկ ի փալ միւսն ամեան (1468)
Աղ-ղոյլուցիքըն զօրացան,
Ելին յաշխարհըն Հայաստան,
Մինչ յՆրասխայ յափըն հասան։
Հասան-Ալին՝ հեղ յիմարն այն,
Մըտեալ նըստաւ ի կարճ մէջայն,
Զոր զօրքն անդէն ապստամբան
'Ի ի թշնամիքն եկեալ խառնան։
Հասան-Ալեանքըն զարհուրան

'Ի ի բանակէն ելեալ փախեան.
Զոր և եկեալ սուլտան Հասանն
Մնացեալքն անթիւ հնազանդեցան,
Նստեալ ի թաղթըն շահաստան
Զաշխարհս էած իւրն ի հաւան,
Երկիր բոլոր խաղաղացան,
Որպէս ի մօր դիրկըն արղայն։
Հասան-Ալին, իւրքն ամենայն,
Փախեալ հասին ի շաղաթայն,
ԶԹուսայիտն առեալ եկան
Եւ զքառասուն որդին լըման։
Եկեալ զօրօք գումարեցան
Վասըն կըռւոյ և բարկութեան,
Հասան-Ալիքըն միաբան
Ի մէջ նոցա ալտ դարձան։
Յերեկոյին յորժամ հասան,
Որ և զամբարք նոցա լուցան,
Ելեալ զիրեարըս խառնեցան,
Ոմանք սպանան և այլք փախեան։
Իսկ Հասան-բէկըն՝ քաջ արքայն,
Որ այսք վասն իւր ներգործեցան,
Եկեալ բարուք խաղաղութեան
Յաւար էառ զբանակ նոցայն։
ԸզԹուսայիտն անդէն էսպան
Եւ զայլս յորդոցն, որք ըմբռնան,
ԶՀասան-Ալին՝ զանբաղդըն զայն,
Զորդին և ղայլքն զամենայն։
Հասան-Ալին՝ անդօլվաթն այն
Եկեղեցի շինեաց զՄակուայն,
Որոյ անուն սուրբ Վարդան,
Եւ նա չեղև իւրն օգնական,
Կամօք վերինըն հայրական։
Իսկ Աղ-ղոյլուքըն քաջացան
Եւ զԲաբելոն առեալ կալան,
Մինչ յԱմոսան գնացեալ հասան,
Որ և ըստոյգ է Խորասան։
Իսկ յանցանելն երրորդ ամեան (1470),
Որ և զթաղթն ինքեանք կալան,
Հասան փատշահըն՝ մեծ սուլտան
Զօրս առաքեաց ի Քըրտաստան:
Մեծ զօրավարըն Սուլէյման,
Զօրօք հասեալ գաղտագողեան
Քաջ պաշարեաց զնոսա այնքան,
Որ մեծ զարմանք ըզմեզ կալան։

Իսկ ի յերկու ամսին լըրման
Չէկաց անդէն բէկ Սուլէյմանն.
Քանզի քըրդերըն զօրացան՝
Կորուսանել զնա կամեցան։
Զոր երկուցեալ ի յետ դարձան,
՚Ի ի Վան քաղաք ծըմըռնեցան։
Իսկ քուրդն արար զդալխիրայն՝
Բաղում ընչից պատրաստութեան։
Դարձեալ, ի գալ միւսն ամեան,
Եւ թվական հայ ղարմեան
Ինըն հարիւր էր և քսան (1471),
Կրկին նոքա անդէն դարձան։
Ի Մուշ գնաց Խալիլ իշխանն,
Եւ ի Բաղէշ՝ քաջ Սուլէյմանն,
Եւ Բայանդուռ Լօշ իմիրզայն՝
Կալաւ զբոլոր Խլաթայ թումանն։
Երբ յաւելան կրկին թվական (1472)
Քըդեր բերդին Կալահոքեան,
Յատուրս պահոց աղուհացեան,
Որ էր տաճկացն ռամադան,
Եկեալ ի Մուշ չար խորհրդեամբ,
Առ ի յաղթել զԽալիլ իշխանն,
Եւ զքրիստոնեայքըն զամենայն
Տանջել չարեօք զանազանեան։
Իսկ թագաւորն տարօնեան
Եւ խնամատարն ազանց համայն՝
Մեծ Կարապետն՝ բանիւն ձայն,
Որ մկրտեաց զտէրն Յորդանան՝
Եհար, վանեաց զՔարիմ աղայն
Եւ զզօրս նորա զամենեսեան։
Զի շատք ի ձիւնըն մըսեցան,
՚Ի այլքըն սրրոյ ճարակ եղան։
Իսկ Բայանդուռ Լօշ ամիրայն
Նըղմեալ ըզբերդըն Խըլաթայն
Երբ վեց ամիսըն լըմնեցան՝
Էառ զԽըլաթ և զԲըլիճայն,
Քակեաց ըզբերդըն Խըլաթայն,
Եւ զպահողքն ըզբերդին այն
Արար իւրեանըն զօրական,
Եւ ելեալ էջ ի Ջըզիրայն։
Քանզի քըրդերն երկրին Բուխտան,
Ելեալ գնացին ի Ջըզիրայն,
Զթուրքերն, որ անդ, սպանին համայն
՚Ի ինքեանք ըզբերդն առեալ նստան։

ԶԲայանդուրի ձայնն երբ լըսան
Նոքա կըռուու պատրաստեցան,
Եւ երբ ըռազմն կազմեցան՝
Նոքա վանեալ, հարեալ լըքան,
Կէսքըն սրով սատակեցան
Եւ կէսքն ի գետըն խեղդեցան,
Բայանդուռն առ ըզՋըզըրայն
Եւ եօթն բերդն յերկրին Բուխտան:
Եկն ի գաւառն Բըզնունեան,
Որ Արծկէ յորջորջի այն.
Բերել ըվչուրըն Ծըռգետեան
Պէշնազոմեր դեւչին միայն։
Ի տասն և հինգ* յուլիս ամսեան
Եհան ըղչուրըն Զամըրղկեան,
Յերեք աւուրն յետոյ հատեան
Եւ սուրբ խաչին կըկին ըղխան։
Իսկ Հասան-բէկ արի արքայն
Զթաղթըն տըւեալ՝ զՇիրազ այն,
Յորդին իւր՝ Խալիլ սուլթան՝
Պահել զկողմանս Արևելեան։
Եւ դարձաւ ինքն յԱսորեստան,
Եկն ի գաւառըն Տարօնեան,
Զբերդըն քակեաց ի խոր հիման,
Նըւէրս երետ վանաց Գըլակայն։
Զօրս առաքեաց ի Հռոմաց տան,
Քաղաքըն մեծ Թողաթ հասան,
Ոսկի արծաթ եղև թաղթան,
Կումաշն ամէն հրով կիզան։
Իսկ փատշահն էջ ի Շամայ տանն,
Հալապ քաղաքըն շահաստան
Քաղաքացիքըն չհնազանդեցան**։
ԶԲաղէշ՝ զշինուածն Աղէքսանդրեան,
Զոր պաշարեալ էր Սուլէյմանն,
Ամ մի և հինգ ամիս կեցան,
Որ քսան երկու աջեաց թվական (1473),
Քուրդն ետ ըզբերդն ի Թուրքմանն,
Զի ի տեառնէ էր սաստ նոցայն.
Հազար* հոգի ի բերդն ելան

---

* Ձեռագրում՝ «ԺԵ.»։
** Ղ. Փիրղալեմյանը հայտնում է, որ ձեռագրում «մի տող ձգած էր», այսինքն՝ գրված չի եղել։
*** Ձեռագրում «Ռ.»։

*Եւ վեց հարիւր*՝ որք անդ նեխան,*
*Ութ մարդ մնաց և Ամիրայն**։*

## 425

## ՄԱՇՏՈՑ

**Երևան 5910**

*գրիչ՝* Մելքիսէթ
*վայր՝* Արճքռոյ վանք

117ա ...*Արդ, գրեցաւ սուրբ գիրքս, որ կոչի Մաշթոց... ի թուականիս մեր* ՋԻԱ. (1472) *ամին, ձեռամբ* Մելքէսէթ *աբեղայի, ի սուրբ անապատս* Արճքռոյ *վանք, ընդ հովանեաւ սուրբ կենսաբեր Աստուածածնիս, ի կա-*
117բ *թուղի||կոսութեան տեառն* Ըռստակիսի *էջմիածնի, և ի պարոնութեանն* Հասան-Բէկին։ *Ի խնդրոյ*** պատուական մաղդասի աբեղային* Աստուածատրոյ, *որ ստացաւ զսա եռափափագ սիրով. յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց՝* Ջանիբէկին *և* Դոսմելէքին, *և ծնօղաց մօրն իւրոյ՝* Թումային *և* Դովլաթին, *և հօր ծնաւղացն՝* Կարապետին, *այլ և եղբօրն իմոյ* Խաչատրոյ, *և այլոցն համգուցելոցն, այլ և հոգևոր հօրն իմոյ խաւշայ* Աբրահամին, *և մօրն իմոյ* Մէրդինշայ-Խաթունին, *ամէն։*

*Եւ ետու զսուրբ գիրքս ի դուռն սուրբ զօրավարին* Թէոդորոսի, *յիշատակ բարի հոգոյ իմոյ և վերոգրելոցս ի սմա։ Եւ մի ոք իշխեսցէ հեռացնել զսա ի դրանէ սուրբ տաճարիս, ո՛չ յաւտարաց և ո՛չ ի բնակաց։ Եւ ով ոք խնամ տանի և լաւ պահէ աւրհնի յաստուծոյ և ի սրբոյն* Թէոդորոսէ, *ամէն։*

118ա *Դարձեալ, աղաչեմք զհանդիպողքդ սուրբ գրոցս յիշեցէք ի Քրիստոս զմեռեալն հոգւով* զՄելքիսէթ *գրիչս, որ և մեղաւոր մատամբս գրեցի զսուրբ գիրքս, նաև ծնաւղաց իմոց՝ հաւրն իմոյ* Ղազարին *և մաւրն իմոյ* Ոսկիհատին, *և միւս մաւրն իմոյ* Փոքր-Տիկնայ, *և հաւրեղբաւրն իմոյ* Ստեփանոս *կրաւնաւորի, և ամենայն արեան մերձաւորաց իմոց, և ուսուցողացն մերոց, նաև այնոց[ իկ], որ ի վերայ մեզ երախտիք ունին, որ շատ և որ սակաւ։ Աղաչեմ խոշորութեան և սխալման սորա անմեղադիր լինել, զի կարս մեր այս է։*

118բ *Արդ, որ շարժողն է ամենայն բարութեանց՝ երևելեաց և աներևութից՝ արարիչն աստուած՝ շարժեաց ի սէր աստուածային բարութեան իւրոյ զընտրեալ և զսրբասնեալ և զամենայն առաքինութեամբ զարդարեալ զտէր* Աստուածատուր *մղտեսի ընտրեալ կրաւնաւորն, զի ունկնդիր եղև մարգարէին, որ ասէ՝ Երանի, որ ունիցի զաւակ ի Սիոն, և ընտանեակ*

---

** Ձեռագրում «Զ. Ճ.»։*

*** Այսքանով ավարտվել է Մովսես Արծկեցու հիշատակարանը։ Ընդօրինակող Ղ. Փիրղալեմյանը վերջում հայտնում է՝ «Ահա այսչափ միայն էին տարեգրութիւնք Մովսէս քահանայի Արծկեցւոյ, զոր խնամով ընդօրինակեցի յինքնաձեռագիր Գանձարանէ նորին, ի պէտս տարեգրութեան»։*

**** Այստեղից սկսած մինչև «Դարձեալ աղաչեմ»-ով սկսվող պարբերությունը, ինչպես և 118բ էջն ամբողջությամբ, գրված է այլ ձեռագրով։*

յՆրուսաղէմ, եդ զհայր՝ Մաշթոցս ի յԱւաf վանքն, ի դուռն սուրբ Աստուածածնին և սուրբ Կարապետին և սուրբ Առաքելոցն. յիշատակ իւր, և ծնողաց իւրոց Ջանիպէկին և Դուռմելիfին, և ծնաւղաց մաւր իւրոյ՝ Թումային և Դովլաթին, և հաւրն ծնաւղացն՝ Կարապետին, այլ և եղբաւրն իւրո Խաչատրոյ, և ամենայն արեան մերձաւորաց իւրոյ։

Եւ արդ, մի ոք իշխեսցէ հանել զսայ ի դրանէ սուրբ եկեղեցեաց ծախելով կամ դրաւ դնելով, ո՛չ առաշնորդ, ո՛չ եկեղեցական, և ով ոք յանդգնի և խորէ՝ ընդ Յուդայի և ընդ խաչահանուացն պատժեսցի, այլ խնամով պահողքն աւրհնին յաստուծոյ և մէնչ, ամէն։

## 426

### ԳԱՆՁԱՐԱՆ

«Լոյս», 1905 թ., էջ 638, Բաքու

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Հերմոնի վանf

Գրեցաւ այս հոգևոր Գանձարանս ի թվականութեան Հայոց ՋԻԱ. (1472), ձեռամ[բ] անարուեստ գրչի Յովանիսի, ի խնդրոյ պիտակ անոմ Յակովբի, յետինս ի բանասիրաց. որ միայն անուամբս եմ և ոչ (՟) գործով հեռի, վարժեալ և սնեալ առ ոտս քաջ հռետորի Սարգիս կոչեցեալ, ի վանս Հերմոնի, ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս և սուրբ Յակովբ նշանիս։ Ստացա-զսա յիշա[տա]կ հոգւոյ և ամենայն արեան մերձաւորաց իմոց, և շնորհեցի զսա իմ սէրասնունդ աշակերտացն՝ Յովանիսի և Մկրտիչ քահանայիցն...։

## 427

### ՄԱՇՏՈՑ ԵՒ ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 4392

գրիչ՝ Յոճանէս Մանգասարենց
վայր՝ Արճէշ

201ա ...Արդ, գրեցաւ և աւարտեցաւ համարակաց Մաշտոցս և ծաղկաքաղ
Գանձարանս։ Մաշտոցն կառավարիչ կարգաց և խորհրդոց եկեղեցոյ և
Գանձարանս՝ ի պատիւ տօնից տէրունականաց և ամենայն սրբոց, որ տօ-
նախմբին ի բոլոր տարին, այլ և յուրախութիւն տօնասէր և ժամասէր քա-
201բ հանայից և ժողովրդոց։ || Վասն որոյ տեսեալ զգեղեցկութիւն սորա և
զպայծառութիւն իմաստուն և աստուածասէր [և պատուական և երա-
նաշնորհ քահանայն տէր Գրիգոր]* և ստացաւ զսա յիշատակ բազում ժա-
մանակաց և զաւակ բարի ի դուռն եկեղեցւոյ, յիշատակ իւրն, և աստուա-
ծասէր և բարեպաշտ ծնօղացն՝ հաւրն [Աստուածատուն, և մօրն Սաղդա-
թին, և բարի ամուս[ն]ոյն և թագուհոյն Ազիզ-Խաթունին, և իւր ծնաւղացն՝

* Փակագծի մեջ առնված հատվածները (տե՛ս նաև ստորև) լրացված են հիշատակարանի գրությունից հետո՝ հավանաբար նույն Յովհաննէս գրչի կողմից։

Հէրապետին և մօրն Մարթային, և զհօրեղբայրն զխօջա Աստուածատուրն, և զխաչատուրն, և զԳուլմէլէքն, և զամենայն մերձաւորս Ազիզխաթունին և տէր Գրիգորին]։

Վասն որոյ ամենեքեան ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք նոցա և աստուած ձեզ ողորմի, և ամենայնի որ զաստուած-ողորմին ասէ։
201ա Այլ և ինձ՝ անարժան դրչիս Յովանէս երիցու և ծնօղաց իմոց՝ Մանգասարին և Փաշա-Մէլէքին. որ բազում աշխատանաւք գրեցի զգիրքս ի թուիս Հայոց ՋԻԱ. (1472), յԱրճէս քաղաքի, ի դուռն Գէորգ զօրավարիս, յիշատակ բարեպաշտ և աստուածասէր քահանային տէր Գրիգորին և ծաղկեալ զաւակացն՝ որ առ աստուած գնացին և զծնօղաց սիրտն խոցեցին՝ պարոն Գոր[գի՞ն] և Աւէտին, և կենդանոյն Յուսիտային: Որոց տէր աստուած վայելել տացէ և յետ սոցա յիշատակ լինի բազում ժամանակաց ի դրանս եկեղեցեաց, ամէն։

Դարձեալ կրկին յիշեցէք առ աստուած զստացօղ սուրբ կտակիս զեբանաշնորհ քահանայն զտէր Գրիգորն, և զհօրեղբայրն զՏիրատուրն, և զամուսին նորին զԴամարն, և զորդիս նոցին զպարոն Յովանէսն, և զնո-
202ր բաբողբոջ զաւակս || նորին զԿարապետն, և ///*

Բ

49ր Տէր աստուած... ողորմեա ստացօղի սուրբ գրոցս սրբասէր կրաւնաւորին Սիմէօնին**, և ծնաւղաց նորին, և ամենայն արեան մերձաւորաց նորին՝ կենդանեաց և հանգուցելոց, ամէն։

## 428
## ԱԻԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 476, Մ Տ.Մ. Վ.Տ.Ա.

գրիչ՝ Յոհանէս
վայր՝ Կտուց

372բ—376ր ...Ընդ նոսին և [յիշեցէք] զմեղաւոր գրիչս Յոհանէս... զվարպետն իմ զԳրիգորն, և զխաչատուր կրօնաւորն, զի շատ հայրութիւն արեր է մեզ, և աստուած փոխարէն տացէ յիւր արքայութիւն։

Եւ արդ, գրեցաւ սա ի թվականիս Հայոց ՋԻԱ. (1472), ի սուրբ ուխտս, որ կոչի Կտուց, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կարապետիս, և սուրբ Ստեփանոսիս, և սուրբ Գրիգոր Լուսաւորչիս, և սուրբ Հռիփսիմեանց, ձեռամբ մեղսաներկ Յոհանիսի, ի խնդրոյ Մկրտչին և Խազարբէկին, զոր աստուած բարով վայելել տացէ և

* Շարունակությունը 5 տող՝ ջնջված է։

** Ա. Հիշատակարանի տվյալներով ձեռագրի ստացողը կոչվում է Գրիգոր, սակայն, ինչպես ասացինք, ստացող Գրիգորի ու նրա ազգականների անունները լրացվել են հետագայում, նախորոք ազատ թողնված տողերի վրա։ Պետք է ենթադրել, որ ձեռագրի պատվիրատուն սկզբից եղել է Սիմէոն կրոնավորը, բայց ընդօրինակության ավարտման պահին նա կամ մահացած է եղել, կամ չի ցանկացել ստանալ ձեռագիրը, ուստի և գրիչը ստիպված է եղել գլխավոր հիշատակարանում ստացողին և նրա ազգականներին վերաբերող մասերը դատարկ թողնել։ Հետագայում միայն, գտնելով նոր ստացող Գրիգորին, նա լրացրել է դատարկ թողնված այդ մասերը։

ընթերցաւղքդ խաղաղական կենաւք պահեսցէ...։ Յիշեցէք յաղօթս ձեր զխազուրբէկն, որ ստացաւ զսուրբ Աւետարանս յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնօղացն իւրոց, և ամենայն ազգականացն, հօրն Ստեփաննոսին, և մօրն Խազրէվարդին, և կենակցին Շարմէլիքին, և հօրեղբօրն Յոհաննին, և ծնօղացն՝ Ներսէսին և Ազիզին, և կողակցին Խոնձին, և զաւակացն Բարսեղին, և կնոշն Խուբիպին, և զաւակին Յովանիսին, և ճորտ Մկրտչին, որ երիտասարդ հասակաւ փոխեցաւ յաշխարհէս առ Քրիստոս և սուք անմխիթար եթող հօրն և եղբաւրն, և կենակցին՝ Մարգըրտին, և մօրքւերն Նուսրաթին, և այլ ամենայն արեան մերձաւորացն և ազգականացն...։

429

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 2631

գրիչ՝ Զաքարէ
վայր՝ Աշոտաց երկիր,
Անկիւնեաց վանք

262բ ...Աստուածասէր և ընտրեալ ապաշխարաւղն Կուլփաշան... ստացաւ զսուրբ Աւետարանս յիշատակ իւր, և ծնաւղացն իւրոց՝ Յովճաննիսին
և մաւրն Ամբարիըն, և աղբաւրն Հայրապետին, որ տղայ փոխեցաւ ի
Քրիստոս, և որդւոյն Յաւսեփին, և միւս որդւոյն Գրապետին. և ստացաւ
զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց յիշատակ իւր, և ծընաւղաց իւրոց,
և ամենայն արեան մերձաւորացն և հանգուցելոցն, ամէն։
Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի յերկիրս Աշոտաց, ի սուրբ ուխտըս, որ կոչի յԱնկիւնաց վանք, ի դուռն սուրբ Լուսաւորչին, և Վարդի-
263ա հաւր սուրբ գերեզմանին, և սուրբ Պե||տրոսի, և սուրբ Պաւղոսի, և սուրբ
Սիովնի, և սուրբ Սուքիասանց, ի թուին Հայոց ՋԻԱ. (1472), փետրվար
ամսոյ ի ԺԴ. (14) աւարտեցաւ սուրբ Աւետարանս, ձեռամբ անարժանի և
սուտանուն գրչի Զաքարէ աբեղայի...։
263բ Գրեցաւ ի յառաջնորդութեան տէր Աստուածատուր հայրպետին, ի
յեպիսկոպոսութիւմն տէր Գրիգորին: Աղաչեմ զամենեսեան, որ կարդայք
զսուրբ Աւետարանս յիշեցէք զտէր Գրիգոր եպիսկոպոսն և զտէր Աստուածատուր հայրպետն, որ կամակից եղան սուրբ Աւետարանիս և յորդորեցին զիս ի գրելն. աստուած զիւրենք յորդորէ ի յիւր արքայութիւն։ Եւ յիշեցէք զտէր Մինաս աղբեզայն, որ ի կոկելն աւգտեց, յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք, ամէն։

Յիշեցէք և զծնաւղսն իմ զՄելքիսեդն և զմայրն իմ զՄելիքն, որ փոխեցաւ ի Քրիստոս, ամէն։ Յիշեցէք զՀերիք մամն և զՄխթալ մամն, որ խիստ աշխատեցան ի հետ մեզ, ոմն ի հացին թխելն, ոմն ի յաւել ածելն, ոմն ի ջրին բերելն, յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք, ամէն։ Եւ զմզտեսի Մխիթարն, որ Վարդիհաւրն լոյս կու այնէ՝ յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք, ամէն, ամէն։

430

ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 5658

գնող՝ Աւետիք
վայր՝ Կաֆա

326ա Ես՝ Աւետիք արեղաս գնեցի Շարակնոցս հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ և ծնողաց իմոց, թվ. ԶԻԱ. (1472), ի Կաֆա քաղաք, ի Յոհանէս վարդապետէ, որ մականուն Թաննարկեր կոչի։

431

ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա, ս. Մինաս եկեղեցի Մ.Տ.Ա.

նորոգող և կազմող՝ Մանուէլ գրիչ

264ա ...Զատացող սորա զՍտեփանոս քահանայ, որ ստացաւ զսուրբ Աւետարանս յիշատակ իւրն և ծնօղաց իւրոց՝ հաւր իւր Սաֆարշին և մաւր իւրոյ Թամարին, որ ետ զգինս սուրբ Աւետարանիս ի հալալ վաստակոց իւրոց յիշատակ հոգոյ իւրոյ և վայելումն որդոյ իւրոյ Ստեփաննոս քահանայի, զոր տէր աստուած վայել[ել] տացէ, ամէն։ Ընդ նոսին և զնորոգաւղ սորա և զկազմող զՄանուէլ անարժան գրիչս յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր և զվերադրեալս ի սմայ....։

Թվականիս ԶԻԱ. (1472)։

432

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5469

ա

311ա Արդ, աղաչեմք զձեզ, ո՛վ սուրբ մանկունք եկեղեցոյ, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զհեզահոգի քահանայն զտէր Ստեփանոս մաղդասին, որ ստացաւ զսուրբ Աւետարանս յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղացն և ազգականացն///*

Թվ. ԶԻԱ. (1472)։

բ

109ա Արդ, աղաչեմք զամենեսեանդ, ո՛վ լուսերամ դասք քահանայից, յիշման արժանի արարէք զտէր Ստեփանոսն, և զծնաւղսն իւր ըստ մարմնոյ՝ զհայրն զՅակոբն և զմայր զՇամամն, և զաւակն՝ զԹոլորն...։

* Շարունակությունը 9 տող՝ քերված է։





## 433

## *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Շամախու Ղալաղյա գյուղ, Մ.Տ.Մ.*

*գրիչ՝* Յովսէփ
*վայր՝* Հիզնայ երկիր, Սորի գիւղ

269ա *...Արդ, կատարեցաւ աստուածախաւս և տիեզերաքարոզ սուրբ Աւետարանս ի խնդրոյ պատուական և հաւատարիմ և սրբասէր կրաւնաւորին* Մովսիսի, *զոր և տէր աստուած բարեաւ վայելել շնորհեսցէ իւրն, և եղբարց իւրոց* Ատոմին, Խաչատրին *և* Գրիգորին, *և զաւակաց նոցին..., և ի ծնողսն իւր* Իբրէհիմն *և յ*Աննա-Խաթունն..., *և մեծ պապումն* Յոհանիսին, *և* Հասմին, *և եղբարց իւրոց* Ատոմին, Խաչատրուն *և* Գրիգորին, *և հարսներուն* Մուղանին, Շնորհաւորին *և* Գոհարին: *Արդ, ես մեղաւոր* Յովսէփ *քահանայ դրեցի զսուրբ Աւետարանս ի դեաւղս որ* Սորի *կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Քրիստափորի, և այլ ամենայն սրբոցս... [ր յիշատակ] գրչիս* Յովսէփի, *և ծնողաց իմոց* Յովանէս *քահանայի և* Զըմրուխտի, *և հօրեղբօրն իմոյ մահգասի* Յոհանէս *եպիսկոպոսի, և զաւակաց իմոց* Գրիգորին, *և կենակցին իմոյ* Խոնդֆայի...:

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվ. Հայոց ՋԻԲ. (1473), ի դառն և ի նեղ ժամանակիս, ի ղանութեան* Ուզուն-Հասանին, *որ յայսմ ամի ապատակեաց ի* Քրդստան, *էառ զ*Բաղէշ *և զ*Խլաթ *և զ*Մուշ *և զ*Բոնտանք, *և բազում արեան հեղութիւն արարեալ, և աւար առեալ զազգս Տաճկաց, և գնաց յերկիրն Հոռոմոց. և ի դէմ ելեալ սուլտանն Մսրայ և ղանն Ուռմայ խոնդքար՝ եւթն հարիւր հազար հեծելօք. Եւ յելանել արևուն մինչև ի մուտս արևուն պատերազմեցան և յերկու կողմանցն ԻՌ. (20,000) այր սպանաւ, և երկու կողմանքն փախստական եղեալ. Եւ բնակեցաւ ղանն* Հասան *ի* Դավրէժ, *զոր տէր աստուած փրկեսցէ զազգս քրիստոնէից յազգէն նետողաց, ամէն. Եւ մեք փախստական լեալ բնակեցա[ք] յերկիրն* Հիզնայ, *ի գիւղս* Սորի, *և բազում նեղութեամբ կացեալ ի սմա դրեցաք զԱւետարանս ի յանցուդարձ տանս, վասն զի ոչ եառւմ առանձնակի տեղ, և եթէ սխալեալ իցեմ ի սմա անմեղադիր լերուք.*

*Այլ գրեցան ի պայծառ և յընտիր աւրինակէ, զոր տէր աստուած ողորմեսցի վարդապետին իմոյ* Կիրակոս *քահանային, և լուսաւորեսցէ Քրիստոս զհոգի* Մխիթար *փիլիսոփային, որ զաւրինակն ետուր զԱւետարանիս.*

## 434

## ԱՒԵՏԱՐԱՆ

*«Արեւելք» օրագիր, 1884 թ., № 129, էջ 3—4**

*վայր՝* Ակիսի բաղաf

*... Եւ ձեռնարկեալ գրեցի զսուրբ Աւետարանս ընդ հովանեաւ սուրբ Սարգսի զօրավարին և Գէորգայ զինաւորին, ի քաղաքս որ կոչի* Ակիսի, *իսկ յաշխարհակալութեան նետողաց ազգին* Հասանին:

*Եւ գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՋԻԲ. (1473), ի փառս Քրիստոսի աստուծոյ։ Արդ, որ հանդիպիք սուրբ Աւետարանիս տեսութեամբ կամ ընթեռնելով կամ գաղափարելով ի պէտս օրինակի՝ յիշեցէք ի Քրիստոս զստացող սորա՝ զվերոյասացեալն զ*Հայրապետն, *և զ*Կուլինարն *(կողակից նորին), և զորդիս իւրեանց, և զարեան մերձաւորս իւրեանց ///, զմայրն իմ զ*Նարա-խաթուն, *և զեղբայրն իմ, և /// սա]րկաւակս ///, և զմերձաւորս իմ ///***

*Յայսմ ամի, եկն անօրէն խովանդքարն, որ* Ջքախ *կոչի՝ բազում և անթիւ զօրօք ի Հոռոմոց աշխարհէն յաշխարհս մեր։ Եւ եկն նախ ի* յԵզնկայն *և այրեաց զքաղաքն /// և այլ սակաւ զօրօք յառաջ գային ընդդէմ* Ջքախին: *Իսկ* Ջքախն *ոչ գիտէր զդարանամուտ զօրաց մերոց, և յառաջ եկան և մտան ի պատերազմ ընդ սակաւ զօրացն, որ ընդդէմ նոցա կայր, և դարանամուտքն հասին զկնի, փակեցին զզօրսն* Ջքախին, *և եղեւ սաստիկ պատերազմ յառաւօտէ մինչև ցերեկոյ։ Յառաջ յաղթեցան զօրքն մեր. և հրամանաւ աստուծոյ յաղթեցան զօրքն* Ջքախին, *վասն զի եւ հողմն սաստիկ և փչեաց զերկրին փոշին ի վեր* Ջքախին, *և այնպէս փոշի եղև, որ մին զմին ոչ կարէր տեսանել։ Եւ զօրքն մեր զհետամտեալ սաստկապէս կոտորեց /// բռնեալ և ածին* Հասանին *և սպանին։ Եւ ողորմութեամբն աստուծոյ (ազատեցաւ) աշխարհս մեր ի զօրաց* Ջքախին */// իսկ փատրիահն նոցա, որ խովանդքար կոչի՝ փախեաւ և եմուտ յամրոցն՝ անպիտան զօրօքն, իբրև վաթսուն հազարաւ։ Վասն զի ամրոցն, այն, որ յետեւին էին բերեալ իբրեւ զքաղաք մի բոլոր էր մեծութեամբ, և մեծամեծ զնչիլով և տախտակով փա[կեալ ///։ Եւ մնաց պարոնն սակաւ զօրօք, և ելեալ զօրքն* Ջիքախին *յամրոցէն և սկսան կոչել**** յաշխարհն իւրեանց, իսկ զօրքն, որ հետ պարոնին էին՝ թողին զպարոնն և փախեան, և* Ջքախն *զերծեալ փախեաւ։ Եւ զօրաժողով արար* Հասան *և ///*

---

* Հիշատակարանը հրատարակել է Մ. Նաթանյանը, «Կարեւոր հնութիւնք ի Կոստանի» (ի Զարանձագ) հոդվածում:

** Մի թերթ ընկած է եղել պահպանված թերթից շատ տողեր եղել են այրված և անընթեռնելի դարձած:

*** Այսինքն՝ քոչել—գաղթել:

## 435

### *ԱԻԽՏԱՐԱՆ*

***«Արցախ», էջ 247***

*գրիչ՝* Սարգիս
*վայր՝* Խաչենաձորոյ գաւառ

*Ի ժամանակիս յայսմիկ, որ վասն ծովացեալ մեղաց մերոց ի վտանգի կայր ազգն քրիստոնէից ի ազգէն անօրինաց, և էր թուականն Հայոց ՋԻԲ. (1473)*, և ողիմբիաթն, որ է նահանշ ՄԼ. (230), ի ղանութիւն* Հասան-բէկին, *որ գնաց յոշխարհն Հոռոմոց և աղդի ազգի չարութիւն հասոյց ի հետ աւգին տաճկաց, և ի կաթողիկոսութեան Հայոց տէր* Ռաստակեսի, *և հայրապետութեան սուրբ ուխտին* Գետամիջոյ *տէր* Սարգսի, *և փակակալութեան տեղւոյն* Յովհաննէս *կոյսակրաւն աբեղայի։*

*Բայց արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի գաւառս* Խաչենաձորոյ, *ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսի, սուրբ Սքանչելագործ Նշանիս, սուրբ Սարգսի, և ի տէրութեան տեղւոյս պարոն* Վէլիջանին, *զոր տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ։*

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս յաւրինակէ տեառն Եփրեմի Խուրին Ասորոյ՝ համարաւ և կիտիւ և բանիւ և նշանագրով /// ի խնդրոյ արքեպիսկոպոսի, որ վառեալ չահ է եկեղեցւոյ /// պարոնտէր, թողութիւն արարէք, եղանակիս որ գրուեցաւ՝ անձրև խիստ, և տեղիքս գէճ, և հողս չրքաշ, և ես մենակ։*

## 436

### *ՄԱՅՐ ՄԱՇՏՈՑ*

***Փիրգ. 6273, էջ 316—317,***
***Արճէշ, յԱրծուաբեր ուխտն***

*գրիչ՝* Մելքիսէթ
վայր՝ Առեստ գիւղ—Սուխարայ վանք

*... Եւ արդ, գրեցաւ սա ի թուականիս Հայոց ՋԻԲ. (1473), ձեռամբ անիմաստ գրչի* Մելքիսէթի, *ի գեօղս* Առեստ, *որ կոչի* Բանդումանի. *և կէսն գրեալ եղև ի վանքն* Սուխարայ, *ընդ հովանեաւ Արծուաբեր Աստուածածնին, ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս տէր* Յոհաննէս *արհիեպիսկոպոսի, և տէր* Յովանէս *հերպետի,և տէր* Սիմէօն *փակակալի, և այլ սուրբ կրօնաւորացս՝ տէր* Գրիգոր *գրոց աշակերտի, և տէր* Ներսէսի, *և տէր* Յովսէփի, *և տէր* Իգնատիոսի, *և տէր* Ստեփաննոսի, *և տէր* Զաքէոսի, *և տէր* Կարապետի, *և* Յոհաննէսի, *և տէր* Յովաննէսի, *և տէր* Մկրտչի, *և այլ միաբանիցս, զոր պահէ Քրիստոս աստուած անփորձ և անսասան։ Ի հայրապետութեան տէր* Սարգսի, *և ի թագաւորութեան* Ուզուն- Հասանին, *որ յայսմ ամի կոխեալ եղև ի* Զաքաղէն:

---

* «Արցախում» տպված է ՋԽԲ. (1493)։ Ակնհայտ սխալ է, որ առաջացել է «Ի» և «Խ» տառերի շփոթությունից։ 1493 թվից շատ առաջ մեռել էին և՛ Ուզուն-Հասանը և՛ Արիստակես կաթողիկոսը։

Յիշեցէք զստացող սուրբ տառիս զԱլեքսան տանուտէրն, որ ստացաւ զսա և ետ յիշատակ ի դուռն Արծուաբերոյ։

### 437
### ԱԻԵՏԱՐԱՆ
Երևան 7539

գրիչ՝ Յուսէփ

ա

207ա ... Յամի թուականութեանս Հայկազան տոհմի ՋԻԲ. (1473) տանուտէր ոմն Քոչբէկ՝ հարազատ և աստուածասէր յամենայն բարութիւնս միաւորեալ...։ Տէր Քրիստոս աստուած, գթա ի յոգիս Քոչբէկին, և ծնաւղացնորին, և եղբաւրն Սկանդարին, և որդոյ նորին Ղամբարին և || Վանփաշին, և այլ ամենայն արեան մերձաւորաց.... զԱւետարանս ստացաւ յիշատակ իւրո կատարմանն, և ամենայն ննջեցելոց իւրոց, և յետ իւրն՝
207բ զաւակաց իւրոց, զոր վաեյել տացէ ընդ երկայն աւուր կրկին կեն||աւք և Բ. աշխարհաւք, ամէն։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի ժամանակիս վերջացեալ դարիս, ըստ այնմ, որ ասէ յոտից մինչև ցգլուխս չիք առողջութիւն առ Իսմայելեան և ժպիրհ ազգիս, որ քրիստոսադաւ ազգս հասուցին մինչև ի դրունս մահու։

Ես անպիտանս և յետնեալս ամենայնի, որք հանդիպիք յայս սուրբ գանձարանիս՝ աստուածաշունչ Աւետարանիս՝ յիշեցէք զվերոյգրեալսն, և աստուած զձեզ յիշէ՝ զյիշողքդ, ամէն։ Եւ զիս՝ անպիտանս և յետնեալս ի բանասիրեաց, որ միայն անուանս ունիմք և ոչ զգործս, յորժամ կարդայք կամ աւրինակ|ն յիշեցէք. կազմողս, և աստուած, որ առատն է ի տուրս բարեաց տացէ ձեզ զարքայութիւնն և հանգուսցէ ի գոգն Աբրահամու, ամէն և եղիցի, եղիցի։

Բ

80ա Եղկելի գրիչս Յուսէփ ետին եպիսկոպոս աղաչեմ աղերսալի մաղթանօք աստուածապատիւ սուրբ հայրքդ և սրբազան ընթերցողքդ յիշել ի տէր, և Քրիստոս որդին աստուծոյ զձեզ յիշէ իւր արքայութիւնն, ամէն։

Գ

2Շ6բ Ջանարժան գրիչս Յուսէփ յիշել աղաչեմ. Թվ. ՋԻԲ. (1473) գրեցաւ։

Դ

150բ Ջանպիտան Յուսէփ յետին եպիսկոպոս երես անկեալ աղաչեմ զմանկունսդ Սիոնի յիշել ի տէր։
Թվ. ՋԻԳ. (1474)*։

* Այս հիշատակագրությունը գրված է Ղուկասի ավետարանի վերջում, իսկ Գ. հիշատակագրությունը՝ Յովհաննի վերջում։ Դժվարանում ենք հավատալ, որ Ձեռագրի վերջին մասի ընդօրինակությունն ու կազմումը ավարտվել է 1473-ին, իսկ միջին մասի ընդօրինակությունը՝ 1474-ին։

ՋԻԳ. (1474)-ը պետք է համարել կամ գրչական սխալ, կամ էլ ձեռագրի ընդօրինակությունից մի տարի հետո արված հիշատակագրություն։

## 438
## ԱԻԽՏԱՐԱՆ
### Երևան 5912

գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Վայոց-ձոր

314ա ...Գծագրեալ եղև սա ձեռամբ յոգնամեղ և անարհեստ Դաւիթ սուտա-
տում իրիցի, որ միայն զանունս ունիմ և ոչ զգործս, ի թվականիս Հայոց
ՋԻԲ. (1473), ի ղանութեան Հասան- բէկին՝ թոռինն Պայընտըրոյ, որ տի-
314բ րեաց բազում աշխ||արհաց և քաղաքաց. ի կաթուղիկոսութեանն Վաղար-
շապատու տէր Ըռըստակիսի, և մերում նահանգի պարոնութեանս պարոն
Ջումին: Եղև գրաւ սորա յերկիրս Վայի-ձորոյ, ի դեւզս որ կոչի Սրկղունս,
ընդ հովանեաւ սուրբ Գէորգի տաճարիս, և սուրբ Նշանացս՝ սուրբ Յակո-
բի և սուրբ Նշանի, առ ոտս արիաշան հովապետի Աւագտէր վարդապե-
տի՝ հաւրեղբաւրս մերոյ, և այլ հարազատ և կուսակրաւն աբեղայիցս՝
եղբարցս իմոցս՝ տէր Զաքարիայի, և Աբրահամի, և Ոհանէս աբեղայի՝
ընկերակցի սոցա, և Եզեկիէլ ընկերակցի իմոյ՝ դեղոյ իրիցի և այլ եղ-
բարցս։

Եւ ըստացեալ զանարիկ փարթամութեան մեծութիւնս աստուածասէր
և բարեմիտ տանուտէրն Սիրական կոչեցեալ, յիշատակ իւրն, և ծնաւղացն
իւրոց հաւրն [Մանաւագին, և հաւրեղբարն Մկրտչին, և մաւրն Մանիշա-
315ա կին]*, || և ամուսնոյն իւրոյ Գուլին, և հարազատ դստերն իւրոյ Մանիշա-
կին, և այլ ամենայն արեան մերձաւորացն՝ յիշատակ անջինջ և գանձ
անկողոպտելի...։ Եւ ետ գրել իմոյս տկարութեանս եռանդեա սիրով և
փափագելի բաղձմամբ ի սէրն անմահ փեսային, վասն քաղցր դատաս-
տանի արդարադատ դատաւորին և անթառամ պսակին, զոր պարգևեսցէ
նմա տէր աստուած։

Դարձեալ, աղաչեմ զհանդիպողքդ այսմ հոգէնորոդ Աւետարանիս, զի
յիշեսջիք ի յապենիաղն աստուած զՍիրական ստացաւղ սորա, և զՄա-
նուշակ, և զԳուլ, և զծնաւղսն իւրեանց, և զիս՝ զանարժան գրիչս զԴաւիթ
էրէց, որ այրեալ եմ ի հաղբից մեղաց, և զհարազատ որդիս իմ զԱլէք-
315բ սիանոս դեռաբուսիկ, և զծնաւղսն իմ զՏէրտէր և զը||Գոնցայ, և զեղբարսն
իմ. և սղալանաց և խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի կար մեր
այս էր...։

## 439
## ԺԱՇՈՑ
### Երևան 958

գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Արարադեան գաւառ, Ուրծ գիւղ

354բ ...Ըստ նմին ապինակի հոգիահրաշ վարդափթիթ անուշահոտ բու-
րաստանիս ի խնդիր եղեալ հեզահոգի և սրբասէր Մեսրոպ կրաւնաւոր,
ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ ծնաւղաց իւրոց։

* Այս անունները գրված են այլ ձեռագրով։

Գրեցաւ ձեռամբ յոգնամեղ և անիմաստ Խաչատուր գրչի, ի թվականու-
թեանս հայկազեանս տումարի ՋԻԲ. (1473), ի հայրապետութեան Հայոց
տեառն Արիստակիսի յաթոռ սուրբ էջմիածնի, և ի թագաւորութեանն
355ա ||Վրաց մեծին*, և ի ղանութեանն Հասան-բէկին, թոռն Աւթմանին: Կա-
տարեցաւ ի հոյակապ և ի հռչակաւոր գաւառս Արարադեան, ի գիւղս որ
կոչի Ուծ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբՍտեփաննոսիս,
և ի հայրապետութեան տէր Մանուէլ արհեպիսկոպոսի**։

Ի խնդրոյ և յարդեանցս երջանիկ և սրբասէր Մեսրովբ աբեղայի...։
Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ կարդալով կամ աւրի-
նակելով, յիշեցէք... զհայրն իմ Մաղթում, և մայր իմ Մելիք-խաթուն,
եղբայրն իմ Վարդիկ, և Մկրտիչ կուսակրաւն աբեղայն, և Մխիթար, և
զայլ ամենայն մերձաւորսն մեր, և տէր Յովհաննէս կուսակրաւն աբե-
ղայն, և հանգուցեալ եղբաւրն իմ Ըստեփանոս սարկաւագին, Գալբստին
և Սարգսին, և արհի և պատուական հայրապետի, որ Ըստեփանոս ար-
հեպիսկոպոսի, որ զթուղթս շնորհեաց մեզ, որ և եղև հայր ամենայն
355բ կրաւնաւորաց և ժողովրդ||եան, հեզ, խոնարհ, հանդարտ, սրբամիտ,
սրբասէր։

Եւ աստուած, որ առատ է ի տուրս և ձեզ, յիշողացդ և մեզ յուսողացս առ հասարակ ողորմեսցի, ամէն։

Ընդ նմին և զՅակոբ վարդապետն։

440

ԳԱՆՁԱՐԱՆ

Փիրղ. № 6273, էջ 316, Եւդոկիոյ ս. Երրորդութիւն եկեղեցի

գրիչ՝ Մատթէոս
վայր՝ Եղեգիս

...Վասն որոյ ես՝ անպիտանս ի պիտանեաց և անարգս ի փառաւորաց, հէք, փանաքի վտիտս Մատթէոս, փափագեցայ այսմ հրաշափառ Գանձարանիս և ծիւրեալ, ծերացեալ անձամբ գրեցի զսա՝ ութսունամհայ գոլով, առ ի յիշատակ գոլ կենդանի մեռելոտի, մեղսամահ մեղուցեալ մահապարտ հոգւոյս, բարեխօս ունելով զամենայն սուրբս, որ աստ գծագրեցան, և ի վայելումն հարազատացն իմ վանականաց կրօնաւորաց՝ Իգնատիոսին, Եսայւոյն Նաղաշի, և եղբարց իւր Թադէոսի և Ստեփանոսի...։ Եւ ի Քրիստոս հանգուցեալ հօրն իմ յիշատակ բարեաց՝ պարոն Սուլթանին, և Իկիդ աղին, և մօրն իմ պարոն Թուխթէին: Գրեցաւ գիրքս յԵղեգիս ի թուիս Հայոց ՋԻԲ. (1473)։

---

* Անվան լրացման համար տեղ է բաց թողնված. այս տարիներին Վրաստանում թագավորում էր Բագրատ Զ-ը (1466—1478):

** Շարունակությունը գրված է այլ ձեռագրով:

## 441

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 9431**

Նկարող՝ Եսայի
վայր՝ Հերմոնի վանք

336ա ...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԻԲ. (1473), ի նա<ւա>հանգիս Վայո-ձորո, ի վանս Հերմոնի, ընդ հովանեաւ անբարձ յուղէս(՞) և գերաշնորհ սուրբ Լուսաւորչիս և սքանչելայգործ սուրբ Նշանացս, յառ ոտն շնորհազարդ հրաբունւոյս մերո Սարգիս վարդապետիս և այլ միաբանիցս, որ աստ կան հաւաքեալ, ձեռամբ Եսայի նկարողի սորին, ի լաւ և ընդիր աւրինակէ։

Արդ, աղաչեմք զհանդիպողս յիշել զմեզ...։

336բ. Նաև ըստացող այսմ... սուրբ Աւետարանիս զաստուածասէր յայրն Յետգար աղին, և կողակցին Խաթունին, և զանառիկ մեծութիւն սորա և զանհամամետ բարձրութիւնն, ըստացաւ սա իւր անկողոպտելի գանձն և աննուազ փարթամութիւնն յաւիտենական, և յիշատակ անշինջանելի և անծերանալի հոգեոր հաւրն մերո Եռգար աղին, և կողակցին Խաթունին, և հրապոնի Սարգիս վարդապետին, յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, և յամենայն յարեան մերձաւորաց՝ կենդանեաց և հանգուցելոց, առհասարակ, ամէն։

## 442

### ՄԱՅՐ ՄԱՇՏՈՑ

**Փիրգ. 6273, էջ 315, Մարգուանի եկեղեցի**

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Խլաթ

... Արդ, գրեցաւ սուրբ Մաշտոցս, որ գանձ է պատուական, մահու կենաց է պիտոյական, քահանայից ՚ւ աշխարհական, ամէն իրաց սա գայ ի բան։ Եւ ես Յովանէս անարժանս գրեցի զսա ի ՋԻԲ. (1473) թուական, ի քաղաքիս Խլաթ, ընդ հովանեաւ սուրբ Գէորգ զօրավարին, և ԺԱ. խորանին, և սուրբ Վարդանին, և խնդրակատար Աստուածածնին, ի կաթուղիկոսութեան տեառն տէր Ըռքստակէսի, և ի թագաւորութեան Հասան-բէկի:

Արդ, որք հանդիպիք սուրբ Մաշտոցիս կարդալով կամ օրինակելով լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք ստացողի գրոցս՝ պատուական իմաստուն և հեզահոգի կրօնաւորին Գրիգորի գրոց աշակերտի և ծնողաց նորին...։ Յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զանարժան գծողս զՅովանէս, և զծնողսն իմ զԿարապետ քահանայ և զԹաղամելիքն...։

Նկ. 17. Մի էջ Ցակոբ գրչի հիշատակարանից։

443

ԲԺՇԿԱՐԱՆ

Երևան 415

ա

գրիչ՝ Ցակոբ որդի Մարգիանի
վայր՝ Սամցխու երկիր

20ᵖբ Ո՜վ ընթերցողք՝ բժ[ի]շկք և յիմաստնայսէրք, զի գիտացաք, որ յոյժ բժշկէ գիրքս, և ով որ բժշկէք և բժշկիք՝ կենդանութիւն շնորհեցէք և խընդ-

*րեց[էք] յաստուածոյ խոջայ* Էվաչին, *որ անուանեն բժ[ի]շկ* Սամցխու, *և որդոյ իւրոյ* Մուրատբախշին, *և ինձ սուտանուն* Յակոբ *իրիցիս*...։

Բ

215ա ... *Զշահավէտ և ղուժ աւգտակար գիրքս այս, որ է քննութիւն բնութեան մարդոյս և նորին ղանաղան կրից և պատճառանաց հիւանդութեան*
215բ *ցաւոց, զոր դրեալ էր համայշիրակ || եղբայ[ր]ն մեր* Մարգարէ *վարդապետն, աշխատութեամբ թարգմանողի* Գրիգորիսի:

*Արդ, որք հանդիպիք սմայ կարդալով կամ աւրինակելով՝ կենդանութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ խոջայ* Էվաչին, *որ է բժիշկ* Սամցխու *երկրիս կարողութեամբն աստուծոյ, և որդոյ իւրոյ* Մուրատբախշին, *զոր տէր աստուած պահեսցէ խաղաղութեամբ և ընդ երկայն աւուրս արասցէ, ամէն։*

*Արդ, գրեցաւ դիրք[ս] այս, որ է անուանեալ Մաղրայպատինս, որ թարգմանի ի հայ բառս բժշկարան, ի դուռս միջի վանաց սուրբ Աստուածածնիս, ի հայրապետութեան տէր* Ըղստաfիսի*, *ի թագաւորութեան պարոն* Ղաւրղաւրին, *ի եպիցկոպոսութեան տէր* Գրիգորի, *որ է առաջնորդ* Սմցխու *երկրիս, ի տանուտէրութեան պարոն* Ազրգին *և պարոն* Վարձելին: *Այլ ես<տէր>գրեցի դիրքս՝* Մարպիանի *որդիս տէր* Յակոբս, *որ յայսմ ամի ձեռնայդրեցայ։ Ա<հա>յլ թողութիւն արարէք սղալանաց գրքիս, զի յառաջի գիրն էր և դժարայդարձ, զի զամենայն մարդոյ զօդուածսն քննէ ի յարապ լեզուէն ի հայսն։ Եւ որք յիշման արժանի առնէք զմեզ յիշեսցէ և զձեզ Քրիստոս, յորժամ դայ դատողական յաթոռն իւր։ Եւ թողութիւն շնորհեցէք մեր և ձեր ննջեցելոցն ի Քրիստոսէ, ամէն։*

### 444

### ԱՄՍԱՑՈՅՑ ԳՈՒՇԱԿՈՒԹԻՒՆ

*Երևան 415*

*գրիչ՝* Պարաfս

220բ *Ի թվ. Հայոց ՋԻԲ. (1473), տրէ ի ԺԸ. (18), մարտի Ժ. (10), ես՝ մեղա[ո]ր գրչակս* Պարաfս**, *որ գրեցի զայս Ամսայցուց* Իսպին *համար։ Ով որ հանդիպիք կարդալով կամ աւրինակելով աստուած ողորմի ասցէք և թողութիւն մեղաց խնդրեցէք, և աստուած ձեզ և մեզ ողորմեսցի, ամէն։*

* *Հիշատակարանի գրության մերձավոր ժամանակը որոշվում է Առիստակեսի կաթողիկոսության տարիներով: Մ. Օրմանյանի ձեռքի տակ եղած թերի ու վիճելի տվյալներով Առիստակեսը ինքնուրույն կերպով աթոռակալել է 1463–1469 թթ.։ Սակայն մեր այս ժողովածուի հիշատակարանների ընձեռած տվյալներով նա կաթողիկոս է դարձել 1465-ին և մնացել է աթոռի վրա մինչև 1473 թ. (տես նախորդ հիշատակարանը)։ Հաջորդը՝ Սարգիս Բ.-ն հիշատակվել է սկսվում նույն այդ 1473 թվականից միայն (տե՛ս հաջորդ հիշատակարան)։*

*Այսպիսով բժշկարանի այս հիշատակարանը կարող է գրված լինել 1465–1473 թթ. միջև ընկած տարիներին, ամենայն հավանականությամբ 1473 թվականից մի քանի տարի առաջ։*

*Այս եզրակացությունը հաստատվում է նաև ձեռագրի վերջում, այլ գրչի կողմից ընդօրինակված «Ամսացոյց»-ի հիշատակարանից, որը գրված է 1473-ին (տե՛ս հշտկ. № 444)։*

** *Անունը գրված է տողամիջում։*

## 445

## ԾԱՇՈՑ

**Երեւան 4873**

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

ա

...Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց... տգետս ի գիտնականաց բազ-
501բ մամեղ Կարապետ սոսո||[անուն կրաւնաւո՞ր, որ ան]ունս ունիմ և գործս
ո՞չ, տեսի զը[սէր/|/ խ]ոջա Մըր[շին և եղբաւր նորա Շաֆարբ]էկին, զոր
[ունէր առ հող]եւորսն, յա տկար ան]ձամբս ///որ է՞ի] ՀԸ. (78) ամաց
/// ա]*մենակար[ող] զաւրութեամբն աստուծոյ կատարեցի զսա անջնջելի
յիշատակ ի դուռն սուրբ առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի, որ հանապազ
հրճուին. սովաւ սրբասէր սպասաւորք և ընտրեալ քահանայք տաճարի
սուրբ Առաքելոցս, և անմոռաց յիշմամբ յիշեսցին յերկնագնաց յաղաւթս
իւրեանց զյառաջյիշեցեալ ստացող գրոցս զխոջայ Մըրշէն, և զեղբայրն
զՇաֆարբէկն, և զծնաւղքն իւրեանց զՍտեփանոսն և զԳօհար-Մէլիքն,
զպարոն Ջանիբէկն, և զիւր ծնաւղքն զԱւետիսն և զԱզիզմէլէքն, և զամե-
նայն արեան մերձաւորսն...։

Եւ արդ, ես՝ ամենամեղ և անարժան ծառայ ծառայիցդ աստուծոյ,
բաղում աշխատութեամբ հասուցի զսա յաւարտումն ի քաղաքիս Վան,
ընդ հովանեաւ՝Նախավկայիս սուրբ Ստեփանոսի, և սուրբ Սահակայ
Հայրապետի, և սրբազան առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի, և սուրբ
Վարդան զաւրավարի, որոց՝ յիշատակ շինողաց սոցին աւրհնութեամբ
եղիցի, ի թուականութեան ազգիս Հայոց ՉԻԲ. (1473), ի հայրապետու-
թեան տեառն Սարգիս բարունապետի, որ յայսմ ամի նստաւ յաթոռ
սուրբ Լուսաւորչին, յառաջնորդութեան սուրբ ուխտիս Վարագայ տէր
Յովաննէս եպիսկոպոսի, ի թագաւորութեանն սուլթան Խասան-բէկի,
վասն որոյ բարեխաւսութեամբ ///

բ

285բ Յարութեամբ քո Քրիստոս, որդի աստուծոյ, ողորմեա ամենայն հա-
ւատացելոց քրիստոնէից, եւ առաւել ստացողաց սուրբ գրոցս խոջա
Մարշին, և եղբաւրն Շաֆարին, և ծնողաց նոցին Ստեփանոսին, որ յայսմ
ամի առ աստուած փոխեցաւ, պարոն Ջանիբէկին, և իւր ծնողացն, և
Կարապետ գծողի, ամէն։

Թվկն. ՉԻԲ. (1473)։

Խասան կոտրեցաւ ի Չիթաղէն, և ոչ գիտեմք զինչ լինելոց եմք։

գ

206ա Զսաացող սուրբ գրոցս զխոջայ Մըսըրշէն, և զեղբայրն զՇաֆարբէկն,
և զանեբրն զխոջայ Բախշայիշն, և զզոքանչն զԱզիզ-Խաթունն յիշեցէք
ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք։

* Էջի վերին եզրը պատռված է։ Առաջին 8 տողերից մնացել են միայն մի քանի տառեր. հնարավորին չափ, ըստ իմաստի, վերականգնեցինք՝ կորուստը նշելով ուղղագիծ փակագծերում։

Դ

*Նկարող՝* Կարապետ

Զ Կարապետ *նկարողս յիշեցէք ի Քրիստոս և աստուած ըզ[ձեզ յիշէ]**։

**446**

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 5007**

*գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Բերկրի

*... Արդ, գրեցաւ քարոզութիւն սուրբ Աւետարանիս Քրիստոսի աստուծոյ մերոյ յամի ծնընդեան փրկչին հազարերորդի չորսհարիւր և քսանե-*
355բ *րորդի**, և ի թվականութեան արեթական տոհ||միս տումարի* ՋԻԲ.
*(1473)-երորդի, յընտիր ավրինակաց սրբոց հարցըն գըրեալ։ Գրրեցաւ սուրբ Աւետարանս տէրումեան ի քաղաքս* Տարբերունի*, որ կոչի* Բերկրի*, ընդ հովանեաւ սրբոյն Գէորգեա ղաւրավարին, և ընդ հովանեաւ սուրբ ուխտիս՝ լուսազարդ և ի գեղեցկաեղց, աստուածընկալ և քրիստոսաբնակ անապատիս տէր Յուսկայ որդւոյ, և սուրբ մաւրն լուսոյ՝ տիրամաւր Աստուածածնի կուսին, և սուրբ Կարապետին, և սուրբ Յարութեանն, և յառաջնորդութիւն* Մկրտիչ *քաջ և արի րաբունապետին, և ի հայրապետութեանն տէր* Յովանէս *արհէեպիսկոպոսի, ձեռամբ յաւգնամեղ և սխալագիր գրչի՝ սուտանուն քահանայի* Կարապետի: *Ողորմութեամբ տեառն*
356ա *սկսա և շնորհիւ նորին կատարեցի || ի խնդրոյ բարեսէր և իմաստուն տանուտրոչն ըռէս* Մարտիրոսին, *և եղբարցն* Ստեփանոսին, Մուրադին *և* Յովանիսին, *և քեւերն* Շանփաշին, *և ծաղկեալ զաւակաց նոցին* Ղաչին *և* Կարապետին, *ամէն։*

*Արդ, յերես անկեալ պաղատիմ մանկանց սուրբ եկեղեցւոյ, և աղաչանս բազմապիսիս առաջի վերածանողացդ մատուցանեմ, յիշատակել բարի կամաւք և սեռն սիրով ի պատկանաւոր խընդըրուածս զստացող սուրբ Աւետարանիս՝ զաստուածասէր և զբարեպաշտ տանուտէրն* զՄարտիրոսն, *և ըզծնաւղսն իւր* զՄկրտիչն *և* զԱսըլմէլիքն, *և ըզկողակիցն իւր* զՅուստիանէն, *և զաւակս նոցին ըզ*Ազնաւուրն, *և* զՋանփաշէն՝ *ըզհան-*
356բ *գուցեալսն ի || Քրիստոս։*

*Դարձեալ, աղաչեմ յիշել ի տէր զըռէս* Մարտիրոսն՝ *զհանգուցեալսն ի Քրիստոս, և զեղբարս նորին* զՅովանէսն, *և* զՍտեփանոսն, *և* զՄուրատշէն, *և զկողակից նոցին* զՅուստիանէն, *և* զՄարգարիտն, *և* զԲուրսէն, *և* զԳաւճարն, *և զհանգուցեալ զաւակսն* զԱզնաւուրն, *և* զՄանուկն, զՋանփաշէն, *և* զՍալթանն, *և* զՄկրտիչն, *և* զԲարճաւրդարն, *և զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիս և զհանգուցեալսն, ամէն։*

*Ընդ որս և ես՝ անպիտանս ի մանկունս եկեղեցւոյ սուտանուն քահա-*

---

* Գրված է 207բ էջի մեծադիր նկարի ցածի կապտավուն եզրի վրա, երկաթագիր տառերով։

** Համարում ենք գրչական սխալ, պետք է գրեր՝ «ևւթանասներորդի»։

նայս Կարապետ, որ սկսա, և գրեցի, և զարդարեցի ոսկով և ծաղկիւ զսուրբ Աւետարանս յիշատակ բստացողի սորայ, ամէն։

Արդ, երեսս անկեալ աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ ընթերցողք, յիշման արժանի առնել ղիս, և զծնաւղսն իմ, և զամենայն արեան մերձաւորսն՝
359ա ղկենդանիս || և զհանգուցեալսն, ամէն։

Եւ զհոգևոր հարքն մեր զՊետրոսն և զտէր Մինասն՝ զուսուցիչքն իմ և զվարպետքն իմ, որ բաղում աշխատանք և երախտիք ունին ի վերայ մեր, զոր տէր աստուած հանդուացէ զհոգիս նոցա ի դասս լուսեղէն, ամէն*։

## 447

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Երևան 7209*

գրիչ՝ Կարապետ Բերկրցի

ա

33բ Զյետինս ի գրչաց և զառաջինս ի մեղաւորաց՝ կրկնավէր Կարապետ Բերկրցիս** աղաչեմ յիշել ի տէր, և աստուած ըզձեզ յիշէ յիւր միուսանգամ գալուստն, ամէն։

բ

65բ Ո՛հ, ո՛հ, ո՛հ։
Երիցս եղկելի և ողորմելի,
Մին բան չունիմ պատասխանի,
Մրնայ ամաւթն ինձ սոսկալի,
Եւ գերեղոյս տէրն ողորմի։

## 448

## ԱԻԵՏԱՐԱՆ

*«Թորոս Աղբար», Բ., էջ 420*
*Տիգրանակերտ, ս. Սարգիս եկեղեցի*

գրիչ՝ Մանուէլ
վայր՝ Երզնկայ

Յիշատակ Յոհաննու քահանայի ի գեղջէն Ուռոյ, և կենակցին իւրոյ Թանուխին, և զաւակին Խաչատուր սարկաւագին, և ծնողաց Վարդապե-

* Ձեռագրի 360ա էջի վրա կա 1541 թվականի մի հիշատակագրություն, որի շարունակությամբ, նույն ԺԶ. դարի ձեռագրով, գրված են մեծ կարևորություն ունեցող հետևյալ տողերը. «Յիշատակ է սուրբ Աւետարանս սօլեար ասնաֆին, ձեռամբ ուսթայ Ալխասին, որ եա [ի] գու[ռ]ն Գետրոս առաքելոյն, և Կռանոց սուրբ Աւետար[ան]ին, և սբբոյն Մինասայ, և Սարգսի զօրավարին անջինջ յիշատակ։ Ցիշեցէք և աստուած-ողորմի ասացէք, ամէն»։

Հիշատակագրության մեջ նշված սօլկար ասնաֆ-ը՝ սոլ կարողների համքարությունն է։ Որքան մեզ հայանի է, այս ամենահին ուղղակի վկայությունն է միջնադարյան հայկական քաղաքներում համքարական կազմակերպության գոյության մասին։

Մեծ հավանականությամբ պետք է ենթադրել նաև, որ սօլկարների այս համքարությունը եղել է հենց ձեռագրի գրչության վայրում՝ Բերկրի քաղաքում։

** Ամենայն հավանականությամբ նախորդ հիշատակարանի գրիչն է։

տին և Հռիփսիմէին, ի գիւղն Ուռիկ, ի դրան սուրբ Ստեփաննոսին և սուրբ Սիմէոնին։ Գրեալ ի թվ. Հայոց ՋԻԲ. (1473), ձեռամբ Մանուէլ երիցու, ի թագաւորութեան Հասան պարոնին, ի հայրապետութեան տեառն Սարգսի եպիսկոպոսի, ի գառն և յանբարի ժամանակս, ի գաւառս Երզնկայ, ի քաղաքս, ի դուռն սուրբ Աստուածածնիս, Սևաստուբէգ դրան։

Յիշեցէք զՄանուէլ երէցն, զվարպետն՝ զՍամուէլ պատկերահանն, և զհայրն զՏիրացու քահանայն...։

## 449

## ՃԱՌԸՆՏԻՐ

Լ8Վ 712, Վան, Նորաշէն

գրիչ՝ Իսրայէլ
վայր՝ Սղերդ

...Մանաւանդ զստացող դրոցս զՂարղան քահանայն, և զծնողսն իւր, և զորդիքն զՅովսէփ և զԿիրակոս քահանայքն, և կարդացողաց և լսողաց, և Իսրայէլ մեղաւոր գրչիս, և իմոցն ամենայնի՝ ՀԲ. (72) ցեղիցն. ի դրախտէն յելիցն Ադամայ կենաց մինչև ի վախճանն Մովսէսի ՅՈ. և էԾ. (6670), և ի մահուանէն Մովսէսի մինչ ի Քրիստոս Ռ. և ԴԾ. և ԿԸ. (1468) ամ է, և ի Քրիստոսէ մինչև յայս, որ գիրս գրեցաւ Ռ. ու ԴԾ. ու ԺԸ. (1418˝) ամ է, զի ՋԻԲ. (1473) ամին գրեցաւ, և աւր ուրբաթին, ի հոռի ԺԵ. (15)։

Որոց բարեխաւսութեամբն ողորմի Քրիստոս աստուած աւրինակ տըրողին խոջա Մսեճին, և իւր ծնողացն, և ազգականացն, ամէն։ Սա բազում արդիւնս արար ի կենդանութեան իւրում ի դրունս սուրբ եկեղեցւոյ՝ ի գրոց և ի ջուրջառաց և ի խաչ աւրհնելոյ, և դէմ եդեալ գնաց ի յԵրուսաղէմ, և շրջեալ ի տնաւրինական տեղիսն Քրիստոսի, և ուրախութեամբ կատարեալ զուխտն իւր, զոր ցանկայր ի վաղուց հետէ, և արար անդ ողորմութիւն կարաւտելոց, և ի յաւուրս տաւնի սուրբ զատկին ետ չումետրացն ինչս ծածկաբար և եմոյծ ի սուրբ Յարութիւն, որ տեսին զլոյսն պայծառ, որ բուրէր ի գերեզմանէն Քրիստոսի ի խնգրոյ Լուսաւորչին Հայոց սրբոյն Գրիգորոյ, և կատարեաց զուխտ իւր, և ել ուրախութեամբ ի ճանապարհ իւր, և եկեալ եհաս առողջութեամբ ի հայրենական գաւառն՝ ի քաղաքն Սղերդ: Եւ դեռևս փափագ բազում ունէր ի մտի վասն սիրոյ անանց հանգստեան։ Եւ ասացին և ծանուցին, թէ կայ ի յայս տեղիս գիրք մի, որ Ոսկիփոր կոչի, և յեդաւ ի սրտի՝ թէ պիտի որ տեսանեմ զնա, և յուղարկեաց խնդրել, և ոչ ետուն։ Եւ ապա ջանաց բազում աշխատանաւք և արդեամբք, և էառ և ուրախացաւ հոգով և մարմնով։ Եւ ապա սկիզբն արար[աք] դրելոյ գրոյս՝ որ Ոսկիփոր անուանի գիրքս, զի ամենայն գրոց ի յինքն հաւաքեալ ունի՝ յԱւետարանէ, ի Ճառէ, ի Խէրանց վարքէ, ի մեղսաքաւիչ և յամենայն սրբոց պատմութեանց՝ զպայծառն, զգովելին և զուրախալին կայ ի ցանգս գրոցս, և թէ կամիս գի՛տ ի հասաբագիրն և ուրախացիր։

## 450

## ՈՍԿԵՓՈՐԻԿ

Վիեն. 146. Տաշ. Ցուց., էջ 448—449

Ա. գրիչ՝ Ըռստակէս
վայր՝ Երուսաղէմ

ա

106բ Զմեղապարտ գրիչս՝ զսուտանուն քահանայ Ըռստակէս աղաչեմ յիշել ի տէր սուրբ աղաւթիւք ձերովք, և զծնօղսն մեր և զեղբարս և զամենայն ազգայինս, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

բ

87բ Արդ, աղաչեմ չմեղադրել, զի ձմեռն էր և թէն, և ես տգէտ և չեմ ծանաւթ դրոց։ Յիշման արժանի համարել աղաչեմ ի տէր։

Բ. դրիչ՝ Աւետիք

գ

304բ—305ա Արդ, պայծառ գիրքս ցանկալի,
Եւ զանազան պտղով ի լի
Դրախտ է սա ախորժելի
Ու ծաղկաւէտ բուրաստանի...
Առակարան գիրք կոչեսցի։
Գրեցաւ ձեռամբ անարժանի,
Որ Աւետիք անուն կոչի,
Սուտանուն եպիսկոպոսի...
Ի հայկազեանն թուականի
Տասնեւութն* յիսնեկի՝
Քսանեւերկու** յարաբարդի (1473),
Յերուսաղէմ սուրբ քաղաքի,
Ի վանս սուրբ Աստուածածնի,
Մերձ առ դրանս Բեթխահեմի,
Միշտ թողութիւն մեղաց խնդրի...։
Այլ և եղբարցս անապատի,
Որ են բնակեալ յայս սուրբ տեղի՝
Արիստագիսի և Մելքիսեդեկի
Եւ Յակոբ ճգնաւորի,
Յիշողացդ ամենայնի.
Եւ գիր մեղաց ձեր ջնջեսցի, ամէն։

## 451

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

ԲՑՎ 226, ԼՑՎ 926

Կատարեցաւ երանելի վկայն Քրիստոսի սուրբն Դաւիթ [Խարբերդցի] ի մեծ թվականին Հայոց ՋԻԲ. (1473), յամի Կոյս կոչեցելոյ, յորում տարւոջ և զգիրքս դրեցաք յաւուր կիրակէի, ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ։

* Բնագրում՝ «ԺԸ»։
** Բնագրում՝ «ԻԲ»։

## 452

## ՇԱՐԱԿՆՈՑ

*«Մանզումէի Էֆքեար» լրագիր, 1869 թ. դեկտեմբերի 21, № 1116**

*գրիչ՝* Կիրակոս վարդապետ
*վայր՝* Ջէյրո՞ւն

*Արդ, խնդրեմ զի յիշեսջիք յաղօթս ձեր զնախնի հայրն իմ և զիշխանն մեր* զՀերում, *որ զօրապետ բանակաց* Հայոց, *առ թագաւորօք* Կոստանդնու *և* Լևոնի *վերջնոյ։ Սա Լր [որ] սպան ղրաշ զօրապետն եգիպտացւոց* Էօմէր *ի դաշտն* Ատանայոյ, *յաւուրս* Կոստանդնու *արքային, և արար յաղթութիւն մեծ։ Սա էր որ սպան* Ալի *զօրավարն եգիպտացւոց յաւուրս* Լևոնի *վերջնոյ ի դաշտն* Սսոյ: *Յետ այսորիկ ես բազում քաջութիւնս առնելով ի* Կանչու, *յետ գերութեան* Լևոնի, *սպանաւ նենգութեամբ ձեռամբ մատնիչ* Գրիգորի, *որ պատրեալ ի բանից սուլտանին՝ ոչանանելով* զՀերում *և արձակելով զորդի սուլտանին, որ էր գերի Հայոց՝ ձեռամբ* Զարմանուճի *տիկնոջ, եղև մատնիչ և դաւաճան ազգին մերոյ...։ Յիշեցէք զկին նորա* զԶարմանուճի, *զի սա ես յետ գերութեան արքայի մերոյ, ի գիշերի գաղտ արձակեալ ի բանակն եգիպտացւոց՝ արար կոտորած մեծ ընդ առն իւրում* Հերմոյ, *և ձերբակալ արարեալ զորդի սուլտանին։ Բայց ապա տեսեալ, թէ մատնիչք սպանին* զՀեթում, *և կամին ես սպանանել զինքն, և արձակեցին զարքայորդին՝ փախեաւ ի լերինս* Կոկիսոնի *և* Ուլնիոյ, *և անդ թափառէր ամս հինգ։ Յետ հինգ ամաց ժողովեալ ի լեռնականաց արս երեքհարիւր, էառ ընդ որդւոյ իւրում* [Գէորգեայ] զԿապան, *և ազատեաց զազգն ի ձեռաց այլազգեաց ամս վաթսուն և հինգ։ Զքաջութիւն սորա և զառն իւրոյ* Հեթմոյ *և զորդւոցն իւրոց են դրեալք ի գիրս յիշատակարանին վանաց սրբոյն Կարապետի, և ի վանս սրբոյն Ստեփաննոսի որ ի* Կանչու, *և ի վանս* Յոնքզու. *և զամենայն անցսն, և զպատերազմսն, և երկրաշարժն մեծ, և սովն մեծ, և զմահտարաժամն մեծ են դրեալք նոյնպէս։ Զայսոսիկ միայն դրեցան, զի մի կորիցեն անուանք նախահարցն իմոց, զի մեր օճախն է իջեալ ի* Հեթմոյ *և ի* Զարմանայ:

*Յիշեցէք և զիս՝ զմեղաւոր ծառայ ձեր զտէր* Կիրակոս *վարդապետ, և զեղբայրն իմ զտէր* Յովհաննէս *քահանայն* Կանչուի, *և զորդիսն նորա* զՀեթում *և* զԼևոն.:. *և դուք յիշեալ լիջիք ի տեառնէ, ամէն։*

*Գրեցաւ Շարականս այս ի թուին Հայոց ՋԻԲ. (1473), ի վանս սրբոյն Ստեփաննոսի, յետ աւերման սրբոյն Կարապետի...**։*

---

* *«Մանզումէ» թերթի նշված համարը չկարողացանք գտնել մեր գրադարաններում։ Հիշատակարանը հրատարակում ենք Ղ. Փիրղալեմյանի («Նշխարք պատմ. Հայոց» հտ. Բ-Երևան. ձեռ. № 4513, էջ 209—210), Մ. Տէր-Մովսիսյանի (Հայերեն ձեռագրերի անտիպ ցուցակ) և Ղ. Ալիշանի («Սիսուան», էջ 184, 194, 227, 542), կատարած ընդօրինակությունների և քաղվածքների հիման վրա։*

** *Մեր հաստատ համոզմամբ հիշատակարանի տվյալները կեղծ են։ Դրանք հորինել է կամ Կիրակոս վարդապետը, կամ էլ նրա հաջորդներից Ղուկաս վարդապետը (վանահայր Զեյթունի ս. Կարապետի), որը 1557 թվականին նորոգելով գիրքը, իրեն ես համարում է Հեթումի և Զարմանուհու զարմից, հիշատակելով նաև իր եղբորը՝ Մատթեոս քահանային և նրա որդիներին՝ Սարգսին և Լևոնին։ Ղ. Ալիշանը օգտագործելով հիշատակարանի տվյալները, նույնպես կասկած է հայտնում նրանց արժանահավատության մասին։*



*ՋԻԳ* *1474*

## 453

## *ՌԱՄԿԱԿԱՆ ԳԻՐՔ ԱՄԻՐԴՈՎԼԱԹԻ ԱՄԱՍԻԱՑԻՈՑ*

*«Երկրագունդ», 1884 թ., էջ 551 – 552*

*Հեղինակ՝* Ամիրդովլաթ Ամասիացի

*Յանուն աստուծոյ գթածին և ողորմածին։ Ի սկիզբն բանիս այս իմաստութեան արհեստիս, որ հաստատեցին իմաստասէրքն ողորմութեամբն անեղին և անմահին բարձրելուն, որ զարարածս ստեղծեց՝ զծով և զցամաք, զհրեշտակք և զմարգ, զհոգի և զշնչաւոր և զանասուն և զգազան, զթռչուն և զսողուն, և փառք արարածոցն աստուծոյ, ամէն։ Եւ կրկին գոհանալով փառաւորենք զմիանցնական սուրբ երրորդութիւն զհայր և զորդի և զսուրբ հոգին, և հաւատամ զաւետումն Քրիստոսի, և զծնունդն Քրիստոսի, և զմկրտութիւն Քրիստոսի, և զխաչելութիւն Քրիստոսի, և զաստուածապէս յարութիւնն և զհամբարձումն Քրիստոսի, և զնովին մարմնով զգալուստն միւսանգամ, և զդատաստանն յաւիտենական հաւատամք։ Եւ կրկին գոհութիւն միասնական սուրբ երրորդութեան, որ շնորհեց մեր Հայոց ազգին զսուրբ Գրիգորիս Լուսաւորիչն մեծ Հայաստանեայց, և առաջնորդ եղև լուս գիտութեան Հայոց, և լուսաւորեց զամենայն տիեզերս Հայաստանեաց հրամանիւն աստուծոյ։ Եւ գոհանալով փառաւորենք զարարիչն աստուած, որ յայտնեց զսուրբն Սահակ Պարթեւ ի յազգէն Լուսաւորչէն, որ յայտնեցին հետ սրբոյն Մէսրոպ վարդապետին զհայ գիրն և թարգմանեցին զամենայն հին և նոր կտակարանքն, և զարտաքին զիմաստութիւնքն, և զքերականութեան արվեստն, և զաստեղաբաշխական և զերկրաչափական և զբժշկական և զռամկական և այլ բազում արվեստնի։ Եւ ի վերջին դարուս, որ նվազել էր Հայկազուն ազգս///* կաթողիկոսութեան տէր* Սարգսին *և ի հայրապետութեան տէր* Յովակիմայ *արհիեպիսկոպոսին, ի մայրաքաղաքն ի* Կոստանտինոյպոլին, *ընդ հովանեաւ սրբոյն Նիկողայոսի սքանչելագործին, և ի թուականութիւնքն Հայոց ՋԻԳ. (1474) ամին, ի մայիս ամսոյ հռոմայեցոց ԻԶ. (26) աւուրն։ Եւ թարգմանեցաւ գիրքս ռամկական ի տաճիկ լեզվէ ի հայ լեզու ձեռամբ անպիտան և անիմաստ ծառային աստուծոյ* Ամիրտովլաթ *բժշկին։ Եւ որք կարդայք և կամ աւրինակէք թողութիւն խնդրէք ծառայիս աստուծոյ և աստուած յիշէ ի միւսանգամ գալուստն, ամէն։*

---

* *3 տող անընթեռնելի։*

## 454

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

**Երևան 6268**

գրիչ՝ Ջաքէոս
վայր՝ Վայոց-ձոր

ա

11ա *Քրիստոս աստուած լուսաւորեա զամենայն հոգի հաւատացելոց քրիստոնէից, եւ առաւել զստացողի սուրբ գրոցս* Մեսրոպ *նորաբողբոջ աբեղայի, և ծնողաց նորին* Մախտումին *և* Մելիքին, *և* Մխիթար *քահանայի, և* Մկրտիչ *դեղեցկատեսիլ սարկաւագին, և ամենայն արեան մերձաւորացն, ամէն։*

*Ընդ նոսին և մեղաւոր գրչիս* Ջաքէոսիս, *և իմ ծն[ողացն], և կարդացողաց և լսողաց։*

բ

68ա *Գրում ի, մուկն ցեթեց ի վերայ լուսանցին։*

գ

72բ *Քրիստոս աստուած... ողորմեա ամենայն հաւատացելոց, եւ առաւել ստացողի սուրբ գրոցս* Մեսրոպ *քահանային, և ծն[ողացն]՝* Մաղթումին *և* Մէլիքին, *և* Մխիթար *քահանային, և ծնողաց, նաև* պարոնտիրին տէր Ստեփանոս* *արհեպիսկոպոսին, որ առաջնորդ եղև գրոցս և գթայր ի վերայ մեր, որպէս հայր ի վերայ սիրելի որդոյ. զոր տէր Յիսուս պահեսցէ զսա մեզ ընդ երկայն աւուրս ուղիղ վերակացութեամբ, և յետ ատեացս ելանելոյ ընդ Ոսկիբերանին դասակից և պսակակից արասցէ։ Ընդ նոսին և զմոխրիկ ծրողի սորա զ*Ջաքէոսի *և ծն[ողացն] իմ* Իբրիանոսին *և* Դաւբին։ *Քրիստոս լուսաւորէ զհոգի* Աբրահամ *քահանային և զաչքն խաւարեցնէ, որ վասն նորա նիաթին Ա. (1) տարի բոլոր զէս Բ. (2) ամիսս բռունք գրեցի տքտքալով։*

դ

175ա *Վա՛յ մեզ, վա՛յ մեզ, թէ որպէս լինիմք քրիստոնեայ, որ միայն խաւսաց ընկերին ոչ համբերեմք, ոչ թէ գանից և տանջանաց։ Եւս առաւել վա՛յ զմոխրիկ գծողս, որ իսկի չունիմ համբերութիւն. և զինչ լինիմ, վա՛յ, որ մին լուի կծելոյ ոչ համբերեցի և ապա զտողն լմնեցի։*

ե

202ա *Թէպէտ և ինքն կամեցօ ես չեմ հաւանիլ, թէ ի տռոտող մարտիրոսերն ոչ մերձենաին գազանքն, և զսա (զ*Իգնատիոս *հայրապետն) կերան***։*

---

* *Ընդգծվածը գրված է կարմիր թանաքով։*

** *Գրիչն իր տարակուսանքը հայտնել է Իգնատիոս հայրապետի վարքաբանության առթիվ, ուր ասված է, թե «Եւ իբրև հասին ի Հռոմ՝ մուծին զսուրբ հայրապետն ի թիատրոնն, և արկին զնա կերակուր Բ. առիւծուցն, և նոյն ժամայն հեղձուցին զնա և կերան»։*

Գ

222բ Այսաւր լուա դառնութեան ձայն, թէ եպիսկոպոսն մեր տէր Ստեփանոս անկեալ է ի ձիոյ. և ես խիստ սփռնեցա* և արտասուաւք խնդրեցի ի Նախավկայէս, զի բարէխաւսեսցէ առ տէր վասն կենաց անուանակցին իւրոյ, որ կրկին տեսանեմք զփափաքելի երես նորա։

Է

249բ—250ա ԶԹումա Նորաբողբոջ քահանայն յիշեցէք յաղաւթս, որ այսաւր երեկ ու ինձ երկու ձիթով բաղարճ եբեր, որ ես կերա. նաև զմայր նորա, որ աղարկեալ էր զայն մեծ-մեծ հացերն։

Ը

256բ Գիտեմ որ տոմս և գիր պակաս կայ յայս ճառս, ապա վկայ է աւրս, որ յաւրինակն չկէր, մի՛ մեղադրեր։

Թ

268բ Ո՜վ սուրբ կարդացող, ինձ հայնց թվաց, թէ բան կայ պակաս, թէ կարես նա բերան ասայ, թէ չէ նա վայ տուր զծոյլս, որ յայլ տեղ կամ յայլ գիրք որոնեցի ոչ։

գրիչ՝ Գալուստ

Ժ

370բ Սոցա աղօթիւքն ողորմի Քրիստոս Մեսրոբ քահանային և ծնօղացն, ևս առաւել պարոնտիրին տէր Ստեփանոսին և ծնօղացն, և նորին շառաւիղին տէր Գրիգորին և իւր ծնօղացն, և ինձ մեղաւոր Գալուստ սուտ գրչիս և իմ ծնաւղացն, և կարդացողաց և լսողաց, և Քրիստոսի փառք յաւիտեան։

Աւրհնեալ է արարիչն աստուած, որ զմեզ բարով թափեց ի յէս գրքէս, զի Բ. եղբարքս Է. (7) տարի էր, որ վերա ինք, Ռ. (1000) բռոմք պրծանք.

Դբիշցվր․ եբդըշվ**։ ռռմմ

ճ. հ. չ. ֆ. ⁝ | | · | | | : | | : | | | ' | :

Ժա

394բ Գ. տեղ է գրած՝ յ[Ս]ղեգիս, Հերմոնի վանք, Աստուածածնումն, էս տետրս///***

Ժբ

433ա Թողութիւն արարէք, ո՜վ եղբարք, մատս մանկաղով կտրել ի, հէնչանք կարացի գրել, փառք աստուծոյ։ Ա. (1) ոչխարի արիւն գնաց։

* Այս բառը լավ չի կարդացվում։

** Ծածկագիր այս տողը կարդացվում է «Գալուստ, Զաքէոս» (եթե միայն վերջից 4-րդ տառը «Գ»-ի փոխարեն՝ համարենք «Փ»)։ Շարունակությունը մեզ չհաջողվեց վերծանել։

*** Գրված է ներքին լուսանցքի վրա. հետագայում (կազմելու ժամանակ) լուսանցքը կտրել են, կտրվել են նաև վերջին մեկ կամ երկու բառերը։

ԺԳ

434բ—435ա Ըստեղս հասայ՝ բարկութիւնն նեյ ընգաւ. ացին* թէ Հասան-բէկ կոխւեցաւ, աւրինակն պահւեցաւ, գրողս խաստատեցաւ, տերտս չլմնեցաւ, վա՜յ մեզ։

ԺԴ

443ա Շնճաւոր չիրդում՝ (՜) իմ քիրն մեռաւ, իմ շքիլոն կոտրեցաւ, թողութիւն արարէք։

ԺԵ

454բ Ջէս տետրս ղրելիս խիստ դառնացա, վա՜յ,
Մէր չունի, Ա. քոյր ունի, էն էլ մեռաւ, վա՜յ,
Քանի միտս ընկնէր, գրիչս ձեռնէս վեր ընկնէր,
Խիստ կտրաւա ի ՚ւ չտեսայ, [վա՜յ]։

ԺԶ

464բ. Ողորմի Քրիստոս Սարգիս ըրաբումապետին։

ԺԷ

470բ Ո՜վ սուրբ Գէորգ. յայս կ[ե]անս պաաւհասէ փրկեայ, յայն կ[ե]անք՝ դժոխոցն, աղաչեմ զքեզ։

ԺԸ

473ա Իսկի չէց թողութիւն արարէք, կիրն գիտել չեմ։

ԺԹ

476բ—477ա Սուրբ Սարգսի պասին տցի ծոմ կենամ. ինքն գլուխս ման երէկ ու քիրն յերազի տեսայ ու խիստ դառնացայ, հէնձ, որ ձեռս թուլացաւ ու կաղամբարն վեր ընկաւ. Թողութիւն արարէք, ո՜վ եղբարք իմ սիրելիք**։

Ի

506բ—507ա Այս ճառս գրեցաւ
Ացին թէ տէրն վաղչանեցաւ
Եպիփանու դասաւորեցաւ.
Մեղաւորս հէնձ դառնացաւ,
Որ ձեռս թիլացաւ։
Սուրբ էր և սուրբս հանգեաւ,
Վայ ինձ թէ ինչ կամիմ լինիլ։

ԻԱ

516բ—517ա Ո՜վ ընթերցող եղբարք, աղաչեմ զձեզ, զի խոշորանաց գրոյս անմեղադիր լեր, զի ժամատում կու շինին, բան էի արել և ձեռս խամացել էր. յամենայն ժամ վարդապետն*** կանչէր և ես վռազեցայ... թէ տետրս լմնեմ։

Եւ թուական էր ՋԻԳ. (1474)։

* Իմա «ասացին»։

** Եվ իբրև, 477 և 478 թերթերի ներքին լուսանցքի վրա թանաք է թափված։

*** Հապավված է այսպես՝ «վրդպն.»։

### իբ

526բ *Ո՛վ եղբարք, թողութիւն արարէք, զի ժամատան փէտն ձեռիցս էր-ընկել, այս չափ կարացի զայս տետրս [գրել]։*

### իգ

537բ— *Ո՛վ եղբարք, գրոյս խոշորանացն անմեղադիր լերուք, զի ըշտապե-*
538բ *ցայ, թէ այս տետրէս խլըսիմ ու նրթամ ի յայլ տեղի, վասն այնորիկ, որ չտեսնելոյ բանն ոչ տեսում. ինձ թողութիւն արարէք։ Բաւ է իմաստից, որ դիտողն է։ Աւրհնեալ տէրն մեր Յիսուս Քրիստոս, ամենայսուրբ երրորդութիւնն։*

*ծաղկող՝* Աբրահամ

### իդ

353ա *Ո՛վ երջանիկ հայր Աբրահամ,*
*Վաշ և երանիս ես քեզ տամ,*
*Առ յիշատակս քո լամ և ողբամ։*
*Ես եղկելիս՝ սուտ* Աբրահամ
*Զքեզ տեսանելն յոյժ ցանկամ*
*Գերիս լինի արժան ///.*

### իե

542ա *Ո՛վ զինօոր Թ՚էոդորոս,*
*Բարեխօսեայ առ տէր Յիսուս*
*Տալ օգնութիւն մեղուցելոյս*
*Հասնիլ ի վերջ այս ծաղկոյս*։*

*օգնող՝* Յակոբ

### իզ

493ա *Այս էջս* Յակոբս *գրեցի* Մաքէոսի *աշակերտ, ով էջս կարդայ՝ զիս յիշեա**...։*

*օգնող՝* Սրապիոն

### իէ

528ա *Յիշեցէք զ*Սրապիոնս, *որ կէս էջս գրեցի զայս։*

## 455

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Փիրզ. 6273, էջ 320, Ականց աւան*

*գրիչ՝* Աստուածատուր
*վայր՝* Տփխիս

*...Սուրբ Աւետարանս գրեցաւ ի թուաբերութեան Հայոց տումարիս ՋԻԳ. (1474)։*

---

* *Ծաղկող Աբրահամի հիշատակագրությունները կարմիր թանաքով են։*

** *Այս նույն Յակոբի մասին 491ա էջի լուսանցքում կա հիշատակագրություն. «Այս տետրս Յակոբ վարդապետին է ծաղկած»։*

Ոհ և եղուկ և վայ է մեր լսելեաց, և վայ է մեր տեսանել աչաց. որ վասն մեղաց մերոց բարկացաւ անբարկանալին աստուած ի վերայ Տփխիս քաղաքիս. և էր խիստ մեծ մահ, որ ոչ կտրենք պատմել գրովք։

Այ, վայ է մեզ հազար բերանով։ Այն ահ եղև օրն և ժամ <վայ է մեզ հազար բերանով>, որ գալարէր սրտերս ի փորիս. որ մեր զաւակս հրեշտակ տեսանէր և մեզ ցուցանէր և խօսելով զարդար հոգին աւանդէր։

Երբ լուանէր՝ ճիչ և լալ քաղաք ընկնէր. ոչ աղբէր կարէր երթալ ի մխիթարել զեղբայրն*. անպէս ողբոյն ո՞վ կարէ պատմել։

Ի ամս հայրապետութեան տեառն տէր Սարգսի, և արհիեպիսկոպոսութեան մերոյ տէր Ղուկասի, որ յայսմ ամի շինեաց զանգակատուն բարձր և խաչ ի գլուխ նորա՝ ոսկի խնձորով, տէր աստուած ընդ երկայն աւուրս արասցէ..., և թագաւորութեան վրաց Բակրատայ։ Գրեցաւ սուրբ Աւետարանս ի քաղաքս Տփխիս, ընդ հովանեաւ սուրբ կաթողիկէ Աստուածածնիս, ձեռամբ անարհեստ գրչի Աստուածատուր անարժան քահանայի, ի խնդրոյ Դիլշատ տանուտէր բարեպաշտի։

## 456

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. 6273, էջ 318-319, ի Վէզիր-Քոփրուի եկեղեցի

գրիչ՝ Մելքիսեդ
վայր՝ Գուզարաց գաւառ,
Ուխտիք դղեակ

...Արդ, այս անմահական ըմպելոյ և անգիւտ մարգարտիս և ամենագով օրինակիս փափագող եղեալ սրբասէր և աստուածահաճոյ քահանայն Աստուածատուր, և ետ գաղափարել զսա ի ձեռն Մելքիսէդի անարհեստ գրչի, ի ժամանակս վերջինս, ի թուականութեանս հայոց ՋԻԳ. (1474), ի գաւառիս Գուգարաց, ի դղեակս Ուխտիք կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Կարապետիս և այլ սուրբ Նշանացս...։

## 457

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Փիրղ. 4515, էջ 211—212 (Նշխարք պամ. Հայոց, Բ.)

գրիչ՝ Մարգարայ
վայր՝ Վերին Վարազ

Փառք... որ ետ կարողութիւն մեղսամած և անարհեստ գրչի Մարգարայ մեղաւոր աբեղայի հասանել յաւարտ սորին... ի խնդրոյ բարեպաշտ և աստուածասէր տանուտիրոջն պարոն Ումեկին, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց յիշատակ իւրն և ծնողացն իւրոց Աւրանեին և Աւագունին: Արդ, գրեցաւ սա ի սուրբ և ի հռչակաւոր ուխտս ի Վերին-Վարազ, ընդ հովանեաւ սուրբ խորանացս, որ աստ կան կառուցեալ յանուն կենսատու Փրկչին, և աստուածընկալ սուրբ Նշանին, և Երկոտասան սիւն լուսոյն, որ էջ ի պատիւ սուրբ Խաչին, ի խնդրոյ սուրբ Ճգնաւորին

* Ղ. Փիրղալեմյանը սխալմամբ ընդօրինակել է «զեղբ այրն»։

Թօթկայ և ի պարծանս քրիստոնէից, և յայլ սրբոցս որ աստ կան, ի դառն և ի նեղ ժամանակիս, ի Թուաբերութեան Հայոցս ՋԻԳ. (1474)։ Զմարգարայ գրիչս յիշման արժանի արարէք, և զծնողսն իմ՝ զՄկրտիչ քահանայն և զՇնօճորն, զեղբայրն իմ զՅովհաննէս քահանայն, և զկողակիցն իւր զխոնձայն, և զքոյրն իմ զՆշխունն, և զհոգևոր եղբայրն իմ զխարտղանաղգեստ կրօնաւոր զԴալուստ աբեղայն Թաւրիզեցի, և զամենայն արեան մերձաւորս...։

Յիշեցէք յաղօթս ձեր զՈւմէկն, և զշոշ պապն իւր, և զհանիկն զԲէրամշէն, և զՍուլտանն, և զհոգևոր եղբայրն իմ զՄկրտիչ աբեղայն զՏշողեցին, և աստուած-ողորմի ասացէք, և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն*։

## 458

## ՄԱՇՏՈՑ

*Սեբաստիա, ս. Նշան 85, ՀԱ, 1928, սյուն. 339*

գրիչ՝ Երեմիա
վայր՝ Կոնբեր գիւղ

Գրեցաւ սայ ի Թուիս Հայոց ՋԻԳ. (1474), ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ։ Յիշեսշիք ի Քրիստոս զստացողն սորա Ջաւրան և զկենակիցն իւր Ցիման, որ ստացաւ զսա ի հալալ վաստակոց իւրոց յիշատակ իւր, և ծնողաց իւրոց, զդեռաբուսիկ որդին իւր զՈսկետունկն: Եւ զիս զԵրեմիա գծողս և զծնողս իմ աղաչեմ յիշել ի տէր և աստուած զձեզ յիշէ, զհայր իւր զԹաթոս, զմայր իւր զՓաշայ-Մելիքն, և զքոյրն իւր Սարդ-Մելիքն, և զդուստրն իւր զՓաշայ-Մելիքն, և զհանգուցեալսն իւր ի Քրիստոս, ամէն։ Եւ եդի զսայ ի Կոնբերն ի զեաւղն, ի դուռն սուրբ Սարգսի զաւրավարին։

## 459

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7991*

գրիչ՝ Յովանէս Մանգասարենց
վայր՝ Արճէշ

... Գրեցաւ տէրունական սուրբ Աւետարանս ի մեծ Թուականիս Հայոց ՋԻԳ. (1474) ամին. <յերկրորդում ամի> յառաջին ամի Նստելոյն յաթոռն էջմիածնի տէր Սարգիս սուրբ և մաքուր կաթողիկոսի։ Եւ եպիս-
236բ կոպոսք երկրիս մեր || Քաջբերունոյ՝ արին և իմաստունն վարդապետն Յովաննէս, և նորընծայ սուրբ հեզահոգի տէր Կարապետ եպիսկոպոս, զորս տէր աստուած յերկար ամօք պահեսցէ ի կամս և ի հրամանս աստուածային։

Արդ, ես՝ անարժան գրիչս Յովանէս աշխարհի երէց՝ անուամբ և ոչ գործով... ձեռնարկեցի ի սուրբ Աւետարանս և մեծաւ զգուշութեամբ գրեցի, վասն որոյ աղաչեմ զամենեսեան աստուած-ողորմի ասել անար-

---

* Ձեռագրի հետ Ղ. Փիրղալեմյանը ծանոթացել է 1881 թ., Սալմաստին մերձակա Ուլայ գյուղում։

*ժանիս, և ուսուցողին իմոյ մեծ րաբունոյն* Թումայի, *և մարմնաւոր ծնօղաց իմոց* Մանզա[սա]րին *և* Փաշային, *և ամենայն արեան մերձաւորաց իմոց, և աշխատողիս ի սպասաւորութիւն մեր* Ջուլալ-Խաթունի, *և ծնող-[աց նորա՞]...։*

*Գրեցաւ և աւարտեցաւ սուրբ Աւետարանս ի քաղաքիս* Արճէս, *ի դուռն սուրբ տաճարիս Գէորգեայ զօրավարիս. Ե Քրիստոսի փառք յա-վ[իտեանս, ամէն]...։*

237ա *Դարձեալ, կրկին յիշեցէք առ աստուած զսացացւղ սուրբ Աւետարանիս* զԱստուածատուրն, *և զեղբայրն իւր հարազատ՝ զհանդուցեալն ի Քրիստոս* զՄկրտիչն, *և զքոյրն* զՄարգարիտն, *և* զՄէճրինիգարն, *և* զՄուարն, *և զհօրեղբայրն* զՀէրապետն, *և զորդին* զԽաչատուրն, *ե զքաւրի ամուսին Աստուածատուրին՝* զՍիրա-Խաթունն, *և զծաղկեալ թոռունքն՝* զԴարմանշէն, զՏղապարոնն, զՄիրանշէն, *և* զՄէլիքշէն, *և* զՍօլթան-Խաթունն, *և* զԽոնղֆարն, *և զհայր տղայոցս* զՅովանէս, *և* զՄկրտիչն, *և* զՄուրատշէն, *և* զՅակոբշէն, *և* զՇրւանշէն, *և զմօրքուերքն՝* զէլխաթունն *և* զԳերմարակէն, *և զորդին* զՅոհանէսն, *և զթոռն* զՍիմէոնն...:

*Գրեցաւ սուրբ Աւետարանս յիշատակ* Աստուածատուրն *և* Սիրա-Խաթունին, *և տուաւ ի դուռն սուրբ Ստեփաննոս նախավկայիս, ի վայելումն անձանց պատուական քահանայիցս տէր* Ստեփանոսի *և տէր* Մկրտչի:

237բ *Արդ, աւրհնութիւն ամենակալին աստուծոյ և աւրհնութիւն սուրբ Նախավկային և աւրհնութիւն սուրբ Աւետարանիս հանգիցէ ի վերայ աստուածաշէն գեղիս, որ կոչի* Մատղավանք, *և աւրհնեսցէ զտանուտէր և զառաջնորդ գեղիս՝ զոէս* Աւետշէն՝ *իւր ծաղկեալ որդովքն, զպարոն* Սօլթանշէն՝ *իւր զաւակօքն,* զՅոհանէսն՝ *իւր որդովքն,* զԴանարէկն՝ *իւր զաւակաւքն, և զայլ ամենայն ժողովուրդ գեղիս՝ զմեծ և զփոքր, զաղքատ և զհարուստ, զայր և զկին, զծեր և զտղայ. Հայր աստուած՝ զհայրքդ աւրհնէ, որդին միածին՝ զձեր որդիքդ աւրհնէ, հոգին սուրբ հանգչի ի հոգիս ննջեցելոց ձերոց, միութիւն սուրբ երրորդութեանն զամենեսեան ժողովուրդ աստուածեղէն գեղիս աւրհնէ, ամէն։*

## 460

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Փիրդ. 6273, էջ 319, նաև 4516, էջ 210*
*Վանի Տիրամայր եկեղեցի*

*գրիչ՝* Վարդան
*վայր՝* Վան

*... Եւ արդ, գրեցաւ սա ի թուականիս Հայոց ՋԻԳ. (1474), ձեռամբ անարհեստ գրչի* Վարդան *սուտանուն երիցու, ի կաթուղիկոսութեան տեառն* Ըռըստակէսի *և մերոյ աթոռակալիս տէր* Յովանիսեայ, *ի քաղաքիս որ կոչի* Վան, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Վարդան քաջ զօրավարիս։*

*... Եւս առաւել [յիշեցէք] ստացողի գրոյս խոջայ* Մուրատին, *և ծնո-*

ղաց նորին Ջանիբէկին և Շամշայ-Խաթունին, և կենակցին Ասլիփաշին,
և նորին ծնողացն խոջայ Փօլատին և Ալամշին, և Վարդան մեղապարտ
գծողիս, և իմ ծնողացն Յովաննէս քահանային և Զմրութին, և որդոյ
իմոյ Յովանիսին...*։

## 461

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 216

գրիչ՝ Պաւղոս
վայր՝ Ծղաքու վանք

205ա ...Որոյ ցանկացող եղեալ սուրբ Աւետարանիս աստուածասէր, հաւատարիմ և երկիւղած տանտիկինն խաթուն Գուլփաշէն և ստացաւ զսա ի
հալալ վաստակոց իւրոց, յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց
Մկրտչին և Շայմէլէքին, և եղբաւրն իւրոյ պարոն Սադաղին, և զաւակացն իւրոց՝ գնացելոցն առ Քրիստոս՝ Խալիֆին, և քւերն իւրոյ Շամշախաթունին, տէր Տիրկանն, և Ամիր-Մելիքին, և Մարտիրոսին, և առն
Գուլփաշին՝ Ճանիբէկին, Շնօրճուրին, և Նադար-Փաշին, Մխիթարին,
Ղարիպշին, և զաւակի Սադաղին՝ ծաղկեալ Դանիէլին, զոր տացէ նմա տէր
աստուած ընդ երկայն աւուրս, և զաւակի Խալիֆին:
205բ Եւ արդ, գրեցաւ սա ի վանըս Ծղաքու, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածընի տաճարիս, և սուրբ Յակոբայ, և սուրբ Գէորգայ զաւրավարիս, ի թըւիս Հայոց ՋԻԳ. (1474), ի թագաւորութեան Հասան-բէկի և
որդոց նորին, և ի կաթուղիկոսութեան Ըօըստակիսի ընդհանուր Հայոց,
և Աղբամարա՝ տէր Ստեփանոսի: Յայսմ ամի, յորում Հասան-բակն զԲաղէշ խըսարեաց և զբազումս ի մարաց ազգէն կոտորեաց. և Հայոց ազգիս
յոյժ ողորմած է, զի գերի ոչ աանէ. և այս ի խնամոցն աստուծոյ պիտի
իմանալ։
Վասն որոյ յերեսս անկեալ աղաչեմ ձեզ, ո՜վ սուրբ մանկունք եկեղեցւոյ, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զմեղսամած գրիչս՝ զնուաստ և
206ա զներգևեալ պիտակ անուն վարդապետս Պաւղոս, || և զեղբարքն իմ
զխոճա Աղուպն և զնիկողայոսն, և զհանգուցեալն ի Քրիստոս ղորդի
Նիկողայոսին՝ զտարաժամ փոխեցեալն առ Քրիստոս զՅակոբն, այլ և
զհոգևոր և զբազմերախտ հայրն իմ զՂազար րաբունին, և զծնաւղքն իւր՝
զԱստուածատուրն և զԱմէն-Տիկինն յիշեսջիք յերկնաբացիկ յաղաւթս
ձեր, և աստուած-ողորմի ասացէք նոցա։
Դարձեալ, աղաչեմ զձեզ աստուած-ողորմի ասացէք մեր մարմնաւոր
ծընաւղացն Մխիթարին և Սիրմա-Խաթունին, և եղբարցն իմոց՝ հանգուցելոցն առ Քրիստոս Կիրակոսին և Մարտիրոսին, և քըւերցն իմոց

---

* Վերջին պարբերությունը գտնվում է միայն Ղ. Փիրղալեմյանի «Նշխարք պատմ. Հայոց» աշխատության Բ. հատորում (Երևան, № 4515, էջ 210)։ Դրա փոխարեն № 6373 ձեռագրում բերված է միայն այդ հատվածի համառոտությունը, այսպես՝ «արդեամբ տանուտէր խոջայ Փոլատի և փեսային իւրոյ խոջայ Մուրատայ»։

Էւատ-Մելէքին, Խաքուն-Մելէքին, Գուլպաճարին, և զաւակի նորեն՝ Մուրատին...։

206բ Դարձեալ, աղաչեմ զձեզ աստուած-ողորմի || ասացէք կրկնապատիկ ստացողի սուրբ Աւետարանիս Գուլփաշին, և ծնաւղացն իւրոց՝ հաւրն Մըկրտչին և մաւրն իւրոյ Շայմելեքին, և առն Գուլփաշին՝ Ճանիբէկին, և զաւակի նորին Խալիֆին, և զաւակի նորին Էգզարին, ամենեցուն առ հասարակ...։

Դարձեալ, աղաչեմ զձեզ, որք հանդիպիք սմա լի բերանով աստուած-ողորմի ասացէք մեր խաթուն հարսինն՝ Նուպարին...։

## 462

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Փիրզ. 6273, էջ 319, Նաև 4515, էջ 219 – 211**
**Վան՝ Տիրամայր եկեղեցի**

գրիչ՝ Վարդան
վայր՝ Վան

...Եւ արդ, ես անարժան սուտանուն քահանայ Վարդան և որդեակս իմ Նիկողայոս էրէց գրեցաք զսուրբ Աւետարանս ի քաղաքս որ կոչի Վան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Վարդան զօրավարին, ի թուականութեանս Հայոց ՋԻԳ. (1474), ի թագաւորութեան Հասան-բէկին, և ի հայրապետութեան տեառն Սարգսի նորընծայ կաթուղիկոսին, և մերոյ աթոռակալացս սուրբ ուխտիս Վարագայ՝ տէր Յովհաննէսի:

Լուսափայլ մարգարտիս ցանկացաւ աստուածասէր տանուտէրն Յովանէսն, և եղբայրն իւր Յոհանէսն, և քոյր իւր Խաբիք-Խաթունն*...։

## 463

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 4779**

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Խիզան

ա

346բ ...[Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս] ի մեծ թուիս Հայոց ՋԻԳ. (1474), ի կաթուղիկոսութեանն հայկազեան սեռի տեառն Սարգսի, և ի մերոյ կաթուղիկոսութեան Աղթամարայ տեառն Ստեփաննոսի**, և ղանութեանն Հասան-բէկի:

Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի քաղաքիս, որ կոչի Խիզան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և սուրբ Յարութեանն, և սուրբ

* Վերջին պարբերությունը քաղում ենք № 4515 ձեռագրից (Ղ. Փիրղ. «Նշխարք պամ. հայոց» աշխատության Բ. հատոր)։

** Սույն ձեռագրի 24ա էջը իրենից ներկայացնում է այս Ստեփաննոս կաթողիկոսի կարմիր թանաքով գրված մի կոնդակի մասը: Կոնդակի ձախ կողմը պատռված է: Պահպանված հատվածը տող առ տող կարդացվում է այսպես.

Սարգսի զաւրավարին և որդւոյ նորա. Մարտիրոսի, և սուրբ Գէորգեայ, որ է հեռի։

Այլ և, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Յովանէս քահանայի սուտ և ախմար գրչի և անարժանի, և իմ անընդունակ գոլով յարուեստ գրչու-
347ա թեան և բաղում || մեղաց ցնորիւք պաշարեալ։ Այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին. սուրբ բազում աշխատասիրեալ իմ ի սմայ։

Արդ, աղաչեմ զամենեսեան յիշեցէք ի Քրիստոս զանարժան գրիչս զՅովաննէս քահանայ, և զծնաւղսն իմ զԹումայ քահանայն, և զԽոնդ-Մելիքն, և զմեծ մայրն իմ զՍուլտանն, և զհաւրեղբայրն իմ զՅոհաննէսն, և զուսուցիչն մեր զՄկրտիչ քահանայն, և զորդին իւր զՅովանէս քահանայն և որ բազում աշխատութեամբ սնոյց զմեզ՝ զվարձս բարեաց պարգևեսցէ Քրիստոս իւրեանց և իւրեանց ծնաւղացն, ամեն...։
347բ ...Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալիր սեղանոյս յիշեցէք ի Քրիստոս զերիս երանեալն և զաստուածասիրտն՝ զհաւատարիմ տանուտէրն զՍանակն, և զեղբայրն զԱտոմ, և զկողակից[ք]ն նոցին՝ զԽաթուն և զԱնա, այլ և զաւակն իւրեանց զԱւետիս, և զԲըրիւ, զԳրիգոր, զՅովանէսն, զԹուխմանուկն, մանաւանդ զդստերքն նոցին՝ զԽաթուն և զԽէրէֆ, և զՄարթա, և զԽոնձա, զՆօնօֆար, զՇուշան, զԽաթուն-Մէլէֆ, զԹամար, այլ և զազգն ամենայն և զամենայն արեան մերձաւորսն նոցա*...։

ծաղկող՝ Ներսէս եպիսկոպոս.

Բ

Ջծաղկող սուրբ Աւետարանիս զՆերսէս եպիսկոպոս Աղթամարայ յիշեցէք ի Քրիստոս։

---

1 «Տն. Ստեփանոս կաթողիկոսէ ամենայն հայոց ե[ւ] Աղթամարայ
2 ///աց հոգոյ սրբոյ առաքել ընդ ամենայն աշխարհ հայոց, մանաւ[անդ
3 //այ, որ չայջէն(՞) հոգոց վանս, զոր և վիճակ նորին
4 ///հեցաք զիւր սեփական թեմերն ի Շատախոյ մինչև
5 ///եր և փոքր գեղորայք, վանորայք և անապատերն։
6 ///և սոցին սպաս[աւ]որէ տեառն Ստեփանոս կաթուղիկոսէ և ի սուրբ
7 ///պահ և յաջորդ, աթոռակալ և փոխանորդ սրբոց
8 ///և մեր սուրբ լուսաւորչէն Գրիգորի և շնորհայրաշխ աջերոյ
9 ///և այլոցն, զոր ղրեմք ի դրան սուրբ աթոռոյս
10 ///սուրբ Խաչէս կաթողիկէ եկեղեցոյ, աւրհնութիւն աւրհնութեանց առ մեր
11 ///եպիսկո]պոսաց, քահանայից, սարգաւ[ագ]աց, և ամենայն ժողովելոց նախ աստուածասէր
12 ///խուժուտ արեստևորացդ, աշխայ[տա]սէր խողայգործ[աց
13 ///ամենայն հաւատացելոց քրիստոնից»։

* 18ա էջի վրա կա հետագա ստացող խոջա Ավետիսի անթվական հիշատակագրությունը, որը ըստ հնագրական տվյալների կարող է լինել կամ ԺԵ. դարի վերջից, կամ ԺԶ. դարի սկզբից։ Ահա այն.

«Դարձեալ, վերըստին յիշեցէք ի Քրիստոս զմահգասի խօջա Աւետիսն, որ զսուրբ Աւետարանս ի ձեռաց այլազգեացն գնեաց ի գերողացն և վերստին ի յիւր գեւղն ի Բազեն յուղարկեաց. յիշատակ իւրն, և իւր ծնողացն՝ հօրն խօջա Թաժդինին և մօրն Խանզադին. և կողակցին Մարգարտին, և որդոցն Գրիգորին, Ամիրզադին, Ամիրարին, յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով աստուած-ողորմի ասացէք իւրն և իւր ծնողացն՝ մեծի և փոքուն, ամէն»։

464

ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5738*

*գրիչ՝* Յովսէփ
*վայր՝* Հիզանոյ երկիր

ա

278ա *... Արդ, կատարեցաւ աստուածախօս և տիեզերաքարոզ սուրբ Աւե-*
*տարանս ի խնդրոյ պատուական և հաւատարիմ և սրբասէր կրօնաւորին*
Մովսէս *փիլիսոփային, զոր տէր աստուած բարեաւ վայելել տացէ իւրն*
*և լաւ պահողաց սորա, ամէն։*
*Զոր և խնդրեմք ի տեառնէ աստուծոյ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, զի*
*ընկալցի զսա, որպէս պատարագն Հաբելի և զԱբրահամու և զամենայն*
*նախահարցն սրբոց։ Եւ որպէս հայեցաւ ի Հաբէլ և ի պատարագն նորա,*
*նոյնպէս հայեսցի հաճեսցի ընդ* Մովսէս *կրօնաւորն, և ի ծնաւղսն իւր՝*
*ի* Վարդանն *և ի* Յարմէլիքն, *և յեղբայրն իւր* Սարգիս, *և թողութիւն*
*շնորհեսցէ ամենայն յանցանաց նոցա և ամենայն արեան մերձաւորացն*
*իւրոց...։*
*Եւ արդ, ես՝ ունայնս ի բարեաց գործոց, որ անուամբ եմ և եթ և ոչ*
278բ *արդեամբք, || որ ձայնիւ բարձրացեալ երէց գոլով և հոգով կորացեալ և*
*մտաւք մոլար, ըստ իմում տկարութեանս գրեցի զսուրբ Աւետարանս*
*յերկիրս* Հիզանոյ, *ի գեաւղս որ* [Ս]որի* *կոչի, ընդ հովանեաւ սուրբ Աս-*
*տուածածնին և սուրբ Քրիստափորին և այլ ամենայն սրբոցս, ի հայրա-*
*պետութեան տեառն* Ստեփանոս *կաթողիկոսի* Ախթամարայ, *և ի ղանու-*
*թեան բռնաւորին տաճկաց* Ուզուն-Հասանի, *և ի թվականութեանս Հայոց*
*ՋԻԳ. (1474) գրեցաւ, ձեռամբ* Յովսէփ *մեղաւորի. ի խնդրոյ մաքուր և*
*սուրբ կրաւնաւորին* Մովսեսի, *յիշատակ հոգոյ իւրոյ և ծնօղաց իւրոց...։*
279ա *... Կրկին, աղաչեմ [ղձեզ, ո՞վ դասք] լուսերամ քահանայից, յորժամ*
*ընթեռնուք կամ աւրինակէք զսուրբ դիրս՝ խնդրեցէք ձեր սուրբ աղօթիւքդ*
*մեղաց թողութիւն անարժան գրչիս՝* Յովսէփ *մեղաւորիս, և աստուած-*
*ողորմի ասացէք ինձ, և իմ ծնաւղացն* Յովանէս *քահանայի և* Հռիփսիմի,
*և կենակցին իմոյ* Խոնդֆարի, *և որդոց իմոց* Գրիգորի, *և այլոցն, և ամե-*
*նայն ազգականացն իմոց, ամէն...։*
*Աստուած ողորմի* Թած /// Առաֆելին *և* Խաթունին, *որ զտեղիքն երետ*
*ի տունս, զի գրեցաք զԱ[ւետարանս]**։*

*Նկարող՝* Կարապետ

բ

2բ *Զ*Կարապետ *Նկարողս յիշեա ի Քրիստոս***։*

---

** Գյուղի անվան առաջին տառը ջնջված է. կարծում ենք պետք է եղած լինի «Ս», որովհետև Խիզանի գավառում, դեռևս ԺԹ. դարում գոյություն ուներ «Սորի» անունով գյուղ՝ սուրբ Աստվածածին և սուրբ Քրիստափոր եկեղեցիներով (տե՛ս Գ. Նաթանեան Արտօսր Հայաստանի, էջ 189)։*

*** Վերջին պարբերությունը գրված է ներքին լուսանցքի վրա։*

**** Գրված է Մատթեոս ավետարանչի նկարի ստորին մասում։*

## 465

### ՃԱՇՈՑ

Երևան 9093

կազմող՝ Դաւիթ

ա

430ա *Փառք... որ ետ կարողութիւն սրբասնեալ և երջանիկ սուրբ կրամաւո-*
*րին տէր* Մարգիսին, *այլ և ղհաւրեղբարն իմ զխոճա* Շահրիմաճ, *և զոր-*
*դին իւր* զԹաջիմանն, *և ծնաւղաց նոցին՝ հաւրն* Սաւալանին *և մաւրն*
Թամարին, *եղբաւրն* Բարաքշախին: *Այլ և զհանգուցեալ եղբարն իմ, որ*
*առ Քրիստոս է գնացեալ՝* զԱնլիմանն *և* զՂարամանն:
*Աստուած-ողորմի իւրեանցըն և տայ լսել զերանաւէտ ձայն, եթէ՝*
*Եկայք աւրհնեալք հաւր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ զձեզ զար-*
435բ *քաութիւն աստուծոյ։ Յիշեց||էք ի սուրբ յաղօթս ձեր* զՇահրիմանն, *և*
*զկողակիցն իւր* զՆազմէլիճն, *որ ետ կազմել և նորոգել զսուրբ գիրքս յի-*
*շատակ իւրն, և ծնաւղաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝*
*կենդանեաց և հանգուցելոց...։*

*Ի կաթողիկոսութիւն տեառն* Յոհանիսի, *ի հայրապետութիւն տէր* Վարդան *եպիսկոպոսին, թվականութիւն հայկազան տումարիս ՋԻԳ. (1474)...։*

բ

164ա *Ո՜վ դասք լոյսերամ քահանայից..., զմեղօք մեռեալ ոգի* զԴաւիթ *կազ-*
*մող սուրբ դրոցս յիշեսջիք ի սուրբ և յերկնաթռիչ յաղօթս ձեր, և աստու-*
*ած ողորմի ասացէք...։*

*Ծանի՛ք, ո՜վ սուրբ քահանայք, որ դոց թուղթս* Թաւրէզի *է, և խիստ կտրատել էր և դառնութեամբ ուլսյեցի ու կազմեցի ըստ մեր կարեացս, առանց դրամ, իմ հոգոյս համար և իմ ծնօղացն՝* Հասան-բէկին *և* Խանդ-խաթունին: *Ով ոք հանդիպի սմա, կարդալով կամ աւրինակելով՝ յիշեցէք զմեզ..., և զչիրակ եղբայրն մեր վ..էր* Թադէոս *ճգնաւորն յիշեցէք, որ բազում աշխատեցաւ ի հետ դրոցս կազմելուն և զնայ յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր, և ղուք յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի, ամէն։*

*Կազմեցաւ սուրբ գիրքս ի թուականիս Հայոց ՋԻԳ. (1474), ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ։*

## 466

### ԱԻՆՏԱՐԱՆ

Վրացական ՍՍՌ, Կենտրոնական պատմական արխիվ,
ֆոնդ 233, № 544

գրիչ՝ Ստե[փանոս]
վայր՝ Կիւրղի վանք

284ա *...Արդ, ես նուաստս և յետնեալ հողս* Ստե[փանոս *ծո*]*յլս և ան*[*պի-*
*տանս ի*] *եպիսկոպոսաց դասուց և անարհեստս ի գրչաց...։*

Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց Ջ. և ԻԳ. (1474)-ն, ի վանքս որ կոչի Կիւրղի, ի յառաջնորդութիւն ւէր Ստեփաննոսի և Կարապետ վար-
264բ դապետի, || ընդ հով[անեաւ սրբոյ] նշանաց /// տա]ճարացս սուրբ Աստուածածնիս, և սուրբ Լուսաւորչիս, և սուրբ Յովհաննու աւետարանչին...։

Ես՝ Սահակ՝ երէցս Խուռնաւիլու, որ փափաքեցա այս սուրբ և աւետաքարոզ Աւ[ետարանիս ///...դրել տուի զսուրբ Աւետարանս յիշատակ ինձ և ծնողաց իմոց և զաւակաց և ամենայն արեան մերձաւորաց, ի հալալ արդեանց իմոց և եղի յիշատակ ի Վաւռին ժամատեղն՝ ի դուռն սուրբ Առաքելոցն. ով ոք իշխանութիւն չունի զօետարանս հանել ի ժամայտեղացս ծախելով կամ գրաւելով...։

## 467

## ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 413, Ս.Տ.Ա. և Մ.Տ.Մ.

գրիչ՝ Զաւրվար
վայր՝ Տիվրիկ

283բ ...Եղև գրաւ գրչութեան աւետարեր մատենիս ի քաղաքիս Տիվրիկոյ, ի դուռն սուրբ Սարգսի, ի թուականիս Հայոց ՋԻԳ. (1474) ամի, ձեռամբ անարհեստ գրչի Զաւրվար երիցու, ի խնդրոյ բարեպաշտ և հոգիընկալ ծերուն /// որ ստացաւ զսա ի յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորացն, և աստուածասէր կնոջն Բաղդաա-խաթունին, և իւր աղբօրորդւոյն Զաֆարին, Քոչկանն և Ամիր-Եդիլին, և այլ արեան մերձաւորացն։

Ի թվականիս Հայոց ՋԻԳ. (1474) ամի, ի դուռն սուրբ Առաքելոցն։

Ո՜վ սուրբ քահանայք, ով ոք որ հանդիպի սմա կարդալով կամ աւրինակելով՝ աստուած-ողորմի ասացէք Բաղդատ-խաթունին. ով ոք զայս սուրբ Աւետարանս հեռացնէ և կամ ի յայլ տեղ տանէ ի դրանէ սուրբ Առաքելոցն՝ զպարգևքն Յուդայի առնէ և զանէծքն Կայենի առնէ ինքն և իւր մասնակիցքն, որ ղայն կամենան, և իւր ննջեցեալքն, ամէն։

Եւ այլ ով ոք ոչ ունի իշխանութիւն Աւետարանիս, զի սուրբ Աւետարանս ի ձեռն տէր Մկրտչին է և նարա է տըած և էւ

## 468

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7835

ստացող՝ Մկրտիչ

ա

307բ ...Արդ, որ ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս՝ լի սրտիւ և առատ բերանով աստուած-ողորմի ասացէք բարեպաշտ տանուտրոջն Մխիթարին, և իւր կենակցին Խոնդ-խաթունին, և որդւոյն Մարտիրոսին, և քորոջն Ասէլ-Մէլեքին, և որդւոյն Մարտիրոսին,
308ա և Աբուլին, և Կամրագէլ սարկաւագին, և Սիրունբէկին, և մօրն Ալլզըզին, և Կարապետին, և որդւոյն Ասլանին,. և եղբօրն Ասոմ սարկաւագին,

և մօրն Խաթ-Մէլէքին, և հարսին Թարթիփշին, և Մըսըր-Մէլէքին, և որդոցն Աւագին և Դարմանին, քուերն Խոնձա-Խաթունին, և Յովանիսին, և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոցն. և աստուած-ողորմի ասացէք Նոցա և Մարգարայ գրչին, ամէն։

Թուական ՋԻԳ. (1474)։

Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զՄկրտիչ աբեղայս, զԽաչատուրն, զհայրն իմ զԱբրահամ, և զմայրն իմ զՍու[լ]տան-Մելիք, և զեղբայրն իմ զԱմիրբէկն, և զկենակիցն իւր զՅուստիանէն, և զմիւս եղբայրն իմ զՈվսէփն, և զքորն Խոնձա-Խաթունն, և զհօրեղբայրն իմ զՍտեփանոսն, և զիւր կենակիցն զԱզիզ-Խաթուն, և զիւր որդիքն զՍարգիս, և զԿարապետն, և զՄինաս սարկաւագն, և զհարսներն զՄեճրուբան և զԳայիանէն, և զմիւս հօրեղբայրն իմ զՅովանէսն, որ տարաժամ մահուամբ փոխեցաւ ի Քրիստոս, և զկենակիցն զԳուճարն, և զորդին զՄովսէս, և զքորն զԽալիմ-Խաթունն, և աստուած-ողորմի ասացէք||Նոցա...։

308բ

Եւ արդ, ես՝ կենդանի Մխիթարս քարգործ՝ ետու զսուրբ Աւետարանս ի ձեռն Մկրտիչ աբեղային, որ հոգևոր որդեակ է ինձ, որ հանապազ կարդայ և խնամ տանի ի վերայ, և աստուած-ողորմի ասէ։

Եւ արդ, մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա յետ իմ անցմանն, ոչ ի մերոց և ոչ յաւտարաց՝ դաւ ինչ առնելով կամ գողանալով. եթէ ոք յանդըգնի և կամ հակառակէ՝ նա Յուդայի մասնակից լինի և այլ խաչահանուացն, և ընդ Սիմոնի կախարդին տանջի, եղիցի, եղիցի...։

գրիչ՝ Մարգարայ

Բ

175բ Վա՛յ, որ զրոյցն. զիս կու խափանէ ի դրելոյ։

նկարող՝ Կարապետ

Գ

17բ ԶԿարապետ նկարաւղ սուրբ Աւետարանիս յիշեցէք ի Քրիստոս*։

469

Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Երևան 3330

հետ. ստացող՝ Յակոբ

259բ Զվերջի ստացող սուրբ Աւետարանիս զ[Յ]ակոբ քահանայ, և զեզբայրքս իմ զՅովճանէսս և զԱնառնս..., և զծնողսն մեր Թուխթամուրն, և զմայրն զՆարդանն, և զամենայն արեան մերձաւորսն յիշեցէք ի սուրբ յազաւթս ձեր, և զեղբաւրորդիս զՍարգիս սարկաւարքս, զոր տէր աստուած վայելել տացէ, ամէն։

Արդ, յերես անգեալ աղաչեմք զսրբասնեալ քահանայքտ զընթերձողքտ սուրբ Աւետարանիս, յիշման արժանի արարէք, որ ի հալալ յընչիցս իմոց ստացայ և ետու կազմել յիշատակ ինձ և ծնողաց իմոց, որք զիս յիշէք և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։

---

* Գրված է երկաթագիր տառերով. Մատթեոս ավետարանչի նկարից ցած՝ կապույտ երիզի վրա։

Չկազմող՝ Գրիգոր անարժան քահանայ յիշել աղաչեմ. Թվ. ՋԻԳ. (1474) կազմեցաւ

470

ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 474

գրիչ՝ Ալեքսիանոս

331ա ...Գրեցօ այս հոգևոր Գանձարանս ի Թվ. Հայոց ՋԻԳ. (1474), ձեռամբ անարժան և անարուեստ ծրողի Ալեքսիանոսի, անարժանս ի կարգից։

Այլ և աղաչեմ զամենեսեան խոշորութեան և սղալանաց գրոյս անմեղադիր [լե]րուք, զի առաջի գիրն էր. և հեծեծանօք յերեսս անկեալ աղաչեմ, զի որք տեսանէք, կարդայք և օրինակէք յիշեցէք զանարժանս ի յաղօթս ձեր և [աստուած] զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն։

471

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4638

գրիչ՝ Սարգիս

283բ ...Գրեցաւ ի թվականիս ՋԻԳ. (1474)* ... ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սրբոյն Գրիգորի մեր լուսաւորչին, և կենսակիր սուրբ Նշանիս։ Բայց գրեցաւ սա ի վայելումն դեռաբոյս Սարգսի, ի վայելումն անձին իւրոյ, և յիշատակ ծնաւղաց իւրոց։ Եւ արդ, ես՝ նուաստ Սարգիս, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան, որք հադիպիք սմայ կամ տեսանէք՝ մեղաց թողութիւն խնդրեցէք ինձ, և հաւրն իմոյ Մախտումին, և մաւրն իմոյ Թագուհին, և եղբարցն իմոց զԱլամշին, Իշխանին ///

472

ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 8971

գրիչ՝ Գրիգոր

...Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զտառս որ կոչի Շարակնոց, ի լաւ և յընդիր աւրինակէ, որ կոչի Խըլկցի, ձեռամբ իմով Գրիգորի ||
382ա անուամբ միայն աբեղայի, որ զանունն ունիմ և զգործն ոչ։ Արդ, որք ազտիք ի սմանէ ուսմամբ կամ աւրինակելով, յիշեցէք յաղաւթս ձեր, և որք յիշէք՝ յիշեալ լիցիք ի Քրիստոսէ։

Ի Թվ. ՋԻԳ. (1474)**։

---

* Ամբողջ թերթի վրա հետագայում թուղթ է փակցված, որի ձախ սյունակի վրա գրված է այլ բան. Նրա տակ գտնվող հիշատակարանի հատվածը չի վերծանվում։ Հիշատակարանի աջ սյունակը կարդացվում է լույսի տակ պահելով։

** Շարունակությունը գրված է բնագրից տարբեր՝ մանր ձեռագրով։

Զստացող Շարակնոցիս զհաւատարիմ և զերկիւղած ծերունին զՄկրտիչն աղաչեմ զամենեսեանդ, որք հանդիպիք այսմ երգարանի յիշման արարէք արժանի, որ ըստացաւ զսայ վասն յիշատակի հոգոյ իւրոյ և ի վայելումն ///*, զոր տէր աստուած վայելել տացէ երկարեալ ամօք. ամէն։

Արդ, աղաչեմ զմանկունսդ սուրբ եկեղեցոյ յիշել սրտի մտաւք ի
382ր սուրբ յաղաւթս ձեր զվերոյգրեալքս ի սմա զՄկրտիչն, հանդերձ || կենդանեաւք և ննջեցելովք և ամենայն արեան մերձաւորաւք. և որք յիշէք՝ յիշ[եալ] լիջիք ի Քրիստոսէ, որ է յաւիտեանս, ամէն։

* Անունը քերված է։



ՋԻԴ 1475

**473**

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6383

գրիչ՝ Արիստակէս
վայր՝ Սանահին

319բ ...Զոր և տեսեալ զսորայսն անճառ փրկագործութեան խորհուրդ բա-
րեմիտ և սրբահաւատ մահկասի Սաղաթիար և ամուսին իւր Գուլսուրամ,
ոչ ունելով մարմնաւոր զաւակ ի վերայ երկրի, այլ ըստացան զսուրբ
Աւետարանս յիշատակ յաւիտենական կտակ անվախճան կենացն, պա-
շար և առաջնորդ երկնաչու ճանապարհին, ի հալալ արդեանց իւրոց, ակն
ունելով ելից ի կենցաղոյս, ջերմեռանդ սիրով և անհատական յուսով,
զաւակ ի Սիովն և գանձ անկողոպտելի ի վերինն Երուսաղէմ, յիշատակ
320ա հոգւ||ոյ իւրոյ, և բարի ծնաւղացն իւր՝ հաւրն Նիկաւղոսին և մաւրն Դիլ-
շատ-Խաթունին, և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և ննջե-
ցելոց, և մեղաց թողութիւն խնդրել ի Քրիստոսէ։

Եւ արդ, ես՝ յետինս ի կրամաւորս և անարժանս [ի] մանկունս եկեղե-
ցոյ Արիստակէս մեղուցեալ գրիչս, տեսի զսէր և զփափագ մահգասուն՝
զպարոն Սատաղիարին և զկենակցին իւրոյ Գուլսուրամին, զոր ունէին
առ հոգևորսն, և իմ անընդունակ գոլով յարւեստ գրչութեան և բազում
մեղաց ցնորիւք պաշարեալ, ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մար-
դասէր հոգին յանձն առի, և բազում աշխատութեամբ և տառապանաւք
գծագրեցի զսա մեղսամած մատամբ իմով ի յաստուածաբնակ վանքս,
որ կոչի Սանահին, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և հրաշափառ
Կաթուղիկէիս, և ամենայն սրբոցս, որ աստ հաւաքեալ կան, ի յառաջ-
նորդութեան տէր Բարսեղ եպիսկոպոսի և այլ միաբանիցս առ ոտս ամե-
նայն, ի թուականութեանս Հայոց ՋԻԴ. (1475)։

Եւ արդ, յերեսս անկեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր, հարք և եղբարք,
320բ յիշել և զմեղ ի յաղաւթս ձեր, և զուսուցիչն իմ զտէր || Յովհաննէս՝
ամենայն սրբութեանց վարդապետ, և զհաւրեղբայրն իմ զտէր Ներսէս
փիլիսոփա, և զծնաւղս մեր՝ <և> զհայրն իմ զՋանփաշէն և զմայրն իմ
զՆուկբարն, և զայլ ամենայն մերձաւորս, որ բազում աշխատանաւք ծա-
ռայեցին մեզ՝ յիշեցէք յաղաւթս ձեր. և զհաւրեղբաւրորդին իմ զտէր
Ովանէս կուսակրաւն աբեղայ, և զաշակերտն մեր զտէր Խաչատուր կու-
սակրաւն աբեղա, և սուրբ սրտիւ աստուած-ողորմի ասացէք, զի և ձեզ
ողորմեսցի Քրիստոս աստուած յիւր միւսանգամ գալստեանն, ամէն։

## 474

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2634*

*գրիչ՝* Աւագտէր
*վայր՝* Վայոց-ձոր, Բոլորաբերդոյ անապատ

ա

18բ ...Արդ, եղև գրաւ գրագրութեան սորա ի թվականիս Հայոց Մեծաց
ՋԻԴ. (1475), ի կաթողիկոսութեան տէր Սարգսի ընդհանուր Հայաս-
տանեայց ազգի, ի յաճրիեպիսկոպոսութեան մերում գաւառի տէր Յոհա-
նիսի՝ աստուածահաճոյ և մաքուր սուրբ հայրապետի՝ թոռին մեծին
Պռաւշայ, որ է առ դրան սուրբ Գեղարդեան, և եղբաւր նորին տէր Ստե-
փանոսին՝ նորընծայ կուսակրաւն աբեղայի, զոր տէր աստուած ընդ
երկայն աւուրս առնէ, և միւս եպիսկոպոսի տէր Եղիշայի՝ մաքուր ե սուրբ
հայրապետի՝ թոռին մեծին Բիւրթելեանց, ի պարոնութեան մերոյ նա-
հանգիս մեծազգի ե երևելի իշխանաց իշխողի և բարեհաւատ պարոն
Ջումին՝ թոռին մեծին Պռաւշայ՝ ասպարապետին Հայոց, և որդւոց նորին
219ա պարոն Լազաբէկին, Ուլուսբէկին, Թումանբէկին, և եղբ||այրորդոց սո-
րին պարոն Հայկազին. Ամիր-Վասակին, Հաղբակին, Ամիր-Հասանին,
եղբարց տէր Յոհանիսին և տէր Ստեփանոսին, զոր տէր աստուած ընդ
երկայն աւուրս պահեսցէ զսոսայ յամենայն փորձանաց հոգոյ և մարմ-
նոյ, ամէն և եղիցի։

Եւ գծագրեալ եղև սուրբ Աւետարանս ձեռամբ անարհեստ և սղալամիտ և փըծուն գրչի Աւագտէր սուտանուն բանասիրի, որ անուամբս եմ միայն և ոչ գործով, ի յերկիրս Եղեգեաց, որ կոչի Վայոյ-ձոր, ի յանապատիս Բոլորաբերդսյ, առ դրան սուրբ Աստուածածնիս, և սուրբ Կարապետիս, և սուրբ ճգնաւորաց գերեզմանացս, որ աստ են հանգուցեալ։ Առ ոտս երիցս երանեալ և քաջ հռետորի և բանիբուն վարդապետի և անյաղթ փիլիսոփայի՝ վարժապետիս իմոյ Սարգիսի, զի որպէս զարեգակն փայլէ յազգս Հայոց։ Եւ համշիրաք եղբարցս և ուսումնակցացս մերոց՝ Յակոբ վարդապետին, Պաւղոս վարդապետին, Վարդան վարդապետին, զոր տէր աստուած պահեսցէ զսոսայ ի փորձանաց սատանայի, ամէն։

Նաև մարմնաւոր արեան ազգակցացս իմոց՝ եղբաւրս իմ Տէրտէր միակեցի, և որգոց սորա տէր Դաւթի գրագրի և աստուածային շնորհաւքն լի ի կարգ քահանայութեան, և եղբարց սորին՝ կուսակրաւն աբեղայիցս՝ տէր Զաքարին և տէր Աբրահամին՝ ծաղկողի* և կազմողի սուրբ Աւետարանիս, և եղբարց սոցին՝ Մարգարին և Յակոբ տնտեսին ի դրան սուրբ Աստուածածնիս, և առ Քրիստոս փոխեցեալ հոգևոր ծնողին իմոյ՝ տէր Երեմիայի ճգնաւորին, և մարմնաւոր ծնողացն իմ Յովանիսին և Մարթին, և եղբարցն իմ Մուրատին, Հայրապետ դպրի և Խաչատրի, և

---

* Տեր Աբրահամի նկարած պատկերները (հատկապես ավետարանիչները) մեծ հետաքրքրություն են ներկայացնում։ Նկարիչը հմուտ է և ինքնատիպ։

219բ *քվերն* Խամուշի: || *Եւ ձեռնասնումդ աշակերտացս մեր՝ կուսակրօն աբեղայիցս՝ տէր* Ստեփանոսին, *տէր* Յոհանիսին, *տէր* Մարգարէին, *և գեղոյ իրիցու տէր* Ջեկիէլին, *տէր* Մարտիրոսին, *տէր* Ներեմիին *և* Հայրապետ *դպրի, ամէն և եղիցի։*



*Նկ. 18. Մի նմուշ Աբրահամ ծաղկողի նկարներից*

Արդ, ստացաւղ եղև այսմ աստուածազարդ Աւետարանիս աստուածասէր և աղքատասէր և ողորմասիրտ և բարիհաւատ այրս Սատաղայ և բարեմիտ կենակիցն իւր Դիլշատն, և աստուածապահ որդիքն իւր Սակիկն, և որդիք նորա Աստուածատուր և Շանշայ, և երկրորդն՝ Վարդան, և որդիք նորա Միրանշէն, Թուրանշէն, և երրորդն՝ Հովադեղ, և որդիք նորա**, և չորրորդն Եղիշայ քահանայ՝ վայելող սուրբ Աւետարանիս, և որդիք սորա՝ Բարսեղ սարկաւագ, Յունան, հինգերորդ՝ Ասպանշայ, և որդիք նորա Բէկիջան, վեցերորդն՝ Սալթանշայ, և որդի նորա Ղարաճայ, և դստերաց սորա**, և հարսներոյն**, և եղբարց սորա Յոճանիսին**, և զմիւս եղբաւրն Ջաւրին**, և ի Քրիստոս հանգուցեալ ծնողացս սորա Վարդանին և Թանկին, Քրիստոս աստուած ողորմի սոցա հոգոյն, ամէն և եղիցի։

Եւ ետ գրել զսուրբ Աւետարանս յիշատակ իւր և իւրոցն ամենայնի, և բարեխաւս առ Քրիստոս յաւուրն դատաստանի և յերկար կենդանութեան որդոց իւրոց և ամենայն ընտանեաց, որոց յիշատակ սո[ցա]///

Բ

Քրիստոս աստուած քո սուրբ չարչարանացդ և սուրբ Յարութեանդ բարեխաւսութեամբ թող զամենայն զմեղս և զյանցանս ընտացողի սուրբ Աւետարանիս զՍատաղին, և զիւր հաւրն և մաւրն, և զկենակցին իւրոյ զԴիլշատին. թող զմեղքն և քաւեա զյանցանս զիւրն և զիւր ծնողացն, ամէն։ Եւ զիւրեանց որդիքն զտէր Եղիշայ, զՍակիկն, զՎարդան, զՀովադեղ, զԱսպաճանշայ, զՍալթանշայ տէր աստուած ընդ երկայն աւուրս առնէ, ամէն***։

Գ

Զտառապեալ ոգի մեղաւք ղամէնամեղ զՍատաղայ և զկենակիցն իւր
169ա զԴիլշատն յիշեա Քրիստոս աստուած ի քում արքայութեանդ, || և զանարժան գծող սորա քո սուրբ տեսոյդ արժանի արա, և զԵղիշայ սուրբ քահանայ՝ սմա վայելող ընդ երկայն աւուրս արա։

ծաղկող՝ Աբրաճամ

Դ

104բ ԶԱբրայճամ տկարս յիշեալ և ասայ միշտ տէր ողորմեայ****։

## 475
## ԱԻԵՏԱՐԱՆ
Երևան 221

գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Վայոց-ձոր, Սրկղունք գիւղ

318ա ...Արդ, գրեցաւ այս աստուածանկար բուրաստանս ի թվականութեանս Հայոց ՋԻԴ. (1475), ի ղանութեան Հասան-բէկին, թոռինն Պայըն-

* Ստացող Սատաղայի, նրա կնոջ Դիլշատի և տեր Եղիշեի պատկերները նկարված են Մատթեոս ավետարանչի պատկերից ներքև, ձեռագրի 1ր էջի վրա (տե՛ս նկ. 18)։
** Անունների լրացման համար տեղ է բաց թողնված։
*** Գրված է 103բ—104ա էջերի ստորին լուսանցքներում։
**** Գրված է Ղուկաս ավետարանչի նկարից ներքև՝ լուսանցքի վրա։

տըրոյ, ի յաթոռակալութեանն Վաղարշապատու տէր Սարգիս կաթողիկոսի, և մերում նահանգի եպիսկոպոսութեանն տէր Յոհանիսի, որ է ի դուռն սուրբ Գեղարգեանն, ի յերկիրս Վայիձորոյ, ի դեօղս որ կոչի Սրկըղունս, ընդ հովանեաւ սուրբ Գէորգի և սուրբ Յակոբի և այլ սրբութեան,
318բ որ աստ կան, ի իշխանութեան պարոն Ջումին և որդոցն իւրոց ||, առ ոտս արիաշան և սրբահաճոյ Աւագտէր վարդապետի՝ հաւրեղբօրս մերոյ, որ է ի յանապատն Բոլորաձորոյ, ի դուռն սուրբ Աստուածածնին և սուրբ Կարապետին, որ վերստին նորոգեաց՝ շինութեամբ և պայծառութեամբ ժամատեղաց։ Եւ այլ մարմնաւոր եղբարցս իմ՝ տէր Զաքարի և տէր Աբրահամի՝ նկարողի Աւետարանիս, կուսակրաւն աբեղայից, և ընկերակցի իմոյ տէր Զեկիէլ դեղու իրիցի և տէր Ստեփանոս՝ փեսոյ իմոյ։

Ձեռագրեցաւ սա իմոյ տկարութեանս՝ Դաւիթ իրիցի։

Որ եմ յետնեալս ամենայնի,
Որ չեմ արժան<եմ> ի կարգի,
Որ ըղանունս չարժէի,
Որ իրիցուկ ես կոչէի,
Որ յոյժ պղերգ եմ ի բարի,
Արագաթիւր եմ ի չարի,
Պիք միայն տէրն ինձ ողորմի
Ի յահեղ աւրն իւր յատենի,
Որ ի յաթոռն սուրբ բազմի
Եւ բաժանէ զազգս ամէնի.
Եւ նմա փառք յաւիտենի։

319ա Արդ, ստացեալ զԱւետարանս բարեմիտ այրն Թարկուշատեցի Շահրամիր և Աղալ...:

Դարձեալ, աղաչեմ զհանդիպողքդ այսմ տառի, զի յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր ղվերոյդրեալքս ի սմա և զիս՝ զանարժան գրիչս՝ զԴաւիթ էրէց, և զծնօղսն իմ՝ զհայրն իմ զՏէրտէր և զմայրն իմ զԳոնցայ՝ հանգուցեալ առ Քրիստոս յոյսն ամենեցուն, և զհարազատ որդիքս իմ
313բ զԱլեքսանոս և զՅոհան, և զմայր սոցա, զի աշխատութեամբ || սպասաւորէ մեզ։ Եւ սխալանաց և խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր։ Եւ որ առատն է ի տուրս բարեաց ձեզ՝ յիշողացդ և մեզ յիշելոցս առհասարակ ողորմեսցի, և նմա փառք յաւիտենիւ, ամէն։

## 476

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7774

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Խլաթ

...Որոյ ցանկացող եղեալ բաքէմիտ և ողշախոհ տանուտէրն Աստուածատուր և ստացաւ || զյիշատակ հոգոյ իւրոյ, և ծնօղաց իւրոց Ստեփա-
582բ նոսին և Ըռուս-Խաթունին, և զաւակացն Ստեփանոսին և փոխեցելոցն ի Քրիստոս Շահումին և Մուրատին, և կենակցին Խաթուն-Մելէքին, և հար-

սինն Գոյլբստանին, և զաւակաց նորին Թումին, Պառնին, և Սարխա-
ջին, Բուսին, Ղրիմին, և Մարգրտին, Ատոմին, և Շարմելեքին, և եղբարցն
Ապդուլ-Մուսեհին, Սուլտանշին, և Գորգուն, և քըւերցն Նըղշունին և Սալ-
չուկին, և Խաչատրուն, և հաւրեղբարցն Մուրատին և Եսատին, և մեծ
պապին՝ Խողդեղին, Կարապետին, Յովանիսին, Ալփաքէկին, Շնոհտրին,
Հերապետին, Մեհերին, Դաւրին, Խալինարին, Ներսէս քահանային, և
Մովսէս քահանային, և Իզլտին, և ամենայն մերձաւորաց իւրոց, ամէն...։
291ա ...Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի Խլաթ քաղաքի, ընդ հովանեաւ
ԺԱ. (11) խորանացն, և սուրբ Գէորգ զաւրավարին, և խնդրակատար
Աստուածածնին, և սուրբ Վարդանին, ձեռամբ յոգնամեղ և անիմաստ
գրչի Յովանիսի սուտանուն քահանայի, յամի ՋԻԴ. (1475) թըւականի, ի
հայրապետութեանն տեառն Սարգսի՝ էջմիածնի կաթողիկոսի։
Արդ, կրկին անգամ աղաչեմ զձեզ յիշել ի մաքրափայլ յաղաւթս ձեո
զստացող սուրբ Աւետարանիս զԱստուածատուրն, և զծնաւղսն իւր, և
զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն։ Ընդ նո-
սին և զիս յիշեցէք ի Քրիստոս՝ զմեղաւք լցեալ գրիչս զՅովանէս, որ բա-
զում աշխատութեամբ դրեցի, և զծնօղսն իմ զԿարապետ քահանայն և
294բ զԹա||ղամելիքն, և զեղբայրն իմ զԱստուածատուր քահանայ և զաւակ-
սըն իմ զՄկրտիչ քահանայ, և զՍիրունն, և զՍտեփանոս սարկաւագն,
որ երիտասարդական հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս, և զկենակիցն իմ,
և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն։

Այլ ես, թափուրս յամենայնի
Յովանէս գրիչս ողորմելի
Ջձեզ աղաչեմ, մանկունք բարի,
Ջմեզ յիշեսջիք յեկեղեցի
Եւ ի ժամ սուրբ պատարագի,
Սուրբ աղօթից տէրն լսէ,
Առհասարակ ողորմեսցի
Ջեզ և մեզ և ստացաւղի։
Արդ, կատարեալ գործն ի բարի
Երանի այն մարդ, որ ունի։
Ով որ ունի արթուն հոգի
Թող զանցաւոր կեանքս չսիրէ,
Ոչ ժողովէ արծաթ 'ւ ոսկի
Եւ արդիւնք, զինչ որ լինի,
Ամէնն անցնի, որ չերեւի։
Ո՞վ իմաստուն, որ կու գիտէ
Քան զայս չկա գանձ գովելի։
Ով Աստուածատուր, եղբայր բարի
Դու զուգեցեր գանձ պանծալի,
295ա Զինչ || որ ակունք կայ գովելի,
Անգին ջաւհարն զսա չարժէ.
Ամենայն ինչք որ լինի՝
Անտես մընայ և անցանի,

Սա քեզ ճըրագ ի վառ լինի,
Ջհոգիդ յերկինս ուղեւորէ,
Ջհոգիդ զհաւր ձայնն լըսէ՝
Եկ դու հանգիր իմ սիրելի,
Քեզ պատրաստեալ եմ սուրբ տեղի,
Որ յաւիտեան ոչ անցանի։
Ջի տէրն քաղցր՛ է և բարի,
Որ կու լսէ իւր ծառայի։
Եւ որ ասէ զտէր ողորմին
Աստուած իւրենն ողորմեսցի
Եւ ամենայն քրիստոնէի,
Որ զսա լսէ յաւժար սրտի
'Ի ․ի միտ առնու և աւգտեսցի.
Եւ Քրիստոսի փառք յաւիտեան, ամէն։

## 477

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

«Արևելեան մամուլ», 1897 թ. № 10, էջ 554—555
Մագնիսիա, ս. Լուսաւորիչ

գրիչ՝ Ղազար
վայր՝ Արծկէ

ա

611ա Փառք... որ ետ կարողութիւն սղալամիտ և մեղսամած գրչի սուտանուն Ղազար քահանայի յանկ հանել զաստուածախաւս կտակարանս, աւժանդակութեամբ սուրբ աստուածածին ամենաւրհնեալ և գերագով կուսին Մարիամու, զնա կալեալ բարեխաւս առ միածին որդին իւր և աստուած իմ Յիսուս Քրիստոս։

Աւարտեցաւ... սուրբ տառս ի յամի Ջ. և ԻԴ. (1475)-երրորդի, ի յԱրծկէ քաղաքի, ընդ հովանեաւ ամենամաքուր սուրբ Աստուածածնին, և Պատերազմի սուրբ նշանին, և սուրբ Սքանչելագործին, և նախավկայ սուրբ Ստեփաննոսին, ի հայրապետութեան էջմիածնին տեառն տէր Սարգսին, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի Ղազար քահանայի, ի խնդրոյ սրբասնեալ և բարեմիտ գրոց աշակերտին տէր Գրիգորին, որ ետ զսա յիշատակ իւր և ծնողաց իւրոց։

Քանզի որ մեծութեան ընչիցն ըղձանան՝ ոչինչ աշխատութիւն զմտաւ ածեն յայլմէ յայլ գաւառս հեռագնացս ուղևորութեամբ, որպէս զի շահն աճեցուցեալ մարթասցին, նաև ընդ համատարած ծովուն ծփանս նաւարկեալք, որ բարկացայտ ալեաւքն լեռնացեալ կոխաձև դաշտանան, անդընդապտոյտ խորոցն բքացեալ կուտիցն մէտ առ մէտ ալեացն ահս պակուցեալ տեսողացն արկանելով...։ Ըստ նմին աւրինակի բարեմիտ և աստուածահաճոյ գրոց աշակերտն Գրիգոր կրաւնաւորն ի խնդիր ելեալ այսմ հոգիանորոգ և լուսերանգ, վարթափթիթ և ծաղկաւէր անուշահոտ

բուրաստան[ի]... յիշատակ իւր և ծնողացն... և ստացաւ ի հալալ արդեանց յիշատակ իւրն, և ծնողաց իւրոց՝ հաւրն Եղիազարու և մաւրն Սառայի, և հարազատ եղբարցն Յոհանէսին, Յովանէսին, և Սահակին, և Խաթունին, և վարպետին իւրոյ Գրիգոր աբեղային, և հաւրեղբօրն Ստեփանոսին, և Խլաթին, և ամենայն արեան մերձաւորացն։

Դարձեալ յերես անկեալ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այս մատենիս յիշեսջիք յազաւթս ձեր զվերոյ գրեալսդ...։ Ո՛վ դասք լուսերամից, աղաչեմ զձեզ պատրաստ բռնեցէք զմոմն, որ չկաթէ ի մէջ գրոցն։ Կատարողք աղաչանաց մերոց աւրհնէք յաստուծոյ և յամենայն սրբոցն նորա, ամէն։

Մակոնատ կածնի Մկրտիչ խաբեբայս և ոչ աբեղայս, որ զյիշատակարաններն գրեցի զԴ. ամսոյ, յերես անկեալ աղաչեմ յիշել առաջի անմահ գառին Յիսուսի և մեղաց թողութիւն խնդրել, ամէն։

Բ.

293բ Աւաղ, հոգիս կու ելանէ ի գրելն։ Աստուած զողորմի թխթիս նըշայողի հոգուն, ամէն։

## 478

### ԱԻԵՏԱՐԱՆ

Փիրղ. 6273, էջ 323—324, Կարին՝
ս. Աստուածածին եկեղեցի

գրիչ՝ Գրիգոր Բերկրցի
վայր՝ Բերկրի

...Ուստի և տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ աստուածաբան և քաջ հռետորն և մեծ րաբունապետն Մկրտիչ, և եռափափաղ սիրով... ետ գրել-հարազատի իւրոյ՝ Գրիգորի անարժանի՝ ի վայելումն մանկանց Սիովնի և յիշատակ բարի ի դրունս սուրբ եկեղեցւոյ հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց հօրն Աթաբէկին և մօրն Շահշահանի, և եղբօրն Գրիգորի...։

Եւ արդ, ես յետինս ի կրօնաւորաց... Մկրտիչ սոսկանում վարդապետս ստացայ զսուրբ Աւետարանս առ ի թողութիւն մեղաց...։ Աստուած ողորմի ասացէք ինձ և ամենայն վերագրելոց ի սմա...։

Դարձեալ, աղաչեմ յիշել ի Քրիստոս զսրբասէր և զմաքրամիտ արհիեպիսկոպոսն զՍահակ և զծնօղսն իւր, որ օգնական եղև ի զարդ սուրբ Աւետարանիս...։ Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԻԴ. (1475), ձեռամբ անիմաստ Գրիգորի Բերկրցոյ, ի հայրապետութեան տեառն Սարգսի, ի գաւառիս Տարբերունի, որ այժմ ասի Բերկրի, ի սուրբ ուխտս որ կոչի տէր Յուս[կ]այ որդի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յարութեանս, և սուրբ Կարապետիս, և սքանչելագործ կարմիրակն սուրբ Նշանի, և դամբարանի սուրբ վարդապետին տէր Յուսկան որդւոյ, և յառաջ-

նորդութիւն տէր Յովհաննէս արհիեպիսկոպոսի, և Մկրտիչ վարդապետի՝ ստացողի Աւետարանիս, և այլ միեղէն եղբարցս, որ աստ կան։

Յայսմ ամի է թագաւոր ի Թաւրէզ Հասան-բէկն՝ եկեալ ի Միջագետաց, և տիրէ աշխարհս Արևելեան. և մեք եմք ի բազմադիմի նեղութիւնս. մինչ Քրիստոս աստուածն մեր այց արասցէ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Այլ ես աղաչեմ յիշել ի բարին Քրիստոս զբազմերախտ հոգևոր ծնողն և ղուսուցիչն՝ զմեծ րաբունաբետն Մկրտիչ. որ սնոյց զմեզ և զգիրս ուսոյց. տէր աստուած տացէ նմա վարձս փոխարինի՝ զերկնից արքայութիւնն. և Քրիստոսի աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս, ամէն։

## 479
## ԱՒԵՏԱՐԱՆ

ԼՕՎ 194, սյուն. 471—473, Լեմ անապատ 13

գրիչ՝ Խաչատուր
վայր՝ Կտուց անապատ

...Արդ, յանգ ելեալ կատարեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան սուտ աբեղայի Խաչատրու, ի ներքսագոյն և աստուածաբնակ յանապատիս, որ կոչի Կտուց, ընդ հովանեաւ սուրբ սքանչելագործ և դիւահալած սուրբ Կարապետիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Ստեփաննոսիս, և Գրիգորիս, և սրբոց Հռիփսիմեանցս, որ աստ կան հաւաքեալ, թուաբերութեանս Հայոց ՋԻԴ. (1475)։ Ի դառն և ի նեղ ժամանակիս, որ չգիտեմք, թէ ի՞նչ տի լինի Հայոց ազգիս։

Ի գայլոց միջիս շիվարեալ կանք ողորմելի,
Սպառել ենք մեղաւք հանապազ ի հոգս աշխարհի,
Աղաւթք և աղաչանք չունինք առ աստուած, որ մեզ ողորմի
Ըզսէր աշխարհի ունինք՝ աստուծոյ եղեալ թշնամի։
Հանապազ բերան լալ պիտի, թէ զի՞նչ տանք մեք պատասխանի
Յորժամ արարիչըն գայ և քըննաւղ լինի ամենի.
«Եկայք» արդարոցն ասէ, զմեղաւորքըն դատապարտէ։
Աւա՜հ ու հազար աւա՜հ, ճըշմարիտ, որ այս տի լինի։
Դարձեալ, աղաչեմք ըզձեզ՝ զմանկունքըդ սուրբ Սիոնի,
Յորժամ հանդիպիք տառիս յիշեցէք զստացողն յաղօթի,
Զմեռեալ տառապեալ գերի՝ զհողացեալքն ի գերեզմանի,
Քրիստոս-ողորմի ասացէք, որ յանգչին ի յաւթեվանի։
Եւ ձեզ ո[ղո]րմի Քրիստոս ի յահեղ աւուրըն մեծի,
Ի յաջակողմեան դասուն ձեզ պըսակ փառաց պատրաստի,
Զեկայքըն լսել տայ ձեզ՝ ժառանգեալ զդրախտըն ադենի, ամէն։

Դարձեալ, աղաչեմք ըզմակնունքդ սուրբ եկեղեցւոյ, յորժամ հանդիպիք տառիս յիշեցէք զստացող սուրբ Աւետարանիս, որ այսմ աստուածեղէն և երկնապարգև գանձիս և լուսափայլ մարգարտիս ցանկացող եղեալ՝ սրբասէր և բարեմիտ խոջայն Էդըլշէն և մայրն իւր Գաւնգուլլէն, և փափաքեաց սմա որպէս միեղջերուն, որ ի յոլովութենէ հրահանք մա-

սին բաղձա աղբերց ջրոյ, ըստ բանի երջանկին Դաւթի։ Պասքեալ հացին կենաց և ապաւինեալ ի մարդն ճշմարիտ և ի գառն աստուծոյ, զոր պատմէ աւետաբարբառն Մաթէոս։ Վստահացեալ յառիւծն խրոխտական, ի հզաւրն Յիսուս, զոր ծանուցանէ Մարկոս։ Աւժանդակեալ յեղն պարարակ և ի զուարակն արդիւնական, զոր յայտ առնէ քաջաբան Ղուկաս։ Բուռն հարեալ արծուաթռիչ բարձրութեան, որ բերէ ի վերայ միջնողան, որպէս գրէ որդին աւրինաց, որ բերէ զաւրինակ աստուածաբան Յովհաննէսն...*։

Եւ արդ, ես՝ յետինս ի կարգաւորաց, և անբարիս ի բարի գործոց, և անարժանս ի մանկունս եկեղեցւոյ, և անիմաստ ի գիրս գրչութեան Խաչատուր սուտ աբեղայ, վա՜յ և եղուկ է ինձ որ չեմ արժանի կարգիս և անուանս, աղաչեմ ամաւթալի դիմաւք և արտասուալի աչաւք զսուրբ անձինքդ, զի խոշորութեան և սխալանացս անմեղադիր լինել, զի կարմեր այս էր։ Եւ մի բերան աստուած-ողորմի ասացէք, և ողորմածն աստուած ողորմեսցի առհասարակ մեծի և փոքու և աւրհնեսցէ հոգով և մարմնով աստ իւր միւսանգամ գալուստն, ամէն...։

## 480

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 4992**

գրիչ՝ Ազարիա
վայր՝ Վան

...Որոյ ցանկացող եղեալ երջանիկ և սրբասնեալ և բարեմիտ տա-
260բ նուտէրն Պետրոս և ջանաց ստանալ զանաւրէկ փարթամութիւնս և ||
զգանձս անկողոպտելի, յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց՝ հաւրն Թումին և մաւրն Խէր-Խաթունին, և կողակցին իւրոյ Բաղդատին, և դըստերն Դուրդանին, և եղբաւրն Վարդանին, և եղբաւրորդոյն իւրոյ Սարգիս քահանային, և քուերն Դոնարին, և քուերդստերն Մրջանին, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն...**։
261ա Արդ, ես՝ յետնեալս յամենայնի և ղառածեալս մեղաւք Ազարիայ սուտանուն քահանայ, որ զանունս ունիմ և զգործս ոչ, տեսի զեռափափաք սէր և զջան հեզահոգի տանուտրոջն զՊետրոսին, և ձեռնարկեալ դրեցի զսուրբ Աւետարանս ի քաղաքս Վան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սրբոյն Պաւղոսի և սրբոյն Սահակայ և սրբոյն Վար-
261բ դանայ։ Ի թվականիս մերում ՋԻԴ. (1475)։ || Եւ ի կաթողիկոսութեանն էջմիածնին Սարգսի, և կաթողիկոսութեանն Աղթամարայ Ստեփանոսի, և ի թագաւորութեանն Հասան-բէկին:

---

* Դուրս ենք թողել երկու ընդարձակ պարբերություն, ուր հիշատակված են ստացողների բազմաթիվ ազգականները։

** Բաց ենք թողնում մի ընդարձակ հատված, ուր հիշատակվում են ձեռագրի ստացողների նորանոր ազգականների բազմաթիվ անունները։

Արդ, յերես անդեալ աղաչեմ զձեզ հարք և եղբարք, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշման արժանի արարէք զԱզարիայ գծող, և ղծ[ն]օղսն իմ և զուսուցիչ զԿարապետ քահանայն, որ նահատակեցաւ ի յԱրճէշ քաղաքի, և զՍադղաք, և զեղբարքն իմ՝ զկենդանիք և ղհանգուցեալքն ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալուստն, ամէն...*։

## 481

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 5013**

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

ա

288բ ...Աւարտեցաւ այս մարգարտաշար ակնս պատուական... արդեամբք հալալ վաստակաւք աղքատ Յովսէփին, որ ետ գրել զայս լուսատր և զպայծառ հրամանս տէրունական զսուրբ Աւետարանս... յիշատակ հոգւոյ եւրոյ և ծնողաց իւրոց՝ ժամհար Մկրտչին և Շնաճորին...։

289ա ...Եւ արդ, ես՝ Թափուրս ի բարեաց գործոց Կարապետ սուտանուն էրէց, մեղսամած մատամբ կատարեցի զսուրբ Աւետարանս՝ զբերանս Քրիստոսի և զքարոզս Յիսուսի տեառն աստուծոյ ի քաղաքս Վան, ընդ
289բ հովանեաւ սուրբ || Աստուածածնի տաճարիս և սուրբՍտեփաննոս նախավկայիս և սուրբ Սահակ հայրապետի, ի թըւականիս մերոյ ՋԻԴ. (1475), ի հայրապետութեան տեառն Յոճաճիսի, ի թագաւորութեանն Խասան-բէկի:

Արդ, աղաչեմք զմանկունսդ սուրբ եկեղեցւոյ յիշեցէք ի Քրիստոս և ի սուրբ յաղօթս ձեր զյառաշ յիշեցեալ ստացող սուրբ Աւետարանիս և զքրիստոսասէրն Յովսէփ, և զծնաւղքն իւր՝ զհայրն զՄկըրտիչ և զմայրն Շնովճոր, զեղբարքն զՅովանէս և զՋանիբէկ, զքըւերքն զՍուլտան-Մէլէք և զԳուլիմըրսի, զքըւերորդիքն՝ զԿարապետ քահանայ և զՅոճանէս, զկենակիցն զՀէր-Խաթուն, որ ստացան զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իւրեանց և եդին ի ձեռն Կարապետ քահանային, յիշատակ բարի հոգւոց իւրեանց, և ծնօղաց իւրեանց, և ամենայն ազգականացն։ Եւ որք աւգտիք ի սմանէ կարդալով կամ աւրինակելով լի սրտիւ աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

290ա Եւ դարձեալ յերես || անկեալ եմ առաւել աղաչեմք զձեզ յիշեցէք ի Քրիստոս և ի սուրբ յաղօթս ձեր և զիս՝ զանարժան Կարապետ գծող, և ծնողքն իմ զՍտեփանոս քահանայ և զՄինտյ, և զորդիքս իմ զՍտեփանոս քահանայ և զՄեսրոպ, և զամենայն ազգականս իմ, և զայնոսիկ, որ ի վերայ մեզ երախտիք ունին. և բոլոր սրտիւ և լի բերանով աստուած-ողորմի ասացէք։ Եւ Քրիստոս-աստուած, որ առատն է ի տուրս բարեաց ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի, ամէն։

* Այս նույն հիշատակարանը, համառոտված ու սխալներով, տպագրված է Գ. Սրվանձտյանի «Թորոս Աղբար»-ի Բ. հատորում (էջ 276)։ Հրատարակիչը թվականը սխալմամբ կարդացել է ՋԻԴ. (1475)-ի փոխարեն՝ ՋԽԴ. (1495)։

ծաղկող՝ Մինաս

Բ

ԶՄինաս անարժան ծաղկողս յիշեցէք ի Քրիստոս*։

482

ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. 6273, էջ 321, Վանի Տիրամայր եկեղեցի

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Վան

...Արդ, յանդ ելեալ կատարեցաւ սուրբ Աւետարանս... ի քաղաքիս Վան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի Տաճարիս, և սուրբ Ստեփաննոս Նախավկայիս, և սուրբ Սահակ հայրապետիս... ձեռամբ Կարապետ իրիցոյ... ի թուականիս Հայոց ՋԻԴ. (1475), ի յաթոռակալութեան սուրբ ուխտիս Վարագայ տէր Յովանէս եպիսկոպոսի, և ի թագաւորութեան Հասան-բէկի:

Արդ, աղաչեմ զմանկունսդ սուրբ եկեղեցւոյ՝ յիշեցէք ի Քրիստոս. զստացող սորա զաստուածասէր և զբարեպաշտ ուսկերիչ Ասպանճանշէն, ...որ ետ ի դուռն Տիրամայր Աստուածածնի տաճարին։

483

ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր-Ջուղա 409, Մ.Տ.Մ. և Ս.Տ.Ա

գրիչ՝ Ներսէս
վայր՝ Աղթամար

Ա

328ա ...Եւ արդ, ես՝ ...Ներսէս արքեպիսկոպոս... գրեցի զսուրբ Աւետարանս ի կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, ի թուականութեան մերում Ջ. և ԻԴ. (1475) ամի, ի հայրապետութեան տեառն Ստեփանոս կաթողիկոսի՝ հարազատ եղբաւրն իմոյ, և յաշխարհակալութեան Հասանբէկին...։

Եւ արդ, ես՝ Յովանէս էրէմէրցի, որդի Պէշգէնի և Եղիսաբեթի, ստացա զսուրբ Աւետարանս ի հալալ և ի քրթնաջան վաստակոց իմոց/// և գթացէ ի բարի ծառայն իւր Յովանէսն, և թողցէ զամենայն յանցանս նորին, և զբարի ծնաւղաց նորին՝ զհայրն զՔօշբէկին և մօրն զԵղիսաբեթին, և զեղբարցն, ես առաւել ինձ՝ մեղաւորիս՝ տառապեալ ոգւոյս Ներսէս եպիսկոպոսիս, և իմ ծընօղացս՝ Գուշիբէկին և էմնա-խաթունին, և ամենայն արեան մերձաւորացն մերոց՝ կենդանեաց և հանգուցելոց, լի բերանով աստուած-ողորմի ասացէք մեզ առհասարակ, և Ջանազըրգին, և այնոցիկ որք յանձնեցին ի մեզ յիշատակել և գրել յաստուածախաւս սուրբ Աւետարանս։

Բ

154ա Ո՜վ սրբասէր և պատուական ընթերցաւղք և ունկնդիրք, աղաչեմ զձեզ սիրովն աստուծոյ յիշել... մեղսամած անձինս Ներսէս անարժան գծողի

* Գրված է Մատթեոս ավետարանչի նկարից ցած՝ 10բ էջի ստորին լուսանցքում։

մեղուցեալ եպիսկոպոսի, և եղբօրն իմոյ տեառն Ստեփաննոս Հայոց կաթողիկոսի և վերադիտողի, և ծնօղացն մեր Կուռչիբէկի և Էմնայի, և ամենայն ազգայնոցն, ամէն, և ստացողի սուրբ Աւետարանիս Յովաննիսին և իւր ծնօղացն աստուած ողորմի...։

484

ԱՒԵՏԱՐԱՆ

ԼՕՎ 197, ձյուն. 480, Փիրք. 0273, էջ 322, Ակրու վանք

գրիչ՝ Հօրստակէս
վայր՝ Բազենց անապատ

...Արդ յանդ ելեալ կատարեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան և անարհեստ գրչի Հօրստակէս սուտանուն աբեղայի, որ մեծաւ աշխատութեամբ գրեցի զսա ի վայելումն Յովանէս աբեղային...։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս յանապատիս՝ որ կոչի Բազենց, ընդ հովանեաւ սուրբ Էջմիածնիս և սուրբ Աստուածածնիս, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս սրբասէր և հեզահոգի Յակոբ եպիսկոպոսին, և հէրպետութեան Կարապետ աբեղային՝ յոյժ խոնարհ և բարեմիտ և քրտնաջան ի բանս սուրբ ուխտիս, ի թուաբերութեանս Հայոց ՋԻԴ. (1475), ի դառն և ի նեղ ժամանակիս, որ չգիտեմք ինչ տի լինի Հայոց ազգիս ի գալոց միջիս։

485

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 226

գրիչ՝ Սարգիս
վայր՝ Պառուագրկու վանք

345ա ...Ի յամս հայկազեան թուաբերութեան տումարին, յորում էր թիւ համարոյ թուականին թորքոմեան տոհմին ինն հարիւր և ԻԴ. (1475)-ին, ապարտագործեալ եղև սուրբ և կենսատու Աւետարանս...։

...Արդ, լրացաւ սուրբ Աւետարանս ի վանքս Պառուագրկու, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս, և աստուածընկալ սուրբ Նշանիս, և այլ
347բ բազմահաւաք որրոցս, որք աստ կան հաւաքեալ, և յառաջ||նորդութեան երանաշնորհ սուրբ հաւրս մերում տէր Կարապետ հայրպետի և այլ ամենայն եղբայրսիրութեանս մերում՝ հնգետասան կրանաւորացն, որք աստ կան ժողովեալ, որոց անուանք սոցա գրեալ են ի դպրութիւն կենաց։

Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով և կամ տեսանելով, յիշեսջիք ի Քրիստոս-աստուած զստացաւղ սուրբ Աւետարանիս զբարի և զհաւատարիմ և զհոգևոր ծերունին Սիմէոնին և զկողակիցն իւր
348ա զԿիրա-Խաթունն, որ ստացաւ զսուրբ Աւետար||անս յիշատակ իւր, և ծնողաց իւրոց Տրպաւին, և մաւրն իւրոյ Մանանին, և հանգուցեալ զաւակացն Պետրոսի, և Պաւղոսի, և Սահակի...։

Ընդ նմին և զբազմամեղ գրիչս զՍարգիս սուտանուն քահանայ, և զծնաւղսն մեր, և զամենայն երախտաւորքն մեր, և զքոյրն իմ Հըռիփսիմէ, և զհարսն իւր զԷլխաթունն...։

486

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 4690

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Հիզան

...Արդ, զայս լուեալ հաւատարիմ և իմաստուն և հոգևոր, աստուածասէր և աղքատասէր խոջա Դամուրն, ցանկացող եղեալ աստուածային տառիս այս... ետուր գրել զպատմութիւն սրբոցս, որ հաւաքեալ կան ի սմայ՝ յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնօղացն՝ հօրն Յովանիսին, և կենակցին Խուրլու-Մէլէքին, և Ալմաշին, ամէն։

Արդ, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան յիշեցէք ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք խօջա Դամուրին, և կենակցին Ղարիպ-Խաթունին, և զաւակացն սոցին Վարդանիսին, Ըռստակիսին, Մելքիսեթին, Մուրատշին, և Կարապետին, Մխանին, և Գօզալին, և ամենայն արեան մերձաւորաց, յիշեցէք և աստուած-ողորմի ասացէք լի բերանով և բոլորով սրտիւ, և որ առատն է ի տուրս բարեացն պարգևեսցէ և յիշողացն զառատ ողորմութիւն իւր, ամէն։

Դարձեալ, աղաչեմ զամենեսեան յիշեցէք ի Քրիստոս զխօջա Դամուրն, և զեղբարսն իւր զՍիմէոն, զՍիրուն, և զԷլբէկն, և զծնօղսն սոցայ զՅովանէսն և զԵղիսէն, և զամենայն արեան մ՚րձաւորսն, ամէն։

Արդ, կայցէ սա ի դուռս սուրբ Աստուածածնիս, և սուրբ Յարութեանս, և սուրբ Սարգսի զօրավարիս, և որդւոյ նորա Մարտիրոսի, և սրբոյն Գէորգեայ, որ է սակաւ մի հեռի։ Եւ թէ ոք յանգգնի կամ յեղբարց իմոց կամ յազգականաց կամ յընդանեաց, կամ ծախէ, կամ գրաւէ, նա զանէծսն Կայենի և զՅուդային առցէ և զայլ խաչահանուածսն, ամէն։

Դարձեալ յերեսս անկեալ աղաչեմ կողկողագին պազատանաւք յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զանպիտան և զախմար գրիչս զՅովանէս քահանայս, և զծնօղս իմ զԹումայ քահանայն և զԽոնդ-Մելիքն...:

Արդ, գրեցաւ տառս այս ձեռամբ յոգնամեղ անարհեստ գրչի Յովանէս քահանայի, և իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան գրիս, զի կար մեր այս է։ Յիշեցէք ի Քրիստոս զուսուցիչն իմ զՄկրտիչ քահանայն և զորդին իւր զՅովանէս քահանայն, վարձս բարեաց պարգևեսցէ Քրիստոս իւրն, և իւր ծնօղացն, ամէն, և ամենայն արեան մերձաւորացն մերոց, առհասարակ, լի բերանով աստուած-ողորմի ասացէք, ամէն։

Արդ, գրեցաւ տառս այս ձեռամբ երկուց Յովանէս քահանայից, ի քաղաքիս որ կոչի Հիզան, ի թվականութեանս Հայոց ի ՋԻԴ. (1475), ի հայրապետութեանն Էջմիածնին տէր Սարգսի և Աղթամարայ տէր Ստեփաննոսի:

## 487

### ԱՒԵՏԱՐԱՆ

*ՄՑՎ 144 (1113), հտ. Ա. 624*

*գրիչ՝* Մարգարէ
*վայր՝* Բալու գաւառ, Նեխրի գիւղ

274բ *...Արդ, այս անմահական՝ ըմպելոյ և անգին մարգարտիս և ամենագով աւրինակիս փափաքաւղ եղեալ անարժան և անիմաստ և մեղաւք լցեալ գրիչս սուտանուն աշխարհի էրէցս* Մարգարէ, *գրեցաւ սայ ի* Բալու *գաւառի, ի դեղն որ կոչի* Նեխրի, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ի թվիս Հայոց ՋԻԴ. (1475)։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք զսուրբ Աւետարանս զայս, և կամ աւրինակէք, և կամ հանդիպիք սմա, յիշեսջիք յաղաւթս ձեր և թողութիւն խնդրեցէք ինձ՝ մեղապարտ գրչիս* Մարգարէի, *և իմ ծնողացն* Գրիգոր *քահանային, և մաւր իմ* Նորխաթունին, *և* Ոդիտին, *և եղբօրն իմ* Յովանիսին, *և ամենայն մերձաւորաց՝ կենդանեաց և մեռելոց, ամէն։*

*Ընդ նմին և զստացաւղ սուրբ Աւետարանիս* զԱսըլպէկն, *և զկենակիցն իւր* զԽութլուն, *և* զԱստուածատուր *քահանայն, և* զԱմի[ր]պէկն, *և* զՆըշըրվանն, *և զՔէ (՞) ամենայն արեան մերձաւորս...։*

## 488

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրդ. 6273, էջ 320—321, Արապկիր*

*գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Տիվրիկոյ գաւառ,
Խուռնաւիլու վանք

*...Արդ, ես՝ նուաստ հողս* Գրիգորս՝ *ծոյլս և անարժանս ի կրօնաւորս, շնորհիւն աստուծոյ և ողորմութեամբ նորին գրեցի զսուրբ և զկենսունակ Աւետարանս ի պայծառութիւն մանկանց նորին։*

*Գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՋԻԴ. (1475), ի գաւառիս* Տիվրիկոյ, *ի սուրբ և ի գերահռչակ անապատս որ կոչի* Խուռնաւիլու, *ի դուռս սուրբ Աստուածածնին, և սուրբ Լուսաւորչին, և սուրբ Յոհաննէս աւետարանչին, և աստուածընկալ սուրբ նշանաց որ աստ։*

*Այլ վասն նեղութեան ժամանակիս, որ գայ և հասանէ չարն, հանեն և թագուցանեն ի յամրոցին՝ մինչև անցանէ բարկութիւն, և օրինակ մի՛ խնայեսցէ ոք։ Իսկ խնամով պահողքն օրհնին յաստուծոյ և ամենայն սրբոց. երբ որ խաղաղութիւն լինի՝ դարձեալ ի յետ բերեն ի սուրբ Փրրկիչս և ի սուրբ Նրևումս։ Այլ և զքիմխայ կարմիր շուրջառն իմ դրի հետ Աւետարանիս յիշատակ ինձ՝* Գրիգոր *աբեղիս և ծնողացն իմոց՝ ներկրար* Գրիգորին *և* Շուշանին:

## 489

### ԱԴԱՄԳԻՐՔ ԱՌԱՔԵԼԻ ՍԻՒՆԵՑԻՈՅ

Վենետիկ 568

գրիչ՝ Ներսէս
վայր՝ Ամասիա

....Ներսէս քահանայս, որդի Ստեփան քահանայի, գրեցի զսա յաշխարհիս Հոռոմ կոչեցեալ, ի մայրաքաղաքիս յԱմասիա, առ ոտս սուրբ Նիկոլաւոսի սքանչելագործ և արագահաս հայրապետի, ի թուին Հայոց ՋԻԴ. (1475), յամսեանն յունիսի ի Թ. (9), աւուր չորեքշաբթի (՟), պահոց սուրբ Գրիգոր Լուսաւորչի աւարտ եղև գրոց, ի հայրապետութեան տեառն Սարգսի, յեպիսկոպոսութեան տեառն Յովանիսի:

## 490

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7831

գերութիւնից ազատող՝ Աւետիք
վայր՝ Կ. Պօլիս

295ա Ի թվականիս Հայոց ՋԻԴ. (1475), յունիս ամսոյ Զ. (6) Իսմայէլացիքն առին զԿաֆայն. և գերեցաւ սուրբ Աւետարանս և բերաւ ի յՍտըմպալ. և ես՝ Աւետիքս գնեցի և եդի սրբոյն Սարգսի տաճարն, ի յիշատակի վերացման խաչին կիրակին։

295բ Զվերջին ստացող սուրբ Աւետարանիս ըզպարոն Աւետիքն յիշեսջիք հանդերձ ծնողովք, որ ստացաւ զսուրբ Աւետարանս ի յայլազգեացն, որ դերեալ ի Կաֆայէն և բերին ի յՍտըմպալս: Եւ ես՝ Աւետիքս, որ եմ Տրապիզոնցի և եմ այժմ սուրկուն ի յՍտըմպալս, ի Յայթոթոսիայի մահալան, ի դուռն սրբոյն Սարգսի զաւրավարին։ Եւ այժմ ես՝ Աւետիքս ըստացա ըզսուրբ Աւետարանս յիշատակ ինձ՝ Աւետիքիս, և հաւրն իմոյ Մխիթարին, և մաւրն իմոյ Փաշա-խաթունին, և կենակցին իմոյ Թուրվանտայ-խաթունին, և աներոջն իմոյ Սիմէոնին, և զոքանչին իմոյ Փաշա-խաթունին, և զաւակաց իմոց՝ Քարամ-խաթունին և Տովլաթ-խաթունին, և հաւրեղբաւրն իմոյ պարոն Վարդին, և որդուն իւրոյ մալազ տէր Գէորգ աբեղին, և ամենայն զարմից իմոց՝ կենդանեաց և հանգուցելոց, և ամենայն ընթերցողք սուրբ Աւետարանիս և պատահողք և տեսանողք սմա յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զվերոյգրեալ զպարոն Աւետիքն՝ իւրաովքն, ամէն։

296ա Այլ և աղաչեմք զդասս քահանայից և զընթերցաւղք սուրբ Աւետարանիս, որ ամ յամէ տեառն ծնընդեան և յայտնութեան Յիսուսի Քրիստոսի յուսոյն մերոյ ճրագալուցի աւուրն՝ կարդայք զյիշատակարան սուրբ Աւետարանին և Աստուած անեղ և Քրիստոս որդի և Հայր մեր որ յերկինս և Աստուած-ողորմի ասէք յիշատակ տուողացն՝ պարոն Աւետիքին և իւրայոցն, և Քրիստոս աստուած, որ առատն է ի տուրս ողորմութեան, առհասարակ, ողորմեսցի յիշեցելոցս, և յիշողացդ ողորմեսցի, ամէն։

## 491

### ԱՒԵՏԱՐԱՆ

*«Միաբանք և այցելուք Երուսաղեմի», էջ 475*

գրիչ՝ Սողոմոն
վայր՝ Երուսաղեմ

*... Արդ, գրեալ եղև սա ի սուրբ քաղաքս* Երուսաղէմ, *ընդ հովանեաւ կափարիչ սուրբ վիմիս գերեզմանին Քրիստոսի, և սուրբ բանտիս, և այլ ամենայն սուրբ տնօրինականացս Քրիստոսի աստուծոյ, որ կան ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի թվին Հայոց ՋԻԴ. (1475), ի հայրապետութեան Սսոյ Հայոց տեառն* Ստեփաննոսի, *և յեպիսկոպոսութեան սուրբ քաղաքիս Երուսաղէմի տէր* Մկրտիչ *արհեպիսկոպոսի, ի խնդրոյ վերոգրեալ* Մխիթար *քահանայի* Հնշատեցւոյ:

*Արդ; աղաչեմ զձեզ հանդիպողսդ սուրբ Աւետարանիս, յիշեցէք...* զՄխիթար *քահանայ, որ ստացաւ զսուրբ Աւետարանս և եդ զսա ի սուրբ Փրկիչ, ի յիշատակ... հայրն իւր* Զաքարիային, *և մայրն իւր* Սաադատին, *և եղբարց իւրոց հանգուցելոց ի Քրիստոս* Ստեփանոսին *և* Ջալալանին, *և քուերցն* Շաքարին *և* Մրուարին, *և եղբաւրորդւոց իւրոց* Մկրտչին *և* Զաքարին...:

*Այլ և յիշեցէք զփակակալ սուրբ Փրկչին զտէր* Տանականն, *և զհայր* Թադէոսն, *որ աշխատեցաւ ի սրբագրելն զսուրբ Աւետարանս, և զճրդնաղդեաց հայրն* Երուանշայ, *նաև զռայիս* Ղազարն:

*Արդ, գրեցաւ սա ի լաւ և յընտիր աւրինակէ, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ փծուն գրչի պիտակ և սնոտանուն* Սողոմոն *աբեղայի, որ անուամբս միայն կոչիմ և գործով եմ տարագիր և յոյժ հեռի...։*

*Ի թվիս Հայոց ՋԻԴ. (1475), յորում գրեցաւ սուրբ Աւետարանս, առին* զԿաֆան *տաճիկն, և արարին բազում դերութիւնս և աւերումն, և եղև յոյժ տրտմութիւն և սուգ քրիստոնէիցս. և այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց...։*

## 492

### ՄԱՇՏՈՑ

*Սևան 5262*

գրիչ՝ Դանիէլ

149բ *...Արդ, գրեցաւ տառս աստուածային որ կոչի, Մաշտոց ի թվականիս Հայոց ՋԻԴ. (1475), ձեռամբ մեղաւոր և անարհեստ գրչի՝ սնոտանուն քահանայի* Դանիէլի: *Աղաչեմ զձեզ, ո՛վ մանկունք եկեղեցւո, որք հանդիպիք սմա տեսանելով կամ աւրինակելով միով տէր ողորմիւ յիշեցէք զմեղաւոր Դանիէլս. և զիմ ծնաւղսն, և զամենայն արեան մերձաւորս իմ, և աստուած յիշողացդ և յիշեցելոցդ ողորմեսցի, ամէն**...։

* *Շարունակությունը գրված է այլ ձեռագրով։*

150ա *Արդ, գրեցաւ տառս աստուածային որ կոչի Մաշտոց ի խնդրոյ Շահմելեկին, որ է ի Կճու զաւառէն, որ ստացաւ զսա ի հալալ վաստակոց իւրոց յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, և իւր քուրոշն Խոնզային, որ վասն իւր հոգոյն գնեցաւ սայ....*

*Եւ այլ ոք մի զսա վաճառեսցէ և կամ զգինն կերիցէ և որ անտգնի և վաճառէ՝ ընդ բ՚սնիւ լինիցի։*

## 493

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 531։

վայր՝ Վան

222բ—223ա *Քրիստոս աստուած ի քո ահաւոր գալըստեանն յիշեա յարքայութեան քում զպատուական քահանայն զտէր Կարապետն, և զեղբայրն զՅովանէս, և զծնողս նոցին զտէր Մկրտիչ, և զամենայն տանուտէրք Վանայ քաղաքիս՝ զմեծ և զփոքր, որ կանգնեցան և շինեցան զկումբէթ սուրբ Պաւղոս առաքելոյն։ Քրիստոս աստուած զիւր արքայութիւնն նոցա պարգևէ, ամէն։*

*Թուական ՋԻԴ. (1475)*։*

## 494

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱՄՈՒԷԼԻ ԱՆԵՑՒՈՅ

Երևան 5619

226բ *Գնեցի զայս գիրքս, որ է փաւազանք ի թվին ՋԻԴ. (1475), մէկ կռապաշտ ԻՊԻԿ** մն, որ անունն այս է։*

* Ձեռագիրը հիմնականում ընդօրինակված է 1465 թ., Վանում, Վարդան դպրի կողմից: Վերջին էջերը, 1471 թ. ընդօրինակել է Դանիել գրիչը, որը մանր հիշատակագրություններ է թողել 548բ և 593ա էջերում: Ստորև տալիս ենք առաջին հիշատակագրությունը. «Արդ, գրեցաւ ճառս ի թագաւորութեան Հասան պարնին, ի շրջագայութեան տոմարիս ՋԻ. (1471): Արդ, Հասան պէկն այս Գ. (3) տարի է, որ թագաւորեաց ի Պարս, և յԱրևելս, ի Միջագետս, ի Հարաւ, և ի Հիւսիս խաղաղութեամբ, կամաւն աստուծոյ»:

** Հապավված անուն է. վերծանել դժվարանում ենք:





## 495

### ՅԱՍՄԱՒՈՐՔ

Երևան 4876

գրիչ՝ Գրիգոր և Յովսէփ

510ա Փառք... որ ետ կարողութիւն տկար և տարտամ անձին Գրիգորի սուտանուն քահանայի և Յովսէփ քահանայի, որ յանձն առինք և աւարտեցինք զսա, որ օր ըստ աւուր սոսկացնէ զոսկերս լըսողաց սորա պատմութիւն կարծրագոյն տանջանաց և սքանչելի չընաշխարհիկ վարուց սրբոցն, որ աստ հաւաքեալ կան։ Որոց սիրատարփ տենչմամբ և եռափափագ ըղձմամբ սրտի ցանկացող եղեալ ամենագով և բարեպաշտ Թումանշէն և Նիկարշա-խաթունն, որ ստացան զսա յիշատակ բարի իւրեանց, և ծնողաց նոցին Մուրատշային, Վասիլ-խաթունին և Դիմաք-
510բ խաթունին, և զաւակաց՝ Աւագշային և Պուտախին և Մարտանշա||յին:

Եւ մեք անպիտանքս փըցնագիր և մատնադեղեւ գրիչքս Յովսէփ և Գրիգոր տեսաք զփափագ բարեպաշտ Թումանշին և յանձն առեալ սկըսաք յամի ՋԻԵ. (1476) թըւականիս մերում, որ յայսմ ամի եկն արեանարբու բեկլարբեկի տէրն թաղթին, մարդադէմ գազանն, անագորոյն և տըմարդի Հասանն, որդի Աւքման պարնին, երթեալ ծանր զօրօք ի Վիրս* և մէգ և մառախուղ խաւարային պատեաց զմեզ վասն բազում մեղաց մերոց. և արարին ԼԶՌ. (36,000) գերի, թո՛ղ զայլսն, զոր սպանին և սրախոխ արարին։ Եւ շատ աւերք արար և պակասութիւն քրիստոնէից, մինչ զի ասէաք լերանց, թէ անկերուք ի վերայ մեր և բլրոց, թէ ծածկեցէք զմեզ։ Եւ ոչ այս միայն, այլ և զբազումս տարեալ վտարեցին յարևելք և յարևմուտք, բաժանեալ հայր յորդոյ և դուստր ի մօրէ, եղբայր եղբօրէ և սիրելիք ի սերելեաց։ Եւ այս ամենայն եկն ի վերայ վասն ծովացեալ մեղաց մերոց։ Եւ յայսմ ամի եղև աւարտումն գրոցս, ի թըւականիս Հայոց ՋԻՁ. (1477) ամին։ Աւարտեցաւ տառս աստուածային ի յերկիրս ///** ընդ հովանեաւ սուրբ Թադէոս առաքելի, և սուրբ Յակոբ

---

* Ուզուն-Հասանի դեպի Վրաստան կատարած այս արշավանքի մասին ակնարկ կա նաև Երևանի № 603 ձեռագիր Մաշտոցի 1ա և 20բ էջերի վրա կատարված ընտանեկան հիշարժան դեպքերի գրանցումներում։ Այնտեղ գրված է «Դադիոս տղայ ելաւ թվականիս ՋԻԴ. (1474). Աստուածայտուր՝ ՋԻԴ. (1475), որ Ուզուն-Հասան գնաց ի Վրաստան. ՋԾԻԷ. (1478)՝ Տիրատուրն տղայ» (էջ 1բ) և «Թվական ԹԾԻԴ. (1475) Աստուածատուրն, որ աղայ ծն.///» (էջ 20բ)։

Ինչպես տեսնում ենք, այստեղ Ուզուն-Հասանի արշավանքի թվականը ժյուրիմացաբար համարվում է 1475ը։

** Մի տող, ուր գրված են եղել ընդօրինակության գավառի և գյուղի անունները՝ քերված է։

Հայրապետի, և սուրբ Սարգսի զօրավարի և Տիրանաւոր սուրբ Աստուածածնիս։

Ի հայրապետութեան մեծ աթոռոյն տէր Յոհաննիսին ընդհանուր Հայոց կաթողիկոսի։

## 496
## ՏԱՂԱՐԱՆ

Երուսաղէմ 1193
Բ. Կիւլէսէրեան, Պատմ. կաթողիկոսաց Կիլիկիոյ, սյուն. 68—72

գրիչ՝ [Ստեփանոս Ձմշկածագցի]

460բ Աւաղ է մեզ հազար բերան,
Որ այլազգաց եղաք կոխան.
Զի հարքն մեր ազոխ կերան,
Եւ զաւակաց ատամք առան։
Զար գործեցին շատ 'ւ անհամար,
Եւ մեզ ածին մութն և խաւար,
Մեղս արարին անասնաբար,
Կործանեցան յանդունդք ի վայր։
Զի վասն իւրեանց հպարտ մտաց,
Ծուռ և մոլոր ճանապարհաց
Նզովս առեն յառաջնորդաց՝
Լուսաւորչին շառաւիղաց։
Զի զհայրապետն Արիստակէս՝
Զմարմնաւոր հրեշտակն յերկրէս՝
Սպան թագաւորն ///*
/// ի տար անդորրութիւն,
Այլ կու նեղեն յոյժ դառնագոյն։
Զսուրբ հայրապետն աստուածազգեաց՝
Զշառաւիղեալն ի Պարթևաց,
Տէրն փութով ի մէնչ եբարձ,
Զի չենք արժան ազգըս տիրատեաց։
Եւ զմեզ երետ ձեռս այլազգեաց
Հագարացի ազգին տաճկաց,
Որ կու նեղեն յամէն դիմաց
Եւ միշտ** պահեն զմեզ ի լաց։
Զքահանայս մեր անարգեն,
Զքրիստոնեայսն հալածեն
/// զեկեղեցիսն հայհոյեն,
Խաչի յերեսըն թքանեն։
Մէջ այս ամէնըս փորձանաց

* Հրատարակիչը հայտնում է, որ ձեռագրից թուղթ է ընկել։
** Տպված է, անշուշտ վրիպակով, «միտ»։

Զենք դադարիր մեք ի մեղաց,
Այլ ընթանամք զհետ չարեաց
Զերկնչելով տեառնէն բարձանց։
Վասն այսորիկ տէր բարկանայ,
Կորուսանել զմեզ կամենայ
Զազիր ազդաւն Հագարայ,
Դառնացուցէ զազգս Արամայ։
Որպէս եղև ի մերս ամի,
Զի զփատշահին կամքըն բարի՝
ԶՀասան-բէկին Աղ-ղօլուի
Մեզ դառնացոյց զերդ ը[գ]լեղի։
Հարկապահանչն յամէն տեղի
Քաշէ ծեծէ զազգըս Արամի.
Խընդրէ արծաթ 'ւ ընտիր ոսկի,
Յայնմ որ չունի փող պըղնձի։
Կապուտ նշան եդ քրիստոնեաց,
Զի բաժանին յանօրինաց.
Զմեռեալն ի ցած տանել ասաց,
Զուանով չափել զվիզս մանկանց։
Էանց զպատուէրն առաջնորդին
Զիւր կարծեցեալ փէղամբարին,
Էառ զխարաճ քահանային
Եւ զնորահաս սարկաւագին։
Այլ և զհարումն զանգակի՝
Զգուշակ փողոյն Գաբրիէլի՝
Ետ խափանել յամէն տեղի,
Գեղ 'ւ յանապատ 'ւ ի քաղաքի։
Եւ այս լինի ըստ իմ մեղաց,
Որ բարկանայ մեզ տէր աստուած,
Շրջէ զսիրտ բռնաւորաց,
Առ ի բառնալ զմեզ ի կենաց։
Որպէս եղև ի յայսմ ամի
Յինըն հարիւր Հայոց Թուի
Եւ ի քսան հինգ* սկսեալ ամի (1476),
Որ տանուտէր Կարիճն ասի,
Հասան փադշահըն մեծ սուլտան
Յամէն դիմաց հրաման եհան,
Որ զօրք բազում ժողովեցան,
Վասըն աւերմանցն Վրաց տան։
Հարիւր հազար թիւ էր համակ
Ի ձիաւոր 'ւ ի հետևակ.
Տփխիս մտին խիստ համարձակ,

* Բնագրում՝ «Յինըն Ճ. Հայոց Թուի եւ ի ԻԵ.»։

Առեալ արին զնա աւերակ։
Բագրատ Թագաւորն* Վրաց տան
Գնացեալ էր ի Լակզստան
Վասն կռւոյ և բարկութեան,
Մնացեալ աշխարհն անտիրական։
Եւ այս կամօքն աստուածային
Վասըն չարեաց Վրաց ազգին,
Որ ըղսուլտանըն կաշառեցին
Եւ զԳոզդոթայ ի մէ[ն]ջ առին։
Զթուրքմանի ձայնն երբ լուան,
Ամենեքեան ելեալ փախեան,
Ս՚այրս ՚ւ ի մացառուտս գնացեալ մտան,
՚Ի այլքն ի բերդերն ամրացան։
ԶՏփխիս առեալ և նստէին,
Զմնացեալսն ինքեանց հնազանդէին.
Գունդ մի հեծեալ պատրաստեցին
Գօռոյ վերայ յուղարկեցին։
Ընդ հասանելն՝ ըզբերդն առին,
Զարսըն սրով կոտորեցին՝
Զերեք հարիւրսն՝ որք անդ կային,
Զկին և զտղայսըն գերեցին։
Հապա ելեալք մայրին մտին,
ՏասնևհինԳ օր որոնեցին,
Զամենեսեան ըմբռնեցին,
Զար կապանօք առեալ բերին,
Զարսըն սրով խողխողէին,
Զպառաւ կանայս այլ ընդ նոսին,
Զքահանայսըն զենուին,
Առեալ զարիմն ըմպէին։
Ո՞վ կարէ գրով պատմել,
Կամ զմեռեալսն համարել,
Ըզմռնչիւն նոցա լըսել,
Որք ի յարիւնսն էին շաղախել։
Հարսն և փե[սայն նոր պսակած]**
Որ [տասն աւուրն] չէր լցած,
Նախ /// Թաւալած
[Կին ի]/// Թափած.
Ծոխ կը[աըրճ]/// մտանէին,
Զկինն և [ըզտղայսն առ]եալ գնացին

* Բնագրում՝ «Թագաւորին»։

** Փակագծի մեջ տրվում են այն բառերը, որոնք «կարկատանի վրա վերջին գրրված են»։ Իսկ երեք գծիկներով ցույց են տրվում կարկատելուց հետո գատարկ Թողնված բառերի տեղերը։

*[Քորքն ի վերայ] անկեալ լային*
*Լալ չը տային լալականին։*
*Եւ երբ տարեալ բաժանէին,*
*Ջաղայսըն ի մարցն մեկնէին,*
*Ոմանք զմայրսն ///**

## 497

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երուսաղէմ 1657 Մ.Տ.Մ.*

*գրիչ՝* Մկրտիչ երէց
*վայր՝* Տփխիս քաղաք

*...Ընդ հովանեաւ սուրբ Կաթուղիկէի և բժիշկ ցաւոց Մողնոյ սուրբ Գէորգեայ, ի խնդրոյ* Տիրատուր *քահանայի, որդւոյ* Թադէոսի *և* Աստու-մելիքայ, *ի դառն և ի չար ժամանակի** որում նեղիմք ի բռնութենէ անօրինաց, ի ղանութիւն* Հասան-բէկին, *որ և գերեաց* զՎրացտուն *և աւերեաց զքաղաքն* Փայտակարան, *ի հայրապետութեան տէր* Սարգսի***։

## 498

### ՄԱՇՏՈՑ

*Ն. Ջուղա, 335, Մ.Տ.Ա. և Մ.Տ.Մ.*

313ա *...Յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զստացող Մաշտոցիս զտէր* Դանիէլ *վարդապետ և ղեղբաւրորդին իւր* զՆերսէս *արհեպիսկոպոս* Սևանա, *և զեղբայրն իւր* զԲիրամ *և* զՄարգարէ, *և զքուրն իւր, զմայրն իւր* զՆարին-խաթուն*..., և ղեղբայրորդին իւր զտէր* Յեսային, *և զորդին իւր* Գրիգորիս *կուսակրօն աբեղայն, և զմիւս որդին* զՍահակ *և* զՄոլք, *և զայլ եղբարքն և ղորդին...****։ [Յիշեցէք և] զտէր* Ներսէս *արհեպիսկոպոս, և ղեղբայրորդին իւր* զՅակոբ, *և* զՎրդանէս *դպիրն, և* զՄարտիրոսն: *Արդ, որ ճաշակէք յաստուածային բուրաստանէս յիշեցէք յաղաւթս ձեր ի սուրբ կալի ժամ սուրբ պատարագիս* զԴանիէլ *վարդապետն և զաշակերտն իւր* զՅորդանան *վարդապետն* Տաթևոյ, *և* զԳալուստ *վարդապետն* Յոհանավանա, *և* զՍարգիս *վարդապետն* Կէտանոցի, *և* զԿարապետ *վարդապետն* Շամբիձորոյ, *և զմիաբանք սուրբ ուխտին* Սևանա *սուրբ Առաքելոցն՝*

---

* *Շարունակությունը չի պահպանվել։*

** *Մ. Տեր-Մովսիսյանի ցուցակում, ձեռագրի նկարագրության բաժնում, ընդօրինակության տարեթիվը նշանակված է ՋԼԴ. (1485)։ Սակայն, ինչպես տեղեկանում ենք նախորդ հիշատակարանից, Ուզուն-Հասանի (1466—1478) մեծ արշավանքը դեպի Վրաստան տեղի է ունեցել 1475—1476 թվականներին։*

*** *Ձեռագրի ծագկողն է* «Ստեփաննոս *եպիսկոպոս* Ցառնջեցին»:

**** *Մինչև այստեղ բացակայում է Մ. Տեր-Ավետիսյանի ցուցակից։*

զտէր Յովանէս Կակաղեցին, ;/// և զտէր Յովանէս, և զտէր Տիրատուրն, և զայլ միաբանքս...։

Արդ, գրեցաւ սուրբ տառս թուականիս մերոյ ՋԻԵ. (1476), դառն և անբարի ժամանակիս մերում, զի յամենայն կողմանց նեղեն և չարչարեն ղաղգս քրիստոնէից աղդն տաճկաց. ի հարկապահանջութիւն, ի գերութիւն, ի սով, ի սուր և յայլ ազգի ազգի վիշտս և ի տառապանս նեղիմք վասն ծովացեալ մեղաց մերոց, զոր տէր աստուած փրկեսցէ զմեզ ի նոցանէ զամենայն հաւատացեալս իւր, ամէն...։

Ընդ նոսին աղաչեմ յիշել ի տէր զերջանիկ և զառաքինի, զհեզահոգի և զսրբասունունդ, զառաքելաշնորհ զարհիեպիսկոպոսն զտէր Թումայն, որ եռափափաղ և ջերմեռանդ սիրով վերստին նորոգել ետ զսուրբ գիրքըս*։ Դարձեալ աղաչեմ յիշել... զԱստուածատուր աբեղայն, զի յոյժ եղբայրական սիրով սիրէ զմեզ և պատուէ...։

Բ.

201բ Նկարեցաւ սուրբ Մաշտոցս ձեռամբ Ստեփաննոս եպիսկոպոսի Յառընջեցո. ի վանքս Յառընչուց ի դուռս սուրբ Աստուածածնիս. և որ զմեզ յիշէ՝ նա աստուած զինքն յիշէ, ամէն։

## 499

## ԱԻԵՏԱՐԱՆ

Լենինականի գիւղ Պարսկաստանի Չարմահալ գաւառում, Մ.Տ.Մ.

գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Այրիվանք

ա

...Վասն որոյ ցանկացող եղեալ այսմ աստուածային և լուսազարդ սուրբ Աւետարանիս ոմն ի գեղաքաղաքէն Երևանոյ՝ Առաք անուն, և ետ գրել զսա իմոյ անարժանութեանս ձեռամբ՝ եղկելի աբեղայի, և սկսա գծագրել մինչև ի Ղուկաս գլուխն և ոչ ժամանեցի ի յետին գիծն, այլ ժամանակ մահու իմո եհաս։

Արդ, ես՝ անարժանս և յոգնամեղ և փծուն և անարհեստ գրիչս Ստեփաննոս սկսա գծագրել ի վանս հրաշալի Այրիվանս, ընդ հովանեաւ սուրբ և հրաշափառ Կաթուղիկէիս, և ներկեալ արեամբն Քրիստոսի սուրբ Գեղարդեանս, և շնորհաբաշխ սուրբ աչոյս Յովհաննու Մկրտչի, և այլ բազում և անթիւ սուրբ նշանացս, որ աստ կան հաւաքեալ, ի հայրապետութեան տեառն Սարգսի ի յաթոռն էջմիածնի, և ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Յոհաննէս եպիսկոպոսի, և եղբաւր նորին տէր Ստեփաննոս նորընծա եպիսկոպոսի, և այլ միեղէն եղբարցս, ի փակակալութեան Խաչատրի, ի ղանութեան Հասան-բէկին՝ որդոյ Աւթմանին, ի դառն

* Ս. Տեր-Ավետիսյանը մեջ է բերել նաև ձեռագրի գրչության հիշատակարանը, որից պարզվում է, որ ընդօրինակվել է Ղազար գրչի կողմից, Դանիել քաջ րաբունապետի համար, Եկեղեաց գավառի Դալար սուրբ Յոհան վանքում։

*և ի վշտաշարժ ժամանակի, զոր նեղիմք յանաւրինաց և յանիրաւ պահանջողաց։*

*Արդ, երես անկեալ աղաչեմ զհանդիպողք սուրբ Աւետարանիս, որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ կարդալով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս* զԱռապն *և զհանգուցեալ որդին իւր* զԵնաքին, *որ կիսաւրեա ել յաշխարհէս։ Նաև* զՀապիպն, *և* զԵզդա[ն]բաշխ, *և* զՄուրատբաշխն, *և* զԽամոշն, *և* զԱստուածատուրն, *և զայլ արեան մերձաւորսն իւր, ասելով՝ ի խորոց սրտէ՝ տէր աստուած ողորմեա նոցա, թող զմեղս նոցա։*

*Արդ, ես՝* Առաւելս *և ամուսին իմ ստացաք զսուրբ Աւետարանս ե տուաք գրել յիշատակ մեզ և զաւակաց մերոց, և նուիրեցաք զսա ի գեղաքաղաքիս մերոյ* Երևանոյ՝ *ի դուռն սուրբ Կաթողիկէին սուրբ Աստուածածնին, անմոռաց յիշել և կարդալ զյիշատակարանս ի յատենի յամենայն ամի և արտասուօք յիշել յաղօթս ձեր* զԱռապն, *և զամուսինն իւր, և զորդին՝* զԵնատին *և* զԱնանիէն...։ *Գրեցաւ ի թվականիս Հայկազեան տումարի Ջ. և ԻԵ. (1476)։*

*ծաղկող՝* Ըստեփանոս Առընչեցի

Բ

*Ծաղկեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ* Ըստեփանոս *եպիսկոպոսի, ի վանքս* Առընչուց, *ի դառն և ի նեղ ժամանակիս, զի գնաց* Հասան-բէկն *և գերեաց* զՎրաստան, *թվ. ՋԻԶ. (1477)։*

## 500

## *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Երևան 6803*

*Նախավկայ ձ2/18 Մ.Տ.Ա.*

*գրիչ՝* Պաւղոս

*վայր՝* Կայոց-ձոր, Վերի-Նորավանք

ա

243բ *...Ի թվականիս Հայոց ՋԻԵ. (1476) և Նաւասարդի ամսոյն ԺԹ. (19) եղ[և ղրա]ւ սորա, ի ղանութեան* Հասան-պէկին *և ի հայրապետութեան տեառն տէր* Սարգսի, *որ այսմ ամսոյ եղև աքսորեալ ի յասդմանէ չարին, զոր յուսամք յաստուած, զի վերըստին դարձցի ի յաթոռն իւր։*

*Եւ գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ յոգնամեղ և խիստ ծանրացեալ, մեղաւք փծուն և անարհեստ և յետնեալս ի բանասիրաց, որ անուամբս միայն եմ և գործովս վա[տ]թար, ծոյլ և քնով թանթանչեալ, և ոչ աւր մի և ժամ մի ոչ կարացի կատարել զհրամանս տէրունական, որ* Պաւղոս *վերկոչիմ սոսՙ անուամբս և ոչ գործովս վարդապետ**։*

* *Հիշատակարանի շարունակությունը ընկել է. վերցնում ենք Մ. Տեր-Ավետիսյանի «Ձեռագիրք Նախավկայի վանաց...» ձեռագիր ցուցակից, որ կազմված է 1904 թվականին։*

Արդ, եղև գրչագրութիւն [սոր]այ ի գաւառիս Վա[յոց-ձ]որոյ, որ է Եղեգեաց, սուրբ և ի հռչակաւոր մենաստանիս. Վերի-[Ն]որավանս կոչեցեալ..., որ ճշմարիտ հար և [ն]ման է վերին Երուսաղէմի, ընդ հովանեաւ սուրբ Սիովնի, որ մայր ամենայն եկեղեցեաց, և լուսոյ մօր սուրբ Աստուածածնիս, և սուրբ Նշանացս բազմահոյլ և բազմաժողով, և սուրբ վարդապետաց նահատակաց Դաւիթ և Առաքեալ, և այլ բազում սրբոց նշխարացս, որ աստ կան հաւաքեալ։ Առ ոտս քաջ և արի րաբունապետիս Դաւիթ վերակոչելոյ՝ խիստ ճգնազգեստ և առ[աք]ինի Ճ. (100)-ամեա ճգնելով, և ուսուչին իմոյ և հոգևոր գիս անարժանս վերստին ծնաւղի Սարգիս արի և քաջ րաբունապետին, նայ և առաջնորդի սուրբ ուխտիս, որ բազում հոգաբարձութեամբ խնամող է վանիցս՝ Շատիկ միայնակեցի, որ եթող զսէր աշխարհիս և հետևի զհետ Քրիստոսի։

Աղաչեմ զհանդիպող սուրբ Աւետարանիս յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զիս զանարժանս, և զհամշիրաք եղբարքս իմ՝ խիստ ճգնազգեաց և ազգի ազդի առաքինութեամբ զարդարեալ՝ զտէր Դաւիթ և զտէր Անանիէ, որ խիստ հոգաբարձութեամբ խնամածու և ցաւակից են տառապելոցս, և զայլ միեղէն հարքս ու եղբարքս՝ զտէր Զեկիէլ և զաէր Սարգիս՝ ծերացեալ ալեաւք և իմաստութեամբ, որ հայրական գթով գթան ի վերայ եղբարցս և մեզ խրատիւք, և զայլ համուց* հաւասար և զհամշիրաք եղբայրքն իմ զտէր Կարապետ և զտէր Յովանէս դեռաբուսիկ և նորընծա, և այլ դասք սրբազան միայնակեցեաց և աղաւթից հետևողաց՝ Մուրատ, որ Մկրտիչ կոչւի, և Ամիր-Ազիզ, և Յովանէս, որ բազում աշխատութեամբ կու սպասաւորէ, և ընդ նոս[ին] զԳրիգոր ծերունին, և զԱմիր-պէկ /// զՍէրովբէ, որ կու ճմ /// ին թողեալ են զսէր աշխարհիս՝ առեալ զխաչն Քրիստոսի և հետևեալ զկնի Քրիստոսի ///...։ Ընդ նոսին յիշեցէք և զտէր... վարպետն իմ՝ զհանգուցեալն ի Քրիստոս և աստուած-ողորմի ասացէք լիաբերան։ Նայ և զծնաւղսն իմ զմարմնաւոր՝ զհայրն իմ Դամուրտաշ, և զմայրն իմ ///, և զհարազատ եղբա///, և զԲարսեղ ձեռնասնունդ սարկաւակք, որ բազում աշխատութեամբ ուսու/// զնոսայ, և զայլ ամենայն արեան մերձաւորքն իմ, որ տրաւք և որ հոգաբարձութեամբ և այլ զինչ կերպ /// որ երախտիք ունին ի վերայ իմ՝ հիքացելոյս։ Դարձեալ աղաչեմ և արտասուալի դիմաւք զգարշապար ոտից ձերոց համ[բ]ուրեմ, զի խոշորանաց և սխալանաց գրոյս անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր, այլ ոչ օեւլի։ Դարձեալ, կրկին կր[կնա]պատիկ աղաչեմ զը[նթեր]ձող և զգաղաքարաւղ սուրբ Աւետարանիս, զի ի տեսանելն զան[հ]արմարութիւն գրոյս մի նայիք, այլ ըստ ձերում անոխակալութեանդ յիշեցէք ի սուրբ և արտասուալի աղաւթս ձեր զվերոյգրեալքդ...։

Բ

Ո՜վ պատուական եղբայր, անմեղադիր լեր, լուք չումի ու կար մեր այս էր երկաթագրիս**։

* Թերևս ձեռագրում եղել է «հանուոց»։

** Գրված է Մարկոսի Ավետարանի առաջին էջի վրա, որի երկրորդ տողը երկաթագիր տառերով է։

## 501

### ԺԱՇՈՑ

**Երևան 2761**

նորոգող՝ Ջաֆարայ

վայր՝ Վայոց-ձոր, Բոլորաձորոյ վանք

279ա ...Արդ, եղև կրկին նորոգումն սորա ի թվականիս Հայոց Մեծաց ՋԻԵ. (1476), ի ղանութեան Պայանդուր Հասան-բէկին, որդոյ Ալթման-բէկին, ի կաթողիկոսութեան տեառն Սարգսի և յաճրիեպիսկոպոսութեան մերոյ նահանգիս տէր Յոհանիսի, ի յիշխանութեան պարոն Ջումին, և որդոց նորին՝ Ղալայբէկին, Ոլուսբէկին, Թումանբէկին, պարոն Հայկազին, և եղբարց նորին՝ պարոն Ամիր-Վասակին, Հաղբակին, Ամիր-Հասանին:

Աւարտեցաւ ձեռամբ Ջաֆարիայ կուսակրան աբեղայի և եղբաւր սորին՝ շնորհալի Աբրահամ աբեղայի, ղպկասն գրել և ի վասլայելն և ի ծաղկելն և ի կազմելն, ի սուրբ մենաստանս, որ անուամբ յորչորչի Բոլորաձորոյ անապատ, առ դրան սուրբ Աստուածածնիս և շնորհաբաշխ սուրբ Կարապետիս և սրբոց ճգնաւորաց հանգստարանիս, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս նուաստ ի բանասիրաց Աւագտէր անուն կոչեցեալ և այլ միեղէն եղբայրութեանցս, որ աստ են ժողովեալ։ Ի խընդ-
279բ րոյ մաքրամիտ և սրբասէր Մովսէս քահանայի, և || կնոջն իւր*, և որդոցըն*, և դստերացն*, լսելով զայն թէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընտանեակ յԵրուսաղէմ։ Արդ, որք հանդիպիք սմայ տեսանելով կամ օրինակել, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՄովսէս քահանայն ամենայն ընտանեաւք հանդերձ, և զիս՝ զանարժանս Ջաֆարա հաբեղայ, որ միայն զանունս ունիմ, և ոչ զգործս, զի յոյժ հնացեալ էր և փտեալ։ Բազում աշխատանաւք և չարչարանաւք նորոգեցի սուրբ գիրս, որ կոչի Ժաշոց։ Կրկին անգամ աղաչեմ զհանդիպողք սմա, զի յիշեսջիք ի սըրբայհաճոյ յաղաւթս ձեր զհայրն իմ Տէրտէր և զմայրն իմ Գոնցա՝ հանգուցեալ ի Քրիստոս, և դուք յիշեալ լի[ջիք] ի միոսանգամ գալուստն Քրիստոսի, ամէն։

## 502

### ՇԱՐԱԿՆՈՑ

**«Սիսական», էջ 91**

վայր՝ Վայոց-ձոր

Գծագրեալ եղև Շարունակս ի զանութեան Հասան-բէկին՝ թոռինըն Գայըընդրոյ, զոր տիրեաց թախթիս Հուլաւոյ, ի թվաբերութեանս Հայկազնեա ՋԻԵ. (1476), ի յաթոռակալութեանըն Վաղարշապատու Յովհանիսի, ի յերկիրս Վարդիծորոյ, զոր այժմ Վայիձոր և Եղեգիս յորչորչի։

---

* Անունների լրացման համար տեղ է բաց թողնված։

## 503

## ԹՈՒՂԹ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 2312

գրիչ՝ Զաքար
վայր՝ Անկուճեաց վանք

160ա ...Արդ, գոհութիւն և փառս մատուցանեմք համագոյ սուրբ երրորդութեանն հաւր և որդոյ և հոգոյն սրբո, որ ետ կարողութիւն մեռեալ ոգոյս և տկար անձինս հասանել յաւարտ գրոյս, որ կոչի Ընդհանրական ի սրբոյն շնորհաց Ներսէսէ և յայլ վարդապետաց՝ խրատք ոգէշահք և պատուականք ամենայն եպիսկոպոսաց և քահանայից, կրաւնաւորաց և ժողովրդոց։ Արդ, գրեցաւ սա ձեռամբ ումեմն անարժանի՝ սուտանուն աբեղի փծուն գրչի Զաքարի, ի խնդրոյ ճգնաւոր և մաքուր սրբասիրի և առաքինի սուրբ և ընտրեալ քահանայիս*

Գրեցաւ սա ի սուրբ և ի հռչակաւոր ուխտս առ դրան սուրբ Լուսաւորչին և սուրբ վարդիհօրն գերեզմանին, ի վանքս որ կոչի Անկուճեաց և այլ սրբոցս, որ հաւաքեալ կան ի սայ։

Գրեցաւ ի թվականիս Հայոց ՋԻԵ. (1476), դեկտեմբեր ամսոյ Ի. (20), և յառաջնորդութեան Աստուածատուր հայրապետիս, և յեպիսկոպոսութեան տէր Գրիգորիս, և ի ղանութեանն Հասան-պէկին, և ի պարոն||ութեան
160բ Հուսէն-պէկին, ՋԻԵ. (1476) գնաց ի վերայ Թագաւորին։

Ո՛վ սուրբ քահանայք և մանկունք սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք կարդալով կամ աւրինակելով և աւգտիք ի սմանէ յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զԳրիգոր եպիսկոպոսն և զԱստուածատուր հայրապետն, որ [հոր]դորեցին զմեզ ի գրելն և հետ մեզ աշխատեցան...։

Ո՛վ հոգևոր հայրք իմ և եղբայրք՝ անմեղադիր լերուք սղալանաց և խոշորութեան գրիս, զի կայր մեր այս է։

Յիշեցէք և զծնաւղն՝ զՄելքիսէդն, և զմայրն իմ զՄելիքն, և զեղբայրն իմ զՎասիլն, և զքուրն իմ զԱսլի-Մելիքն և զՏովլաթ-Խաթունն և զՄարեմն, յիշեցէք և աստուած ողորմի ասացէք, ամէն, և զՄարկոսն, որ զթուղթ կոկեց և ի հետ մեզ աշխատեցաւ, ամէն։

Ձեռս երթայ՝ դառնայ ի հող, գիրս մնայ յիշատակող, ամէն։ Եւ զՀերիք մամն, որ խիստ աշխատեցաւ ի հրետ մեզ՝ ի հացին թխելն, ի տան աւիլելն, և զտէր Մինաս, որ զջուրն իբեր զտանն, յիշեցէք և աստուած-ողորմի ասցէք իւրն և ծնաւղացն, ամէն, ամէն։

## 504

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6497

գրիչ՝ Յովանէս
վայր՝ Արծկէ

286ա ...Որոյ ցանկացող եղեալ այսմ աստուածային պայծառ և պատուական գանձիս պատուական և աստուածասէր տանուտէրն Ստեփանոս, յի-

* Երեք և կես տող դատարկ է թողնված ստացողի և նրա մերձավորների անվանց լրացման համար։

շատակ բարի հոգւոյ իւրոյ, և ծնօղաց իւրոց՝ պարոն Ասիդարին և Իգդիշխաթունին...։

Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Յովանէս անարժան քահանայի, ի գաւառս Բզնունեաց, ի քաղաքս Արծկէ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Տիրամօր աստուածածնի տաճարիս և սուրբ Ստեփանոսի նախավկայիս, ի հայրապետութեան տեառ[ն] Յոհանիսի ընդհանիւր Հայոց կաթողիկոսի, և ի թագաւորութեան Ամիր-Հասան Բահադուռի, ի թըւականիս մերում Ջ. և ԻԵ. (1476) ամի։

Եւ արդ, յերես անկեալ աղաչեմ ... յիշեսջիք .... վերոյասացեալ ստացող դրոցս զպարոն Ստեփանոս, և զկենակիցն իւր զԳուլփաշայ, և զծաղկեալ որդիքն իւր զտէր Վրթանէս, և զԱրիստակէս, և զՈւրախ, և զՎարդան, զՇահբար, և զքոյրն իւրեանց զԽաթուն։ Այլ և զեղբայր Ստեփանոսին՝ զուսթայ Մարտիրոս, և զկենակիցն իւր զՀռիփսիմէ, և զորդին իւր զՏէրտէր, և զմիւս եղբայրն զՇահւէլին, և զորդին իւր զԲարսեղն, և զմեւս եղբայրն էլէմսանոս, և զկենակիցն իւր զՄուղամ, և զորդին իւր զՎելիջան...։

Եւ զանպիտան գծօղս յիշման արժանի արարէք և զծնօղսն ///

505

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

ԼՕՎ 324 (անտիպ), Արարուքի եկեղեցի

գրիչ՝ Աբեղայ
վայր՝ Աղրամար

Փառք... զի ետուն գծագրել զսա յիշատակ անջինջ կինս այս Մինայխաթուն հոգւոյ իւրոյ և այրոյն նորին Կիրակոսին, որ երիտասարդական մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս, և զաւակաց նոցին Մկրտչին և Խոջադեղին, Աւետիսին և Սարգսին, և դստերացն Դովլաթին, Սուլտանին, Սառին, Մարթին, Հռիփսիմին, և ծնողաց նորին Սարգսին և Ջարդրին, և եղբօրն Նիկողոսին, և Պայկէն, Աւետիսին, և քըւերն Մինին, և հաւեղբաւրն Ստեփաննոսին, և որդոյն Կիրակոսին, և Հերապետին, և քըւերն Հռիփսիմին...։ Ես սոսկանուն Աբեղայ կատարեցի... ի կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ ամենայաղթ զմբէթայարկ սուրբ Խաչիս և սուրբ Սարգիս զաւրավարիս և այլ ամենայն սրբոց, որ աստ կան հաւաքեալ, ի հայրապետութեան տեառն Ստեփանոսի, և ի թուականութեան Հայոց ի Ջ. և ի ԻԵ. (1476), ի դառն և ի վշտալից ժամանակի, յորում կամք ընդ հարկի և ընդ ծառայութեան ազգին նետողաց...։

Այլ յիշեցէք ի Քրիստոս զմաւրքոյրն իմ զՄինայ-Խաթուն, և զորդիքն իւր զտէր Ստեփանոս սրբազան կաթուղիկոսն, և տէր Ներսէս եպիսկոպոսն, և լի բերանով և ուղիղ մտաւք աստուած-ողորմի ասացէք նոցա, ի հայրապետութեան տէր Բարսեղ կաթուղիկոսին սուրբ աթոռոյն Էջմիածնայ, և մերոյ առաջնորդիս տէր Աստուածատուր եպիսկոպոսին Մատնէվանից սուրբ Աստուածածնին։ Արդ, ողորմութեամբ աստուծոյ սկսայ և շնորհաւք սուրբ հոգոյն աւարտեցի ըստ իմում տկարութեան...։

Աստուած-ողորմի ասացէք ասացողի սուրբ գրոցս տէր Սարգիս և տէր Ներսէս հեզահոգի և սրբասնունդ կրօնաւորացն և ծնողաց սոյա...։

Եւ արդ, ես Աբեղայս և քեռին իմ տէր Սարգիս հեզահոգի և բարեմիտ կրօնաւորն, որ գնացեալ եմ՞աս ի մեծն Հռոմ, ի սուրբ գերեզմանս գլխաւորացն Պետրոսի և Պօղոսի, և կացեալ անդ տարով և այլ աւելի, և ելեալ գնաց ի Սպանեայ և ի Լուրիկէ*, որ է եզր աշխարհիս՝ ի սուրբ Յակոբայ գերեզմանն, որ ասեն թէ ով որ ի յայն գերեզմանն երթայ՝ ի դատաստան ոչ մտանէ, այլ պարզերես մնայ յաւուրն դատաստանին։ Եւ անտի դարձաւ... և եհաս ի Վարագ... և գեղեցիկ անօթիւ շուրջառօք և պատուական սկօք և խաչերօք, և եկեալ աստ։

Եւ ստացանք զսուրբ դիրքս և եդինք ի դուռն սուրբ Նշանիս Վարագայ յիշատակ բարի մեր, և ծնողաց մերոց, և ամենայն ազգականացն, ձեռամբ Մարգարայ արհիեպիսկոպոսի և առաջնորդի սուրբ ուխտիս, և սրբասնեալ և հեզահոգի վարդապետացն Ստեփաննոսի և Կարապետի, և առաքելաշնորհ արհիեպիսկոպոսացն Ստեփաննոսին և Յովհաննէսին, և այլ միաբան եղբարցս ամենի։

Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել ի դրանէ սուրբ Նշանիս Վարագայ։

## 506

### ՃԱՌԸՆՏԻՐ

Նոր Ջուղա 344, Մ.Տ.Մ. և Մ.Տ.Ա.

գրիչ՝ Ազարիա
վայր՝ Վան

96ա— ...Դարձեալ յերես անգեալ աղաչեմ զձեզ, հարք և եղբարք, յիշեցէք ի
96բ սուրբ յաղաւթս ձեր զհեզահոգի և զբարեմիտ քահանայն զԿարապետ, որ ստացաւ զսուրբ Տաւնականս յիշատակ բարի հոգոյ իւրոյ և ծնողաց իւրոց։ Զոր և ամենակարողն աստուած անսասանելի կենաւք պահեսցէ զտէր Կարապետն, որ ի յայս դառն և վշտալից ժամանակիս բազում արդիւնս արար, որ ի բազում ժամանակաց խոնարհեալ էր քումբէթ տաճարին սուրբ Պաւղոս առաքելոյն և ժամատեղն խափաներ էր, և կարողութեամբն աստուծոյ և օգնականութեամբ սուրբ առաքելոցն վերստին նորոգեաց զսուրբ քումբէթն և զժամատունն և զդուռն սուրբ եկեղեցւոյն, և զարդարեաց գեղեցիկ շուրջառաւք և ժամատեղաւք...։

Դարձեալ, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զԿարապետ քահանայն, և զծնաւղսն իւր զՄկրտիչ քահանայն և զՆաէֆ-Խաթունն, և զեղբայրն իւր զխօջայ Յովանէսն, և զնորին կենակիցն զՇուքրանն, և զդստերքն իւրեանց զԲէկիջանն և զԽաթունջանն, զքոյրն զՍուլտան-Մէլիքն, և զիւր որդին զԿարապետ քահանայն, և զդուստրն զԴովլաթն, և զհաւրքուր՝ զԽաթուն-Մէլիքն, և զնորին զաւակսն զԱտոմն, զԹախշայիշն և զԲէկիշէն, զԿարապետն, զԳրիգորն, զՖառուխն, զՓաւլայն, և զՄուրատն, և զՅո-

* Կարելի է կարդալ նաև Լուաիկէ։ Հավանաբար խոսքը իսպանական հին քաղաքներից Լիրիայի (Liria) մասին է, որը գտնվում է Վալենսիայից 22 կմ հյուսիս արևմուտք։

վանէսն, և զքեռին իւր զՄկրտիչ քահանայն, և զնորին ծնաւղքն զՍտեփաննոս քահանայն և զԱղուր-Խարունն, զմաւրաքորքն զՄէլիք-Խարունն և զՇահստանն, և զհաւրեղբաւր որդիքն զՔշմշենց Պաւղոսն, զՊետրոսն, զՅովանէսն, և զՅոհանէս, զչնգար (՞) Խաչատուրն, և զորդիքն իւր զՄեսրոպ քահանայն և զԱմի[ր]-Սարգիսն, զԽսրունշէն, և զիւր որդիքն, և զամենայն արեան մերձաւորք նոցին, և լի բերանով աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Արդ, յերես անդեալ աղաչեմ զձեզ յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զԿարապետ քահանայն, և զկենակիցն իւր զԲէկի-Խաթունն, և զնորին ծնաւղքն զՍտեփաննոսն և զՄրուաքն, և զեղբարքն զԿարապետն և զՅովանէսն, և զքոյրն զՍոպաանբախտն, և զհօրքուրն, և զնորին դստերքն զԴովլաթ-Փաշէն և զԱնլի-Փաշէն, և զքեռին իւր զԴատնամազենց Սաեփաննոսն, և զմաւրքոյրքն զՄուրմէլիքն և զԱրմէլիքն, և զորդին իւր զԳրիգոր քահանայն, և զնորին կենակիցն զԴաւզալ-Խաթունն, և զնորին ծնաւղքն զԵլիասն և զԲէկի-Խաթունն, և զեղբայրն իւր զԿաքաւն, և զտէր Կարապետի հոգևոր քոյրն զԽաթունջանն, և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք...։ Դարձեալ յիշեցէք զԳրիգոր քահանայն, և զորդիքն զՄկրտիչ սարկաւագն և զՅովաննէս, և զդուստրն զԽանզադէն, և աստուած-ողորմի ասացէք, ամէն։

Դարձեալ, յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զխոջայ Քրմանն, և զծնաւղսն իւր զխոջայ Յուսէփն և Մարգրիտն, և զեղբայրքն իւր՝ զխոջա Փալատն և զԽոջիւաքարն, և զխոջայ Քրմանի կողակիցն զԴօզալն, և զորդին զԳրիգորն, և զԽաչատուրն, զխոջա Փօլատն և զկողակիցն զԴունարհատն, և զորդին զՄիրաքն, զԽոջխաքարն, և զնորին կողակիցն ըզԲէկիջանն, և զորդիքն իւր զՇահըսւարն և զԲախտիառն, զխոջայ Յուսէփն, և զՔրմանն, և զԽանհաթունն, և զկենակիցն զՂարիպ-Խաթունն, և զդստերքն զՄուղալն և զՋհանն, և զամենայն արեան մերձաւորքն իւրեանց, որ ետուն զարծաթի սկին և զբուրվառն ի դուռն սուրբ Առաքելոյս Պետրոսի և Պօղոսի, յիշատակ իւրեանց և ամենայն մերձաւորաց։ Մանաւանդ յիշեցէք և լի բերանով աստուած-ողորմի ասացէք խոջա Քրմանին և ծնօղաց նորին, ամէն։ Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ առաքելոցս կամ ծախելով կամ գրաւելով, ոչ ի մերոց, և ոչ յաւտարաց, և եթէ ոք յանդգնի՝ պատժի ի սուրբ առաքելոցս, ամէն...։

Դարձեալ, յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղօթս ձեր զխուա Մըլխամն, և զծնաւղքն իւր զխուա Աւետիսն և զՄամա-Խաթունն, և զկենակիցն իւր զՇուքրանն, և զորդիքն իւր զխուա Կարապետն և զԽըղաքն, և զամենայն արեան մերձաւորսն իւրեանց՝ զկենդանիքն և զհանգուցեալսն, և դուք յիշեցէք և լի բերանով աստուած-ողորմի ասացէք ուսթայ Մլխամին, և եղբարցն Ատոմին և Աբդուլին՝ հանգուցելոցն ի Քրիստոս, որ զսուրբ Պօղոսի և զՊետրոսի ժամատունքս ծածկեց և շատ աշխատեցաւ ի վերայ սոցա։

...Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զԹամղաչի Էյզարն, զՇաղաւաքն, և զՄուսեխն, և զՍմբատն, որ զձկան Թամղէն և զընկուզի բաղեցին...։

Դարձեալ, յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զբարեմիտ և պհաւատարիմ տանուտէրն զոսկերիչ Եզդանբախշն, և զծնաւղքն իւր զՅովանէս ե զԱզիզն, և զկենակիցն իւր զՇանումն, և զորդիքն իւրեանց զՄուրատբաղշն, և զԽուդաբաղշն, և զՅովանէսն, Ղարապէկին, և զՓաշաջանն... որ զարծաթի ս[կ]իներ ետ ի դուռն սուրբ առաքելոյն Պետրոսի և Պօղոսի, յիշատակ բարի հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց, և եղբօրն Կարապետին...։ Դարձեալ, կրկին անգամ աղաչեմ զձեզ յիշեցէք... զբարեպաշտ տանուտէրն զխոջայ Եզդանբախշն, և զհայրն իւր Յովանէսն, և զմայրն իւր զԱզիզ-խաթունն, և զեղբայրն իւր զԿարապետն, և զքոյրն իւր զԳաւր-խաթունն, և զկողակիցն զՇաեում-խաթունն, և ղաւակսն իւրեանց զԱմատն և Աղաբէկն, որ տարաժամ մահուամբ փոխեցան առ Քրիստոս, և մանաւանդ որդոյն իւրոյ Մուրատբաղշին և կողակցին... Սօլթանին, որ վերստին շինեց և ծաղկեց զսկին...։

Դարձեալ, յիշեցէք զբարեպաշտ հաւատարիմ տանուտէրքն Վանայ քաղաքիս՝ զխոջա Յովանէսն, ղմելիք Բախտիարն, զխոջա Պարսամն, ղռէս Փէրիջանն, ղռէս Սարխօշն, զխոջայ Ազնաւուրն, զխոջա Գրիգորն, զխոջա պարոն Գորգն, զխոջա Յովանէսն, զմիւս խոջա Յովանէսն, զխոջա Կարապետն, զԱնձրևոնց Մուրատն, զխոջայ Էզդանբախշն, մեծ և զփոքր քաղաքի տանուտէրքս, որ ամէն եկեղեցեաց ոսխերու չարէքն բաղլեցին...*։

Յիշեցէք Ջմրաթ-խաթունն, և զծնաւղքն իւր զՄենաւազ և զԽալիմխաթունն, այլ և զտէր Կարապետ, և ղորդին Գրիգոր քահանայն, և զնորին կողակիցն զԳօզալ-խաթունն, և զորդիքն զՄկրտիչ քահանայն և զՅովանէսն, որ ետ զիւր այգին ծառով ոսխ Վարագայ սուրբ Նշանին, ի յառաջնորդութիւն Գրիգոր րաբունապետի և վկայութեամբ մաղդասի տէր Յովանիսին և տէր Արիստակէս հերպետին, այլ և կամօք և վկայութեամբ քահանայից սուրբ առաքելոցս տէր Յովանիսին, տէր Գրիգորին, տէր Մեսրոպին, տէր Զաքարին, տէր Ստեփաննոսին, և միւս տէր Յովանէսին, այլ և ի յերեսփոխանութեան Վարագայ պարոն Յովանէսին...։

---

* «Ոսխերու չարեք»-ի բաղլելու (իմա՝ չեղյալ դարձնելու) մասին նույն ձե-ագրի մեջ կա ըստ երևույթին մի այլ հիշատակարան ևս, որը Մ. Տեր-Մովսիսյանի կողմից վերծանվել է այսպես. «Դարձեալ, յիշեցեք/// զխօջ///: և զպարոն Գորգն և զծնօղս // և զՓոլատն և զամ/// որ եառւն զվարագուրն յիշատակ: Դարձեալ, յիշեցէք... տանուտէր զմ ելի՛ք Դովլաթեարն և զմելիք Ստեփաննոսն, զԹումէն և զՄոսրով[?]. որ զեկեղեցես ոսխեռու չարեքն բաղլեց/// զՏանձկուլենց Աստ[?] և զծնողսն իւր զԴովլաթն և զկենակիցն իւր զՋանփաշ[էն], զորդիքն զՋալիկն և զԹալիկն, որ զսուրբ Պօղոսու իրիցանու տաւարն Թարխան արար, և որ յետ սորա յանզգնի ու առնու՝ նա պատժի ի սուրբ առաքելոցն», ամէն»։

Նոր Ջուղայի № 544 ձեռագրի այս արժեքավոր հիշատակարանները արժանի են նոր հրատարակության, ձեռագրի մանրակրկիտ քննության հետ մեկտեղ։

Հիշենք նաև, որ անհաջող ընդօրինակված այս հիշատակարանում հիշվող մելիք Դովլաթիարի և մյուսների մասին հիշատակություն կա նաև Երևանի № 4674 ձեռագրի (Սարգիս Շնորհալի) 512ա էջում. «Քրիստոս աստուած, քո սուրբ յարութեամբդ ողորմեա ամենայն հաւատացելոց, ևս առաւել Դովլաթիարին և Խոսրովին, Մկրտչին և Թումին, և ծնողաց նոցին և ամենայն ազգականացն, որ ղոխվերոյ չարէքն բաշխեցին։ Արարիչն աստուած զիւրեանց մեղքն թողու, ամէն։ Ընդ նոսին զՍունկանց Կարապետին, որ միջնորդ եղև այսմ բարի գործոյս, ամէն»։

...Դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զՇնչնենց խոջայ Յովանէսն, և զեղբայրն իւր Կարապետն, և զծնօղս իւրեանց զՍտեփանոսն և զԴօւնիէն, և զկենակիցն իւր զԲաղդատ-Խաթունն, և զորդիքն իւրեա՛ց զԱւետիսն և զՋաֆարէն, և զդստերքն իւր զԴօզալ-Խաթունն, զԲէկիշիխանն... որ զամառան ժամատունն և զխցներն շինեց և շատ աշխատեցաւ ի վերայ սորա...։

Դարձեալ յիշեցէք... զհեզահոգի և զբարեմիտ քահանայն զտէր Կարապետն, որ ետ գրել զսուրբ Տաւնականս յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց, և ետ զսուրբ գիրքս ի դուռն սուրբ առաքելոցս Պետրոսի և Պօղոսի, և ետ ի ձեռն սրբասէր քահանայիցն... և սարկաւագացս..., որ սոքա՝ քահանայք և սարկաւագունք և բարեմիտ հաւատարիմ մանկունք սուրբ եկեղեցոյս, որ բաղում չարչարանաւք աշխատեցան ի նորոգումն սուրբ կըմբէթին։ Որոց տէր աստուած ընդ սուրբ քահանայից պսակակից և դասակից արասցէ...։ Նորոգեցաւ սուրբ Պաւղոս առաքելոյ տաճարի կըմբէթս ի թուականութեանս մերում ՋԻԵ. (1476)։ Դարձեալ, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զխաւչայ Ազատն, որ այսաւր առ մեզ հանդիպեցաւ...։

Եւ արդ... քահանայք և ժողովուրդք, սիրով և աներկմիտ հաւատով և լիակատար սրտիւ աստուած-ողորմի ասացէք Ազարիայ գծողիս և իմ ծնօղացն Կարապետ քահանային և ուսուցչին իմոյ, որ նահատակեցաւ յԱրճէշ քաղաքի ի ձեռաց անաւրինաց, և մաւր իմոյ Սաղդութին, և եղբարցն իմ փոխեցելոցն ի Քրիստոս Ստեփանոսին և Ծերունին, և այլ ամենայն արեան մերձաւորացն իմոց՝ կենդանեաց և հանգուցելոցն ի Քրիստոս, մանաւանդ միւ վարպետին իմոյ տէր Յովանիսին Արճըշեցոյն, որ Մանգտսարէնց կոչի...։ Յուսամք ի յամենակալ և յամենախնամ և յողորմած աստուածն մեր, որ ողորմութիւն շնորհեսցէ մեր վարպետացն և այնոցիկ, որ ի վերայ ինձ փոքր ի շատէ երախտիք ունին...։

Եւ զիս՝ զանարժան գրչիս զԿարապետ սուտանուն քահանայ, որ ըստ իմում տկար անձամբս յանձն առի և ագնականութեամբն աստուծոյ գրեցի Ի. (20) տետր ի սուրբ գրոցս և իմում տկար մատամբս կազմեցի զսուրբ գիրքս յիշատակ տէր Կարապետին...։

Դարձեալ, յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր մեղաւոր ժամարար Մկրտիչս, ամէն։

Դարձեալ յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զՀաւրմզենց Ղարիպշէն, և զկինն իւր զԱզիզն, և զորդին զՀօրմզն, որ զգրոց կաշին երետ...*։

507

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5333

գրիչ՝ Թումայ
վայր՝ Աղթամար

332ա ...Եւ արդ, ես յետինս ի գրչաց և անարժանս ի կարգաւորաց սուտանուն քահանայ Թումայ... կատարեցի զսա մեղսամած մատամբս

* Տե՛ս նաև 1481-ի թվականում։

իմով յաստուածաբնակ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ ամենայաղթ
սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս, ի հայրապետութիւն տեառն Ստեփաննոսի
կաթուղիկոսիս Հայոց, ի թըւականիս Հայոց ՋԻԵ. (1476)...։
332բ ...Արդ, որք հաշակէք յաստուածային բիւրաստանէս և յամենալի սե-
ղանոյս, որք պատահիք սմա տեսութեամբ և կամ ընթերցմամբ յիշեսջիք
յերկնադնաց յաղօթս ձեր... զաստուածասէր տանուտէրն զՄիրենց Սա-
ղաղէն, և ղծնօղսն իւր զՊարոն և զՇուխըրան-Խաթուն, և զպապիկն
ռՄերն, և զկենակից սորին զԽունար-Մելէքն, և զհօրքորն զԽաթուն-
Մելէք, և կենակիցք սորին զԹումաբէկն և զԱրմանշէն, և զաւակս սոցա
զԽախարուն, և զՄիֆայէլ, և զԻսրայէլ, և զՄուխթարամշայ, և զՍադաղի
333ա կենակիցն՝ զԽա||խարուն, և զաւակս նոցա զպարոն Գորգն, և զՍոլթան, և
զԹիլի-Փաշայ, և զքեռին Ջանիբէկն, և զազգն ամենայն...։ Ընդ նոսին
և ղանպիտան Թումայ գծող սորա, և զծնօղսն մեր զԳրիգոր քահանայ,
որ ուսոյց մեզ զարուեստս դըչութեան, և զՔրման-Խաթուն, և զորդին իմ
զԽաչատուր պատանին, որ փոխեցաւ առ Քրիստոս և եթող ինձ սուգ ան-
մխիթար մինչև ի մահ, վէրք անողջանալի և խոց անբժշկելի, և զկենա-
կիցն իմ, և զքըւերքն իմ. և զամենայն ազգականքն մեր և զերախտա-
ւորքն...։
333բ Այլ և յիշեցէք ի Քրիստոս զտէր Յովսէփն Շիրի||նենցն, որ յորդորիչ
և միջնորդ եղև սուրբ Աւետարանիս...։

508

ՃԱՌԸՆՏԻՐ

Փիրգ. 6273, էջ 324–325, Վան՝ յԱրարք

գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Աղթամար

...Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց... բազմամեղ և անարժան, սուկանում Հայրապետ աբեղայ... տեսի զսէր Մինայ-Խաթուն բարեպաշտ տիկնոջն առ հոգևորս և իմով իսկ տկարութեամբ... կատարեցի զսա մեղսամած մատամբ իմով... յաստուածաբնակ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ ամենայաղթ զմբէթայարկ սուրբ Խաչիս, և սուրբ Սարգիս զօրավարիս, և այլ ամենայն սրբոց, որ աստ կան հաւաքեալ, ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսի, և ի թուականութեանս հայոց ՋԻԵ. (1476), ի դառն և ի վշտալից ժամանակիս, յորում կամք ընդ հարկի և ընդ ծառայութեան ազգին նետողաց...։

Այլ և յիշեցէք ի Քրիստոս զմօրքոյրն իմ՝ զՄինա-Խաթուն, և զորդիքըն իւր զտէր Ստեփաննոս սրբազան կաթողիկոսն և զտէր Ներսէս եպիսկոպոսն...։

## 509

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 5414**

գրիչ՝ Իսրայէլ
վայր՝ Մոկք, Փասավանք գիւղ

356ա ...Քրիստոս աստուած... ողորմեայ ըստացողի սուրբ Աւետարանիս Վարդանին, և կողակցին Թավրէզին, և իւրեանց ծնաւղացն Յովսէփին և Ռւլունին, Սարգսին և Տիրանցին, Յովհանէսին և Նազմէլէքին, Ջաֆարին և Հազարբէկին, Մարին, և Մկրտչին, Ստեփանոսին...

356բ Արդ, գրեցա[ւ սուրբ || Աւետարանս] ի յերկիրս [Մոկաց]*, ի գեղս որ Փաս[ավանք կո]չի, ի դուռն [սուրբ Աստուած]ածնիս, և սուրբ Գրիգո[րիս, և] սուրբ Կարապետիս, [և ա]յլ սրբոց, որ աստ կան [հան]գուցեալ ի փառս աստուծոյ։ [Ձեռ]ամբ Իսրայէլ մեղապար[տ դպ]ի ի թուաբերութիւնս [Հայո]ց ՋԻԵ. (1476) ամին, ի [դառ]նացեալ ժամանակ[իս]։

Արդ, ես՝ Իսրայէլ մեղաւոր քահանայ յերես անգեալ ա[ղա]չեմ ղկարդացաւղքդ և [գլ]սողքդ և լի բերան[ով ասա՛ց]էք զաստուած ողորմին [ե՛ղկ]ելի գրչիս, և ծն[աւղաց իմ]ոց Ամիրշախին, և /// այլ ամենայն երախ[տաւորաց ի]մոց, և կողակ[ցին իմոյ /// ուճի, և զաւակաց՝ փոխեցելոցն ի Քրիստոս և կենդանեացս՝ Մարգարտին, և Ալամշին, և Հոնդֆարին, և դեռաբոյս որդոյ իմոյ ///, և եղբարցն Սահակայ և Յունանի, և կանանցն Հաբունշին և Փաշին, և զաւակացն Մլհամշին և Թուխանին ///**, և վարպետաց իմոց Մարգարայ Կոռեցոյն և Վարդանն մահդասոյն և որ մականուն Մաքի ասի, և աւրինակի տըւողքս Գրիգորի և իւր ծնաւղացն, և դուք ասացէք զաստուած-ողորմին և աստուածն յիշողացդ ողորմեսցի հազարապատիկ, ամէն***։

## 510

## ՄԱՇՏՈՑ

**Ալիշան «Այրարատ», էջ 172**

վայր՝ Յովհաննավանք

Սակաւ ամօք զկնի (1464) յիշատակի մահդասի Սամուէլ ումն գրասէր որ ընծայեաց վանիցն բնամաշտոց մի, հաւաքեալ խնամօք Ներսիսի ուրումն վարդապետի, և վայելողքն կոչին, տէր Կարապետ, տէր Ստեփանոս, տէր Մկրտիչ, տէր Յովհաննէս, տէր Գաբրիէլ, տէր Մելքիսեդեկ և տէր Գալուստ, Կարապետ և Խաչատուր և Սարգիս: Յիշատակի յայսմ

* Ձեռագրի վերջին թերթերի աջ եզրերը պատռված են, ուստի մի շարք բառեր չեն կարդացվում։ Հնարավորության դեպքում ուղղագիծ փակագծերով լրացնում ենք պատռված մասերը՝ տալով ըստ իմաստի հավանական ընթերցվածքներ։

** Զավակների ու մերձավոր ազգականների հիշատակությամբ այս հատվածը թանաքով ջնջված է, դժվարությամբ մեզ հաջողվեց վերծանել ջնջված անունների մեծ մասը։

*** 257ա էջում, այլ ձեռագրով, կրկին անգամ հիշատակվում է ձեռագրի ստացող Վարդան տանուտերը, իր մեծաքանակ ազգականների հետ միասին։ Այդ հիշատակարանը նորություն չի պարունակում։

մատենի համառօտիւ նորոգութիւն եկեղեցւոյն։ Սուրբ Կարապետն, որ նոր շինեցաւ թվ. ՋԻԵ. (1476)։ Այլուր ամաւ կանխէ. Սուրբ Կարապետին վերջին շինումն թվ. ՋԻԴ. (1475)։

511

ԱԻԵՏԱՐԱՆ

«Արարատ», 1903, էջ 732
Կիւմուշխանէի ս. Փրկչի վանք, № 3

հետ. ստացող՝ Մկրտիչ
վայր՝ Պալախոռոյ վանք

Ի թվին ՋԻԵ. (1476) ես Մկրտիչ երէցս և հարսն իմ Մելիք-Խաթուն ստացանք զսուրբ Աւետարանս ի հալալ արդեանց մերոց ի յիշատակ մեր, և ծնաւղաց մերոց պարոն Վարդին, մաւր իմոյ Մարթային, և հարսինն ծնողաց՝ հաւր իւրոյ Մկրտչին և մաւր իւրոյ Ծալխաթունին, և եղբաւր իւրոյ Ալէքսանոսին, և զաւակին իւրոյ Կարապետ սարկաւագին, և ամենայն արեան մերձաւորաց մերոց. և եդաք յիշատակ ի վանս Պալախոռոյ, ի դուռս սուրբ Գէորգայ զօրավարին...։ Եւ մի ոք իշխեսցէ հանել զսա ի դրանէ սուրբ եկեղեցւոյ, ոչ առաջնորդ և ոչ ազգականք մեր. և ով ոք յանդգնի և հանէ ծախելով և կամ գրաւ դնելով՝ պատիժն աստուծոյ կրեսցեն և ի սուրբ Գէորգայ։

512

ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

ՄՕՎ 45 (1228), Ա. սյուն. 247—248

գրիչ՝ Յովսէփ
վայր՝ Դարանաղեաց գաւառ, Վարդենեցոց վանք

281բ Անուամբն աստուծոյ և Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ։ Ես Յովսէփ եպիսկոպոս՝ գրեցի և կազմեցի զՍազմոսարանս ընդ հովանեաւ սուրբ Ստեփանոսի նախավկայիս, ի ստորոտ Բղնոյ լեռան, որ կոչի Վարդենեցոց վանք, [ի] Դարանաղեաց երկրիս՝ որ կոչի Կամախ, և ի վանացս առաջնորդութեան տէր Պաւղոս եպիսկոպոսին, և հերպետութեան Կոստանդին. Քրիստոս աստուած ավրհնէ զնոսա, զի շատ ծառայեցին մեզ՝ մինչև աւարտեցաւ։

Գրեցաւ Սաղմոսարանս ձեռամբ անարհեստ փծուն գրչի Յովսէփի, ի թվականութեանս Հայոց ՋԻԵ. (1476)։ Ով կարդայք և աւկտիք ի սուրբ յաղաւթս ձեր յիշեցէք աստուած-ողորմի ասելով և հայր մեր որ երկինք կարդալով, և ինքն՝ արարիչն աստուած, ձեզ և մեզ, առհասարակ, ողորմեսցի իւր միւսանգամ գալստեանն. ամէնն հրեշտակք ասասցեն, և եղիցին՝ մեզ։ Արդ, աղաչեմ զձեզ՝ խոշորութեան և սղալանացն մի մեղադրէք, զի կարն մեր այս էր։ Ընդ նմին յիշեցէք զհոգևոր հայրն իմ խաւճայ Ա[րթ]ին-պէկն ի մաքրափայլ յաղաւթս ձեր, ո՞վ սուրբ ընթեր[ցողք ///

## 513

## ԺՈՂՈՎՈՒՄՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՍՐԲՈՑ ԱՒԵՏԱՐԱՆԻ, ՈՐ ԸՍՏ ՄԱՏԹԷԻ, ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

*Երևան 2687*

*վայր՝* Աւագ վանք

81բ *Զհեզահոգի և ղանյաղթ փիլիսոփայն՝ զմեծ հեռեարրն* Յոհաննէս
Տործորեցի, *որ զսուրբ մատեանս մեկնեալ շնորհեաց բանասիրաց ման-*
*կանց Սիոնի՝ յիշեսջիք ի տէր*։*
*Ընդ նմին և զստացաւղ աստուածաշունչ սուրբ մատևնիս՝ վարի և*
*զքաջ հեռեարրն՝ զհեզահոգի և ամենայն առաքինութեամբ զարդարեալն՝*
*զ*Յովաննէս *զարհի և զմեծ րաբունն զ*Համշէնեցին *աղաչեմ յիշել ի տէր։*
*Եւ ղգծող սմին զսիրասնունդ զաշակերտն իւր զ*Մովսէս *աբեղայն առնել*
*արժանի յիշման։*
*Ի թվն. ՋԻԵ. (1476)։*

## 514

## ՄԱՇՏՈՑ

*Երևան 6831*

*գրիչ՝* Կիւրակոս Տրապիզոնեցի
*վայր՝* Խախտեաց գաւառ, Անլոց վանք

228ա *...Աւարտեցաւ սուրբ մատեանս՝ որ կոչիւր Մաշտոց, ձեռամբ անմար*
*և փըծում դրրչի* Կիւրակոս *եպիսկոպոսի* Տրապիզոնեցոյ, *ի գաւառս*
Խախտեաց, *ի յանապատս* Անլոց, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի*
*և սուրբ Կարապետին, ի թվականիս Հայոց ՋԻԵ. (1476). ի խնդրո հեզա-*
*հոգի և պատուական քահանայի* Իգնատիոսի, *[ի] վայելումն անձին իւրոյ,*
*և յետ ատեացս ելանելոյ յաշխարհէս՝ յիշատակ հոգւոյ իւրոյ և ամուսնոյ*
*իւր* Մինային. *և վասն զի ոչ ունելոյ սոցա զաւակ յերկրի, այլ և հրաժարեալ*
228բ *յերկրաւորէս և հետևեալ || ղկնի Քրիստոսի և գնացեալ յ*Երուսաղէմ *և*
*արժանաւորեալ տեսլեան աստուածընկալ գերեզմանին և սուրբ Տնաւրի-*
*նականաց փրկչին՝ ակն ունելով միւանգամ գալստեան նորա. և զստա-*
*ցան զսուրբ գիրքս ի յարդար վաստակոց և հալալ ընչից իւրեանց՝ յիշա-*
*տակ հոգւոյ իւրոյ և կենակցին իւր* Մինայի...:
*Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեանդ, որք հանդիպիք այսմ*
*մատենի, խնդրել սրտի մտաւք զթողութիւն մեղաց յամենառատ յարար-*
*չէն ամենեցուն աստ տալ զխաղաղութիւն կենաց և ի հանդերձելումն*
*լըսել զձայն կենարարին, որ ասէ՝ Եկայք. աւրհնեալք հաւր իմոյ, ժա-*
229ա *ռանդեցէք զան||սպառ ուրախութիւնն ընդ ամենայն սուրբս, ամէն։*
*Այլ և աղաչեմ յիշել զծնողս* Ընքնատիոս *քահանային՝ զհայրն իւր*
*զպարոն* Ներսէս *և զմայրն իւր զ*Տաւնայն, *և զեղբայրսն իւր զ*Մեղիտոնն,

* *Ներսես Շնորհալու կիսատ թողած մեկնությունն ավարտել ու լույս է ընծայել Հովհ. Ծործորեցին, 1316 թվականին։*

և կենակիցն, և զիւր որդին զՅոհանէսն, և զՎառվառն, և զփեսայն զՃանիարն, և զմիւս եղբայրն Մարտիրոսն, և զհաւրեղբայրն զԽաչատուրն, և զիւր որդիքն զըռայիս Յովանէսն, և զՊաղոսն, և զՊետրոսն: Այլ և աղաչեմ զհանդիպողսդ հայցել յաստուծոյ պահել ամբողջ կենաւք զբաքունապետս դաւաւիս Բաբերդու զտէր Սարգիս, նայ և զվերատեսուչ սուրբ ուխտին Բերթականն՝ զՂազար եպիսկոպոսն, և զքահանայսն
229բ դեղչին Աւձղեղա՝ զԹորոս երէցն ///*։

...Եւ եդի զսայ յիշատակ անձին /// ի դուռն սուրբ Յակոբայ։ Եւ մի ոք իշխեսցէ հանել զսա յաստի, ո՛չ ազդական և ո՛չ [քահ]անայ, կամ տանուտէր, կամ այլ ոք, ո՛չ ծախելով, ո՛չ [գրաւ] դնելով, ոչ բաշխելով, և թէ ոք յանդգնի այսմ /// նայ զՅուդային և զԿայենին պատիժն առցէ, հանցի իւրայովքն ի դրոյն կենաց։

## 515

## ՄԱՇՏՈՑ

Սեբաստիա, ս. Նշան 86, ՀԱ, 1926, էջ 339—340

գրիչ՝ Սարգիս

ա

...Արդ, գրեցաւ հարկաւոր և մեղսալքաւիչ տառս այս ձեռամբ անպիտան և անարհեստ գրչի Սարգիս սուտանուն քահանայի, ի թվին Հայոց ՋԻԵ. (1476), ի դուռն սուրբ Կարապետիս և այլ սրբոցս, որք աստ կան հաւաքեալ, և ի հայրութեանս մերում տէր Կարապետի և այլ հնգետասան հոգևոր ///

բ

Աստուած ողորմի Պաղտատ մամային հոգոյն՝ տնտեսին, որ ամենայն ժամ կու կերակրէր։ Աստուած զիւր մեղք թողու։

գ

Յիշատակ է Մաշթոցս սիր Ամիր-Պոյենուն, և իւր կնոջն Մանաւշին, և որդուն Դանիէլ երիցուն, և թոռին Աստուածատուր սարկաւագին, և ամենայն արեան մերձաւորաց։ Ստացաւ զգիրքս ի հալալ արդեանցն՝ առեալ ԻԸ. (28) մառղիլ ղոռիլ(՞), և եդ յիշատակ ի գիւղն՝ որ կոչի Խառիկոնի բերդ:

---

* 229բ էջի սկզբի տողերը մաշված են և շատ բառեր մնում են անընթեռնելի, ուստի և մի պարբերություն (նորություն չպարունակող բովանդակությամբ) դուրս ենք թողնում։

516

ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 5660

գրիչ՝ Զաւրվար
վայր՝ Տիւրիկ

408բ ...Գրեցաւ եղանակաւոր տառս ի քաղաքիս Տիւրիկոյ, ի դուռն սուրբ Սարգսին, ի թուին ՋԻԵ. (1476), ագոստոս ամսոյ է. (7), ձեռամբ բազմամեղ Զաւրվար երիցու, ի խնդրոյ*

517

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2335

գրիչ՝ Կարապետ
վայր՝ Երուսաղէմ

308ա Գրեցաւ հաստոյ դասանութիւնս ի թվիս Հայոց յՋ և ԻԵ. (1476), ձեռամբ մեղապարտ Կարապետ քահանայի և սուտանուն կրաւնաւորի, և յիշատակ հոգոյ իմոյ և ամենայն արեան մերձաւորաց իմոց՝ հաւրն իմոյ Յոհանէսի, և մաւրն իմոյ Եղիսաբեթի, և եղբարց իմոց Յովանէսի և Գրիգորի, և կենակցաց նոցին Ալամշայի և Դովլաթի, և դեռաբոյս զաւակացն նոցա, զոր տէր աստուած Յիսուս Քրիստոս յոյսն ամենեցուն շառաւիղ բարի պահեսցէ նոցա, թէ արու և կամ էգ, յազգէ մինչև յազգ, ամէն։

Գրեցաւ ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ընդ հովանեաւ սրբոյս Յակոբայ, որդոյ Զեբեթեա, և այս է աթոռ եղբաւրն տեառն Յակոբայ։

Աղաչեմ զհանդիպողքդ, զի թողութիւն մեղաց խնդրէք յաստուծոյ ինձ՝ Կարապետի, և իմոցն ամենայնի, և որք մասնաւոր պիտոյից ագնական եղեալ են մեզ ի սուրբ Տնաւրէնութեան տեղիքս, խնդրեցէք ի Քրիստոսէ, զի ի ժամ սոսկալի դատաստանին Քրիստոսի ողորմութիւն լիցի նոցա և ագնութիւն ի Քրիստոսէ...**։

518

ԺՈՂՈՎԱԾՈՒ ԹՂԹՈՑ

Երևան 2678

գրիչ՝ Մաքէոս

ա

306ա ...Գրեցաւ սուրբ գիրքս այս՝ որ կոչի Թխթոց, ձեռամբ հիքոյս Մաքէոսի, քանզի սկսայ ըզսա ՊՀԵ. (1426) թվին և կատարեցաւ ՋԻԵ. թվիս

---

* Ընդարձակ տեղ է թողնված ստացողի մասին լրացումներ կատարելու համար։

** Ուշագրավ են ձեռագրի առաջին էջի վրա հետագա (ԺԶ. դար) ստացողներից մեկի կողմից գրված հետևյալ տողերը.

«Շիրազի խնեքն այսպէս է. յառաջն Ա. կարմիր, յետոյ Ա. սեաւ, յետոյ Ա. ըսպիտակ, Ա. այլ սեաւ, Ա. այլ կարմիր»։

Հայոց (1476), ի յիշատակ հոգոյ աղքատիս, և առ ի վկայելումն հարազատացն իմ Իգնատիոս կրօնաւորին, և Եսայի վարդապետին, և Ուսկանն աշակերտի, և Առիստակէսի: Եւ ումի գիրքս այս յինքեանն զբովանդակ բանս ուղղափառ վարդապետաց և զճշմարիտ դաւանութիւնն, որ ի Քրիստոս հաւատոցն, որք օգտիք ի սմանէ յիշեցէք ի բարի զյիմարս Մաթէոս, և աստուած զձեզ յիշէ ի փառս իւր, ամէն։

Բ

83ր Զանպիտան հողս և զանարհեստ գրչակս և զեղկելի գծաւղս Մաթէոս այսմ ծաղկաքաղ ոգեշահ մատենի աղաչեմ, աղաչեմ, որք հանդիպիք սմա վերածնութեամբ կամ աւրինակելով, յիշեսջիք զմեզ ի սուրբ աղաւթսն ձեր, որ և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերմէ։

## 519

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 6257

կազմող և նորոգող՝ Թադէոս

270ա ...Յիշեցէք... ընդրեալն ի հայրապետաց և գովեալն ի մէջ եպիսկոպոսաց պատուելի և փառաւոր հայրապետն մեր զտէր Ազարիա արհեպիսկոպոս, որ երետ վերստին նորոգել զսուրբ Աւետարանս յիշատակ իւրն, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն իւրոյ Յալթունտաշ ոսկէգործի և մաւրն իւրոյ Օֆայ-Խաթունի, և զեղբայրս իւր՝ զկենդանին և զհանգուցեալն, և զեղբայրորդին իւր՝ զնորաբողբոջ ծաղիկն զտէր Ղուկաս եպիսկոպոս, և զայլ ամենայն արեան մերձաւորք իւր...։

Ընդ նմին և ինձ՝ անարժան, մեղաւոր, գծոյլ և զյետինս ի կարգաւորաց Թադէոս կազմող սորայ յիշեցէք ի Քրիստոս, և զհայր իմ, և զմայրն
270բ իմ, և զերախտաւոր վարդպետն իմ. և յիշողք յիշեալ լիցիք առ||աջի անմահ գառին աստուծոյ։

Կազմեցաւ ի թվականիս Հայոց ՋԾԻԵ. (1476), և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

## 520

### ԱԻԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 561, Մ.Տ.Մ.

հետ. ստացող՝ Սարգիս

162բ ...Արդ, և ես Սարգիս քահանայս առի զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իմոց, յիշատակ... հաւր իմոյ Ներսէսին, և մաւրն իմոյ Խոնձին, և եղբարցն իմոց Դաւթին և Քանմանին և Ղապարթուին, և քուերացն իմոց Աչամարթին, Շանիսլիմին, Ղատամին, և եղբայրորդոցն իմոց՝ Յայկազին, և Ստեփանոսին, Գատկին, Թարխանին և Բարսղին, և դստերն իմոյ Գիշշատին"...։ Ի թիվս Հայոց ՋԻԵ. (1476)։ Այլ և զվերջին կազմող սուրբ Աւետարանիս Զաքարեայ սուտանուն քահանայ յիշեսջիք։

## 521

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 8373*

*Հետ. ստացող՝* Գըտոն

173ր *Ո՛վ մանկունք եկեղեցոյ՝ քահանայք և դպիրք, ով որ կարդայք կամ աւրինակէք զայս Գանձասետրս ի վերջին ըստացողս յիշեցէք՝ պարոն* Գըտոնս, *և զիւր ծընաւղն՝* Աստուածատուրն *և զ*Բաւ[ն]բաւն, *և զանդրանեկն, և զիւր կողակիցն զ*Սաfարն, *և ըզդուստրս ըզ*Տալվար-խարունս, *և ըզ*Ընղըշին՝ *ըզփեսան, և ըզ*Ասլիմելիfս *յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զիւր երկնից արքաութիւնն պատրաստէ ձեզ և ձեր ննջեցելոցն, ամէն։ Ի վայելումն սրբոյն Հրեշտակապետի եկեղեցւոյն։*

*Վերջի յիշատակութիւնս գրեցաւ թվին Հայոց ՋԻԵ. (1476)։ ///* թոռնի* խաչատուրն:

---

* *Անձնանուն է. մաշված լինելով, դարձել է անընթեռնելի։*

ՋԻԶ 1477

## 522

### ԱՒԵՏԱՐԱՆ*

Երևան 6319

գրիչ՝ Մելքիսէթ
վայր՝ Բասեն, Եգէպատ գիւղ

246բ ...Յամի յինն հարիւր քսան և վեցերորդի թուականութեանս Հայոց
(1477) գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան և անարհեստ
գրչի Մելքիսէթ սուտանուն իրիցու, որ անուամբս եմ կոչեցեալ և գոր-
247ա ծովս ոչ, ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս, ի գաւառս || Բասենոյ, ի գիւղս
որ կոչի Եգէպատ, ի դառն և յանբարի ժամանակիս, որոյ արդարու-
թեանն կողմն հակեալ էր և անիրաւութիւն և անկարգութիւնն ամենայն
ուրէք զաւրացեալ, և ուր ուրէք գաանէր ճշմարտութիւն վասն ծովացեալ
մեղաց իմոց, ի բազմանալ անաւրինացն և ի նուազել քրիստոնէիցն,
ի թագաւորութեան Վրաց Բագրատա, և ի յաթաբեկութեան Ղւարղւարէի,
և ի ղանութեան տաճկաց թոռինն Աւթմանա՝ Ուզուն-Հասանին:
Ի թուականութեանս Հայոց Ջ. և ԻԵ. (1476) ամի, ամսոյն սեպտեմ-
բերի ժողովեցան անթիւ զաւրքն տաճկաց և գնացին զաղա ի Վրացտուն,
և իջեալ բանակեցաւ առ ափն Քուռ գետոյն, ի քաղաքն Փայտակա[րա]ն,
որ այժմ ասի Տփխիս, և սփռեաց զաւրսն իւր յաշխարհն Վրաց, և հասեալ
մինչև ի սահմանս Ափխազից, և ելեալ ի կատար լերինն Կովկասու, և ան-
247բ դի ժողովեցին բազում աւարս և գերիս ի մի վայր, և շատ ոճիրս գոր||ծեաց։
Քանզի ԼԲՌ. (32,000) գերեցաւ և ԽԸՌ. (48,000) մարդ ի սուր սուսերի մա-
շեցաւ։ Զայս ամենայն մեր լուեալ և տեսեալ զարհուրէաք, զի ողորմածն
աստուած յանողորմն սուրն մատն[եաց] զազգս քրիստոնէից վասն մեղաց
իմոց. քանզի թոյլ ետ ողորմածն աստուած և մտեալ սատանա ի սիրտ
յանողորմ յազգին տաճկաց և կատարեաց զցանկութիւն իւր, զոր տէր
աստուած փրկեսցէ զամենայն քրիստոնայքս ի յանաւրինաց և ի սա-
տանաի փորձանաց, ամէն, եղիցի, եղիցի։
Նաև յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, ո՜վ սուրբ ընթերձաւղք
սուրբ Աւետարանիս, զստացող սորա զԳրիգորն՝ զՆղիին որդին, զի յոյժ
փափաքանաւք և ջերմեռանդ սիրով ստացաւ զսուրբ Աւետարանս ի հա-
լալ յ[ը]նչից իւրոց յիշատակ իւր, և զաւակաց իւրոց Մխիթարին և Հա-
րապետին, և դեռաբոյս մանկանցն Ազիզբէկին, Նղիին, Մուսէսին, և եղ-
248ա բաւրն Սաճակին, և ծնաւղացն իւրոց՝ փոխեցելոցն առ Քրիստոս||զհայ-

* Թեմաների ուրույն ընթրությամբ, կատարողական ինքնատիպությամբ և տեխնի-
կայով ուշագրության արժանի են այս ավետարանի մանրանկարները, որոնք պատկանում
են հայ մանրանկարչության ժողովրդական ուղղությանը։

ըըն իւր զՆղիէն և զմայրն իւր զՄարթան, և զայլ ամենայն առուարեան* մերձաւորսն և զհանգուցեալսն յիշեցէք առ Քրիստոս...։

Եւ խոշորութեան գրիս և սղալանաց անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր։

Այլ և յիշեսցիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զփցուն գրիչս զՄէլքիսէք սուտանուն երէցս, և զհայրն իմ զՍիմէոն քահանայն, և զմայրն իմ զՂա-յաթ-Խաթունն, և այլ զամենայն արեան զմերձաւորսն իմ՝ զփոխեցեալքն առ Քրիստոս...**։

## 523

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6858

308բ ...Արդ, գրեցաւ սայ ի թուականիս Հայոց ՋԻԶ. (1477), ի դառն և յանբարի ժամանակի, զի յայսմ ամի եկն Աւրմանին թոռն Հասան-պէկն ի վերայ Փայտակարան քաղաքին, որ այժմ ասի Տփխիս. էառ աւար և գերի, և ի սուր սուսերի մաշեաց զայն ահագին երկիրն, և ո՞վ կ[արէ]//

## 524

## ՄԱՅՐ ՄԱՇՏՈՑ

Երևան 895

գրիչ՝ Գաբրիէլ
վայր՝ Յովհաննավանք

ա

305ա Փառք... որ ետ կարողութիւն տկարիս հասանել ի յաւարտ գծիս։

Արդ, ի վերջինս ի խումբս բանասիրաց Սիմէոն վարդապետ շրջեցայ ի բազում տեղիս և ի գրեանս և ժողովեցի զբանք սուրբ և լուսապայծառ Մաշտոցս, նախ՝ վասն ստուգութեան և ճշմարիտ աւրինակի, երկ-

---

* Իմա՝ Հարեանառուէ։

** Ձեռագրի հաջորդ՝ 248բ էջում, շատ անվարժ ձեռագրով գրված է մի անթվական հիշատակարան, որը հնագրական տվյալներով կարող է ԺԶ—ԺԷ դարից լինել։ Իր բովանդակությամբ այդ հիշատակարանը արժեքավոր է, ուստի տալիս ենք ստորև.

«Ես Միրանս տովի զուլբք Աւետարանս տէր Յովանէսին։ Ես որ էս բանս ինձ եղօ, որ գերեցայ իմ կին ու աղովէ Ելի եր որ պրծայ ու եկի իմ տղեքն էլ աղքեցի, հեթ հասան. զիս էլ բռնեցին ու զիմ տղեքն էլ։ Ես էլի պրծայ ու տղէքս կորանէ Եկի մուտ ի Յովանէս էրէցն, ու ասի թէ զօետարանս տանիմ ու զիմ գերիքն ազատիմ։ Նայ ելի մ[ի]տք արի, թէ որ մարդ է ինքն զիւր գլուխ կտրել, որ ես զիմ գլուխս կտրեմ ու կամ զիմ ծնօղաց վարձըն ու զիյիշատակն կորցեմ։ Էլի չկարցի զմիշ անել, թող էլի ես կորիմ ու զիմ ազգին յիշատակն չկորցեմ։ Ես Յովանէս իրիցէն Ճ. թանկի արծաթս առի, զիմ ազգի յիշատակ Աւետարանս տվի. յիշատակ էր ու էլի յիշատակ տվի տէր Յովանէսին:

Ով որ զէս մոշլէ ու կամ իրքմին խօսք ասէ, նա անիծած լինի ինքն ու իր ծնօղքըն, յօխտեանս յօխտնից ու զարիմ ընլի սուրբ Աւետարանս իրեն ու իր տանուտեղինս։

րորդ՝ վասն կարաւտութեան և պիտանութեան սորա մեզ՝ ի կեանս և
ի մահուն, երրորդ՝ վասն լուսաւորութեան և աւգտութեան նորոգ ման-
կանց եկեղեցւոյ, չորրորդ՝ վասն յիշատակութեան մեզ յետ մահու առաջի
անմահ թագաւորին և բարեխաւս առ աստուած, հինգերորդ՝ զի յամե-
նայն շնորհաց սորա, որով արժանաւորին մարդիկ, մասնակցեսցէ զմեզ
Քրիստոս յոյսն սրբոց իւրոց։
Արդ, գրեցաւ սա ի գաւառիս Արարադեա, ի վանքս Յովհաննու, ի
դրան սուրբ Կաթուղիկէի, և շնորհաբաշխ սուրբ Կարապետիս, և այլ
365բ ամենայն սրբոցս՝ սուրբ Վարչամակի և սուրբ Ստեփանո||սի նախավ-
կայի աջի, որ է աւրհնեալ յաւիտեանս։
Գրեցաւ ձեռամբ անարհեստ և փծուն գրչի Գաբրիէլ եպիսկոպոսի, ի
թվականութեան մեր ՋԻԶ. (1477), ի կաթողիկոսութեան տէր Ոհաննիսին,
ի յաթոռն սուրբ էջմիածնին Վաղարշապատու։
Արդ, ցանկացող եղև այսմ սուրբ գրոց Մաշտոցիս խաւճա Հանդիկն,
և ամուսին իւր Խութլու-Խաթուն, և զաւակ սոցին դեռաբոյսն Յակոբ: Եւ
ետու ընծայ ի սուրբ և ի հրաշափառ աստուածաբնակ և երկնանման
սուրբ տաճարն էջմիածինն, յիշատակ հոգւոյ իմոյ և վասն արևշատու-
թեան զաւակին իմոյ Յակոբին:
Արդ, որք կարդայք կամ աւրինակէք յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ
յաղաւթս ձեր խաւջա Հանդիկս և զամուսին իմ Խութլու-Խաթուն: Եւ ոչ ոք
ունի իշխանութիւն հանելոյ ի դրանէ սուրբ էջմիածնին. բայց աղաչեմ
զձեզ, ո՛վ սուրբ դասս քահանայից, որ ամէն տօնի զյիշատակարանս
կարդայք և աստուած-ողորմի ասէք Հանդկան և ծնաւղաց իւրոց, ամէն։
366ա Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա
տեսութեամբ կամ աւգտութիւամբ, յիշեսջիք զստացող սորին զխաւճա
Հանդիկն, և զամուսին Խութլու-Խաթուն՝ հանդերձ ծնողօք և ամենայն
արեան մերձաւորօք, և զիմ անարժանութիւն Գաբրիէլ գծողի՝ հանդերձ
ծնօղաւք իմովք յիշեսջիք զմեզ բարի կամօք և ջերմեռանդ սրտիւ, և թո-
ղութիւն խնդրեցէք ի մարդասիրէն աստուծոյ ամենայն յանցանաց մե-
րոց, փրկելով զմեզ յաւիտենից հրոյն և արժանի արասցէ անմահ կենացն
և երկնից արքայութեանն։
Եւ դարձեալ աղաչեմք յիշել ի տէր զփծուն գրիչս Գաբրիէլ եպիսկո-
պոս, և զաշակերտքս մեր զՄարտիրոս աբեղայն, և զՂուկաս աբեղայն,
որ զթուխտս կոկեաց, և սպասաւորն մեր զԱստ-Մէլիքն յիշեցէք ի
Քրիստոս։ Եւ ինքն որ առատն է ի տուրս բարեաց ողորմեսցի ձեզ՝ յիշո-
ղացդ և մեզ՝ յիշեցելոցս, ամէն։

Բ

137ա ...Բիւր մեղաւք խաւարեալս և մահացեալս՝ զԳաբրիէլ եպիսկոպոս
գրիչս, և ստացող զխաւճա Հանդիկն, և զամուսին իւր, և զաւակ սոցին
զդեռաբոյսն Յակոբ յիշեցէք ի Քրիստոս։
Թվ. ՋԻԵ. (1476) զգերութիւնն Վրաստանայ, որ Հասան-բէկն գերե-
ցոյց։

Գ

225ա ...Վրաստան, *որ* Հասան-բէկն *գերի արար ԼԲՌ. (32,000), թվ. [Ջ]ԻԵ. (1476)։*

Դ

*ստացողի բարեկամ՝*
Աստուածատուր Պալախուրցի

*Վր խաչայ* Հանդիկ *ու պատուէլի*
*Դու աստուծոյ ես սիրելի,*
*Արգունք առնես զամէն բարի,*
*Աստուած անէ ընդունելի։*
Աստուածատուր Պալախուրցի,
*Որ զայս սակաւ բանս ասացի։*
Յակոբ *մանուկն է քո որդի*
*Եւ ժառանգորդ իւր հայրենի։*

## 525
## ԱՒԵՏԱՐԱՆ

*«Արարատ» 1911 թ. մարտ, էջ 219—220, Ագուլիս*

*գրիչ՝* Զաքարիա
*վայր՝* Աշոտա-ձոր, Յանկիւնեաց վանք

292բ ...*Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվին Հայոց Ջ. և ԻԶ. (1477) ամի, ի ձորս* Աշոտա *և ի վանս* Յանկիւնեաց, *ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս, և սուրբ Վարդիհաւր գերեզմանիս տես(՞) տաճարիս, և սքանչելագործ սուրբ Նշխարացս, ձեռամբ մեղսամած և անարժան գրչի* Զաքարիաի, *ի թագաւորութեան* Հասան *պարոնի, որ առ ու գերի արաւ զաշխարհն* Տփխիս՝ *ԿՌ. (60,000) մարդ։ ԼՌ. (30.000) ի սուրն անցուցին, ԼՌ. (30,000)՝ գերի. վա յ ինձ հազար բերան. ի հայրապետութեան տէր* Սարգսի: *Եւ արդ, յերես անկեալ աղաչեմ զմանուկս սուրբ եկեղեցւոյ յիշել ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող աստուածաբան սուրբ Աւետարանիս՝ զհաւատարիմ և զհոգևոր քրիստոնէն* զԱզնեռն, *և զկողակիցն իւր* զԴըշխոյ-Մէլիքն, *և հարազատ որդին իւր* Մխիթար *քահանայն և զկենակիցն իւր* Գոճար, *և զորդին իւր* Մելքիսէթ *քահանայն, որ ստացաւ զսուրբ Աւետարանս իւրեանց յիշատակ, և ծնաւղաց նոցին, և եղբարցն* Մարտիրոսին *և* Յովճաննիսին, *պարոն* Սէթ *սարկաւագին, և քվերն նորա* Ագըգին, *և ետուր զսայ նորայընձայ քահանայիս տէր* Մխիթարիս...:

*Դարձեալ, կրկին աղաչեմ յիշել ի Քրիստոս զպատուական և զսրբասնեալ քահանայն զուսուցիչն իմ զտէր* Կարապետն, *և զմիւս վարպետն իմ զտէր* Ոնոփրիոսն, *որ փոխեցաւ..., և զհայրապետն մեր զտէր* Գրիգոր *եպիսկոպոսն, և զտէր* Աստուածատուր *հըարպետն, և զորնտեսն՝* զՀեռիքն, *որ սիրով հոգւոյն նեղացան և սպասաւորեցին սուրբ Աւետարանիս և հոգ տարան ի թուղթ նշայել, որ ի յաւել ածելն, որն ի շրին բերելն, որ և ինքն տէր աստուած Յիսուս Քրիստոս անթառամ փառօքն*

ղարդարեսցէ զնոքօք, ամէն։ Եւ զիս՝ զանարժան գրիչս Զաքարէ քահանայս, որ զանուն ունիմ և զգործս ոչ՝ յիշման արժանի արարէք միով աստուած-ողորմիւ, և զծնողսն իմ զՄելքիսէդն, և զմայրն իմ զՄելիքն, և զեղբայրն զՎասիլն, և զքոյրն իմ զՍալի-Մելիք, և զՏովլաթն, և զՄարիամն, և զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիս և զ.անգուցեալսն, ամէն։ Եւ զՄարկոսն, որ զթուղթն կոկեց, և դուք յիշողքդ և մեք յիշեցեալքս մասն բարեաց ընկալցուք ի Քրիստոսէ աստուծոյ մեր[ոյ], ամէն և եղիցի։

Աւարտեցաւ սուրբ Աւետարանս յուլիս ամսոյ ի Ե. (5)...։

Ձեռս երթայ՝ դառնայ ի հող,
Գիրս մնայ յիշատակող...։

### 526

### ԱՒԵՏԱՐԱՆ
Մ. Տ. Մ.

գրիչ՝ Զաքարիա
վայր՝ Յանկիւենաց վանք

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվիս Հայոց ՋԻԶ. (1477) ամի, տեղիս ի Ջորս Աշոտա, ի վանս Յանկուենաց, ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս, և սուրբ Վարդիհաւր գերեզմանիս, և սուրբ Սիոնիս, և սուրբ Պետրոսի և սուրբ Պաւղոսի, ձեռամբ մեղսամած և անարժան գրչի Զաքարիս, ի խանութեան Հասան-պէկին, և ի հայրապետութեան տէր Յովհաննիսի, առ դրան սուրբ էջմիածնի*։ Դարձեալ, կրկին աղաչեմ յիշել ի Քրիստոս զպատուական և սրբասնեալ քահանայս Վարդիհաւր զտէր Գրիգոր եպիսկոպոսն, և զտէր Հայրապետն, Աստուածատուրն և զՀերիք մամն։ Եւ զիս՝ ղանպիտան գրիչս Զաքարէս, և զուսուցիչն իմ զտէր Կարապետն, և զմիւս վարպետն իմ ըզՈնոփրիոսն, որ փոխեցաւ ի Քրիստոս, և զՄարկոսն որ ղթուղթն կոկեց...։

### 527

### ԱՒԵՏԱՐԱՆ
Նոր Ջուղա 50, Մ.Տ.Ա. և Մ.Տ.Մ.

գրիչ՝ Զաքարա
վայր՝ Յանկիւենաց վանք

289ա— ... Ըստ նըմին աւրինակի երջանիկ և պատուական քրիստոնէն Ամենա-
291ր դինն, ի խնդիր եղեալ անգին մարգարտիս և ստացաւ զգանձս անկողոպտելի, և դուք սրբասնեալ հարք և եղբարք՝ մանկունք սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս լի բերանով և ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք Ամենադնին և կնոջ Հռիփսիմին և ծնաւղացն։

---

* Մինչ այստեղ հրատարակված է Ն. Մառի „Дневник поездки в Шавшетию и Кларжетию" աշխատության մեջ (տե՛ս Тексты и разыскавия,. VII,. СПБ, 1911, էջ 27—28)։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեանս Հայոց ՋԻԶ. (1477), ձեռամբ մեղաւոր և զանարժան դրչի Ջաֆարա աբեղաի, ի վանս որ կոչի Ցանկիւնեաց, ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս, և սուրբ Վարդիհօր սուրբ գերեզմանիս, և աստ հօաքեալ ամենայն սրբոց։

## 528
## ԱԻԵՏԱՐԱՆ
**Երևան 7779**

*նորոգող*՝ Անանիայ
*վայր*՝ Գողթան գաւառ

232ա ...Արդ, նորոգեցաւ սուրբ Աւետարանս. ես Գոլում ցանկացայ Աւետարանիս և առի զսայ ի հալալ ինչից իմոց և ընծայեցի սուրբ Քրիստափորոյ, յիշատակ ինձ, և կողակցին իմոյ Խարուն-Փաշային, և զհայրն իմ Պարսում՝ հանգուցեալ ի Քրիստոս, և զհոգևոր հայրն իմ զԱւագ, և զմայրն իմ Սադրայ-Մէլիք, զհարազատ եղբայրն իմ Նոկզար: Կրկին անկամ յիշեցէք յաղաւթս Շմաւոն աբեղէն, որ միջնորդ կա[ն]կնեցաւ Աւետարանի նորոգելն։ Ի հայրապետութեան մերում գաւառիս Գողտան տէր
232բ Սիմէոն արհեպիսկոպոսի՝ ժրայշան և քաջ մշակի վերնում Սիոնի։ || Եւ միաբան եղբարքս և սպասաւորքս և շինարարքս սուրբ ուխտիս, որք կան առ ոտս սորա բնակեալ՝ զտէր Բարսեղ աբեղէն, զտէր <Ար> Ազարիայ՝ տիրին եղբայրորդին, զտէր Հայրապետ աբեղէն Տէրունեցի՝ հայրապետ վանիցս, զտէր Յովանէս աբեղէն Խիկարեցի յիշեցէ[ք] ի բարի, զՅովան երէց Գրտընեցի յիշեցէք ի Քրիստոս, զտէր Յովսէփ աբեղէն յիշեց[էք] ի բարի, և զոնտես Պապն՝ աշխատաւոր վանիցս յիշեցէք ի բարի, և զլընչինս զհողս՝ զհնազանդս՝ զկազմող Աւետարանիս Անանիայ աբեղէս սուտ անուամբս, որ եմ իբրև զմի փոքրագոյնից սպասաւորաց տեառնս մեր տէր Սիմէոնի, ի թվականութեանս Հայկազան տոմարի ՋԻԶ. (1477)։

Դարձեալ, փառաւոր պատուով և ծածկուցով պահէ զսուրբ Աւետարանս, Գուլում եղբայր, զԱնանիէս յիշէ ի նստել ի տան և գնալ ի ճանապարհ, և յամենայն ժամու, և զքեզ անսասան պահեսցէ, Գուլո՛ւմ, մինչև յաւրն վերջին, ամէն...։

## 529
## ԱԻԵՏԱՐԱՆ
**Մ. Աթոռ 12, «Էջմիածին», 1950 թ. հուլիս-օգոստոս, էջ 81**

*ծաղկող*՝ Ստեփանոս Առընջեցի

112բ Ստզկեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Ըստեփանոս եպիսկոպոսի, ի վանքս Առընջուց, ի դառն և ի նեղ ժամանակիս, զի գնաց Հասան-բէկն և գերեաց զՎնաստուն*, թվ. Ջ՛Զ. (1477)։

* Խոսքը, անշուշտ, Վրաստանի մասին է։ Նկատի ունենալով Ուզուն-Հասանի ձեռնարկած վրացական արշավանքի ընթացքում զոհված ու գերված տասնյակ հազարավոր մարդկանց, Ստեփանոս Առնջեցին դիմում է բառախաղի և Վրաստանի փոխարեն գրում է Վնաստուն։

## 530

### ՃԱՇՈՑ

*Երեւան 6378*

*վայր՝* Արճէշ

ա

284ա *Տէր աստուած... [ողորմեա] ստացողի գրոյս տէր* Յովանէս *եպիսկոպոսի և հարազատին իւրոյ նորընծայ աբեղային* Գալուստին, *որ յայսմ ամի գնաց յ*Երուսաղէմ *և ի ճանապարհին առ աստուած փոխեցաւ։*

բ

387բ *Տէր աստուած Յիսուս Քրիստոս... ողորմեա ստացօղի սուրբ գրոցս սրբասէր եպիսկոպոսին տէր* Յովանիսին *և ծնօղաց նորին և հարազատացն իւր՝ սուրբ և սրբասէր հրեշտականման կրօնաւորացն տէր* Ստեփանոսին *և տէր* Գալուստին, *որ տղայհասակ յաստուած փոխեցան և սուգ անմխիթար թողին։*

գ

*հետ. ստացող՝* Խաչատուր
եպիսկոպոս Գողթնեաց

592բ *...Գտի զսա ի բազում ամաց դրեալ և ոսկէզօծ յօրինուածով զարդարեալ յերկիրն* Քաջբերունեաց, *ի քաղաքն* Արճիշու, *ի թուականութեանն արամեանս ազին* ՋԻ. *և վեցերորդ ամին (1477), ի բարեխօսութիւն և յիշատակ բարի արքեպիսկոպոսի ուրումն* Յովանիսի...*։

## 531

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երուսաղէմ 1669*

*գրիչ՝* Կարապետ աբեղայ
*վայր՝* Բաղէշ

...Ի *վայելումն* Թումայ *եպիսկոպոսի՝ առաջնորդի սուրբ ուխտին* Գոմաց, *որ ի* Բաղէշ, *ի դուռն սուրբ Աստուածածնի և սուրբ* Գէորգեայ, *ի սուլտանութիւն* Հասան-բէկին, *և ի կաթողիկոսութիւն* Յովճաննիսի:

## 532

### ԳԱՆՁԱՐԱՆ

*Երեւան 4976*

*գրիչ՝* Իսրայէլ
*վայր՝* Մոկք, Փասավանք գիւղ

212բ *Փառք... որ ետ կարողութիւն մեղաւոր գրչիս* Իսրայէլի *անարժան քահանայի, որ գրեցի զԳանձարանս ի վայելումն* Աւետիս *դպրին, ի գեղ-*

* *Գողթնյաց եպիսկոպոս Խաչատուրի այս ծանոթագրությունը, ձեռագրի գրչության տարեթվի ու հանգամանքների մասին, գրված է 1663 թվականին, հավանաբար գլխավոր հիշատակարանի տվյալների հիման վրա, որն այժմ ձեռագրից բացակայում է։*

չէն Աղնա, և յիշատակ ծնաւղացն Ղազարին և Սուլտանին, [և զաւակին իւրեանց Աւետիսին, և կողակիցին իւրոյ Թագուհոյն, և դեռայրոյս զաւակացն իւրեանց Հայրապետին, և Կարապետին, և Գրիգորոյն, և Սուլտանին, և մուրոյոչն Աւետիսին, Սուլտանին և զՅոհանէս կրօնաւորին, զքեռին և զքորերն իւր՝ զԹաւրէզն, և զզաւակն իւր, և զՄրուաքն, և Ջաւրաբաբէլ, և զԲաղտատ, և զաւակ իւր ամէն, Մարգարիտն, ամէն]*։

Գրեցաւ Գանձարանս ի յերկիր Մոկաց, ի գեղս որ Փասավանք կոչեն, ի դուռն սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գրիգորիս, և սուրբ Կարապետիս, ձեռամբ Իսրայէլ մեղապարտ գրչի, ի թվականիս ՋԻԶ. (1477) ամիս, ի դառնացեալ ժամանակիս։

Աղաչեմ զձեզ, ով ոք որ տեսանէք զԳանձարանս և կամ աւրինակէք, նա լի բերանով ասացէք ղաստուած-ողորմին եղկելի գրչիս, և ծնաւղաց իմոց Ամիրշահին և Շնօհօրին, և կողակցոյն Թագուհի, և ազգացն ամենայնի, և եղբարցն. և ասողացդ ողորմի Քրիստոս աստուած, ամէն, ամէն**։

533

ԳԱՆՁԱՐԱՆ

Նոր Ջուղա 248, Մ.Տ.Ա. և Մ.Տ.Մ.

գրիչ՝ Մելքիսէթ
վայր՝ Ռշտունիք,
Շատւան գիւղ

291ա ... Արդ, որք հանդիպիք տեսութեամբ կամ աւրինակելով և կամ եղանակելով յիշեցէք ի բարին Քրիստոս՝ զըստացող սորա զՎարդան սրբամիտ կրօնաւորն և զծնողսն իւր՝ զհայրն իւր զՅովհանէս ե զմայրն զԵղիսաբէթ, և զեղբարքն իւր զԿարապետ և զՄարտիրոս, և զհաւրեղբայրն՝ զԹումայ հեզահոգի կրօնաւորն, և զքեռիքն՝ զԱստուածատուր և զՅովհաննէս զմաքուր կրօնաւորքն, և զմիւս հաւրեղբայրն իւր զՀէրապետ, որ յերիտասարդական հասակի ի յազգմանէ չարին ի յուսինն անկաւ և հեղձամահ եղև ի ներքոյ բազմութեան ձեանն, և սուդ անմխիթար եթող եղբարցն, և քուերցն իւրոց Թանկ-Խաթունին և Մարթային, մինչև ի փոխիլն իւրեանց յաշխարհէն...։

Եւ արդ, ես՝ Վարդան սոսկանուն կրօնաւոր՝ ծառայ ծառայիցդ աստուծոյ եստ գծագրել զսա ի մխիթարութիւն հոգոյ իմոյ... և ծնօղաց իմոց Յովանիսին և Եղիսաբէթին, և եղբարցն Թումայ կրօնաւորին և Հէրապետին, քեռեացն Աստուածատուր կրօնաւորն և Յովաննէս կրաւնաւորն, և հօրնքուերցն իմոց՝ Թանկ-Մէլիքին և Մարթային, և զաւակաց նորին, այլ և քուերցն իմոց Սիրամարգին, և զաւակաց նոցին Սիրունին և Առաքելին, Արուս-Խաթունին և Նշխունին, այլ և Ազըզին, և որդոյ նորա

* Փակագծերի մեջ առնված հատվածը լրացված է այլ ձեռագրով, գրչի կողմից նախօրոք բաց թողնված տողերի վրա։
** Վերջին «ամէն»-ը գրված է փակագրով։

խաչատուրն և Մրշանին, և որդւոյ նորա Շահապին, և միւս քըւերն Եղիսաբեթին, և որդոյ նորին Յովանիսին և Ստեփաննոսին...։

Եւ արդ, ես՝ անկարգս կարգաւորաց, անպտուղ ի բարեաց, մեղաւորս յարդարոց Մելքիսէթ ծրագրող սորա, աղաչեմ զձեզ հայրական գթով և եղբայրական սիրով աստուած-ողորմի ասացէք ինձ՝ Մելքիսէթի անարհեստ գրչի, և ծնօղաց իմոց Ստեփանոսին և Գօճարին, և զաւակաց իմոց...։

Այլ և Աստուածատուր կրօնաւորն, որ աշխատեցաւ ի կոկել թղթին։

Բայց գրեցաւ սա ի յերկիրս Ըռըշտունեաց, ի գեաւղս որ կոչի Շատւան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սրբոյն Ստեփաննոսի նախավկային, և սրբոյն Գէորգեա զաւրավարին, և սրբոց Ոսկեանց քահանայիցն, յամի յորում էր թիւն հայկազեան Ջ. և ԻԶ. (1477), յառաջնորդութեան տեառն Ստեփանոսի կաթողիկոսի, և ի դիտապետութեան այսմ նահանգի տէր Յովանիսի սրբազան եպիսկոպոսի՝ սպասաւորի սրբոյ Թումայի առաքելոյ, այլ և յաշխարհակալութեան Աղուպ-ղանին...*։

## 534

### ՇԱՐԱԿՆՈՑ

«Լոյս» 1905 թ., էջ 141, Բալու

գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Մշոյ Եղրդուտ մենաստան

Գրուած է Մշոյ Եղըրդուտ մենաստանին մէջ ՋԻԶ. (1477) թուականին... նոյն ժամանակ մենաստանին առաջնորդն է եղեր Յովհաննէս եպիսկոպոս։ Գրիչը՝ Ստեփանոս անուն կրօնաւոր մըն է, որ կ'գրէ՝ զՇարակնոցս յիշատակ ճշմարիտ և սրբասնունդ կրօնաւորին Դաւիթ աբեղային, ի վայելումն անձին իւրոյ։

## 535

### ԱԻԵՏԱՐԱՆ

ՄՑՎ 145 (120), հտ. Ա. 028

գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ Եզընկայ

274բ Եղև զրաւ գրչութեան սրբոյ Աւետարանիս ի թուաբերութեան աբեթական գրոհի Ջ. և ԻԶ. (1477)։ Արդ, գրեցաւ տառս աստուածային և տիեզերաքարոզ սուրբ Աւետարանս ձեռամբ մեղսամակարդ ոգւոյ և փցուն գրչի, սուտանուն Աստուածատրի անարժան քահանայի, ի մայրաքաղաքս Եզընկայիս, ի վանքս որ կոչի Երեզի սուրբ Աստուածածին, որ է տեղի չարչարանաց սրբոյն Գրիգորի մեր լուսաւորչին։ Ի հայրապետութեանն Հայոց տէր Յոհանիսի, և յառաջնորդութեանն մերում տէր Սարգիս ար-

* Յաղուբը գահ բարձրացավ 1478 թ. հուլիսի 17-ին և իշխեց մինչև 1490 թ. վերջերը, ուստի այս հիշատակարանի գրության տարեթիվը, անկասկած, սխալ է գրված կամ ընդօրինակված։

քեպիսկոպոսի, և եղբաւրորդոյն իւրոյ՝ նորաբողբոջ զաւակին իւրոյ աէր Յովաննէս արքեպիսկոպոսի, և պարոն Պակթամուրին:

Արդ, աղաչեմ զամենեսեան, ո՛վ դասք լուսերամից, որք հանդիպիք այսմ աստուածախաւս մատենիս կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս զՅակոբն և զկողակիցն զՃինան-Մելիքն, որ ստացան զսուրբ Աւետարանս ի հալալ ար[դ]եանց և եդին յիշատակ ի սուրբ Սոփի, ի գիւղ Անենի՝ յիշատակ իւրեանց, և ծնաւղաց իւրեանց, և զաւակաց, և ամենայն արեան մերձաւորաց՝ Յովանիսին, Եզեկիէլին, Իմրանին, Ասլի-Մելիքին, և իւր որդոցն՝ Թամուրին, և Թուրմանդին, և հաւրն Կաղ-Աստուածատուրին, և Շնօֆորին, Յովանէս քահանային, Կարապետին, և Հարապետին, և ամենայն արեան մերձաւորաց...։

Բ

Յիշեսջիք ի սուրբ աղաւթս և ի մեղսաքաւիչ պատարագս ձեր զՄկրտիչ քահանայ, և զԵզեկիէլ քահանայն, և զուսուցիչն իմ զՂազար քահանայն, և զհայրն իմ զՅեսային, և զմայրն իմ զՄեծխաթունն՝ զփոխեցեալսն առ Քրիստոս, և զեղբայրն իմ զպարոն Մկրտիչն, և զդեռաբոյս զաւակն իւր զԱմիրզատն, և զքոյրն իմ զԽութլու-Փաշան, և զմիւս քուերսն իմ՝ զփոխեցեալսն առ Քրիստոս՝ զԵմին-Մելիքն և զՆռնոֆարն, և զդուստրն իւր զԽութան-Փաշան, և զայլ ամենայն ազգայինսն մեր՝ զկենդանիս և զհանգուցեալսն առ Քրիստոս, ո՛վ դասք քահանայից յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր առ Քրիստոս, ամէն։

536

ԱՒԵՏԱՐԱՆ

«Ազուանից երկիր և դրացիք» էջ 9, Թեմիր-խան-Շուրա

գրիչ՝ Մատթէոս

Աւետարանը գրած է Մատթէոս անուն մին և ստացած է (գնած) Տիկին-էմին մին։ Բայց յիշատակարանից յայտնի չէ թէ ուր գրուած է միայն յայտնի է թուականն, որ է ՋԻԶ. (1477)...։ Յիշատակարանից երևում է, որ Տիկին-էմին նուիրած է Աւետարանս մին Սարգիս քահանայի. բայց թէ ու՞ր, կրկին անյայտ է։ Սարգիս քահանային երէցկին Տինարն վաճառում է Աւետարանս Յովհաննիսի որդի Դանիէլին ՃԾ. (150) թանկայ դրամի՝ միջնորդութեամբ Ղարա-Քեշիշին:

537

ԱՒԵՏԱՐԱՆ

Սեբաստիա, ս. Նշան 32, ՀԱ, 1925, սյուն. 261

870ա ...Բայց գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԻԶ. (1477), ձեռամբ բազմամեղ և ն ///

Արդ, աղաչեմ յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զստացող Աւետարանիս զԴանիկ Ստեփանոսն, զԿիրակոսն, զՄեծ-Խաթունն, զԹորոսն, զՍարգսին, Ջաֆարէ քահանայն։ Յիշատակ գնեցին զսուրբ Աւետարանս, յիւրեանց հալալ արդեանցն գնեցին։





## 538

### Յ Ա Յ Ս Մ Ա Ւ Ո Ւ Ր Ք

Երևան 4873

Հետ. սատացող՝ Ամիր

307ա ...Պարգևաւք և առատ ողորմութեամբն աստուծոյ բարերարին ցանկացող եղեալ բաղձանաւք հոգևոր սիրոյ սուրբ գրոցս Այսմաւուրացս, ես՝ Ամիրս ետոյ ստացայ զսայ հալալ ընչից իմոց՝ յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ հաւրն իմոյ Աքանիսին և մաւրն իմոյ Սիմիկին, և հարազատ եղբարցն իմոց Ամիր-Սարգսին, Մկրտչին և Մարտիրոսին...*, և յետ աւարտմանն յանուանցս՝ Նորաբողբոջ, - դեռաբուսիկ և սիրասնունդ որդոցս մերոց՝ Վրթանէս սարկաւագին և Գալուստ սարկաւագին...։

Ի թվաբերութիւնս Հայոց ՋԻԷ. (1478), արանց ի ԻԸ. (28)։ Ի սմին ժամանակի եկն Հասան պարոն ի Վրացտունն և քակեաց, և բազումս սրով կոտորեաց, և աւէրս էած, և քառասուն հազար անձն գերեաց. և զտառապանքս սոցա ո՞ կարէ գրով արկանել։ Բազումս եկ[եղ]եցիք քակեցին, զխաչ և զգիրգ կորուցին, զայլ անաւթ եկեղեցու։ Եւ ինքն չարայ-չար մահուամբ սատակեցաւ, որպէս մանկակոտորն Հերովդէս անիծեալն։

Որք հանդիպիք ի սմայ կարդալով, կամ տեսանելով, կամ աւրինակելով, զգրիչս յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր, և աստուած զձեզ յիշէ...։

## 539

### Շ Ա Ր Ա Կ Ն Ո Ց

ՀԱ, 1940, սյուն. 209

գրիչ՝ Գրիգոր Բերկրեցի

վայր՝ Բերկրի, Արգելան վանք

Աւարտեցաւ... Շարակնոցս ի թուականութեանս Հայոց Ջ. և ԻԷ. (1478), յերկիրս Տարբերունի, ի սուրբ և յաստուածաբնակ մենաստանիս յԱրգելան, որ է հանդէպ քաղաքիս Բերկրոյ, ձեռամբ... սխալագիր գրչի Գրիգորի Բերկրեցւոյ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի տաճարիս, և սուրբ Կարապետի, և սուրբ Յարութեան, և հրաշալի սուրբ գերեզմանին տէր Յուսկան որդւոյ, և սքանչելագործ Կարմիրակն սուրբ Նշանի, և յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Յովհաննէս հեզահոգի արհեպիսկոպոսի, և երջանիկ և արի աստուածաբան Մկրտիչ վարդապետի՝ հարազատի իմոյ,

---

* Հիշատակվում են Ամիրի և նրա եղբայրների բազմաքանակ որդիների ու դուստրերի, թոռների և այլ ազգականների անունները։

ի հայրապետութեան տեառն Յովհաննէսի և տեառն Սարգսի արհիեպիսկոպոսի Եզնկացւոյ, որ ընդ ձեռամբ իւրով գրաւեալ ունի զկաթ-ղիկոսարանն և մեծ արիութիւնս արար ազատելով զգերիսն Վրացտանի Հասանպէկին, որ յայսմ ամի եղև, այլ և յայսմ աւուրքս Օղուրլու որդի Հասանբէկին ի զաւրացն հաւրն, այլ ոչ հրամանաւ նորա ///

Յիշեցէք զԳրիգոր գծողս, և զծնողս իմ զԱթաբէկ և զՍայշըհան, և զպսակ գլխոյ իմոյ՝ զհարազատն զՄկրտիչ աստուածաբան, և զուսուցիչն իմ զարի և զքաջ վարդապետն զՄկրտիչ...:

540

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Արձագանք», 1868, № 12, էջ 162 163, «Արցախ» էջ 344,
«Այրարատ» էջ 187, 274

գրիչ՝ Գրիգոր եպիսկոպոս
վայր՝ Բշնի

...Արդ, ես յետինս ի կրամաւորաց և անարժանս ի մանգանց եկեղեցւոյ Գրիգոր եպիսկոպոս Բջնոյ՝ տեսի զսէր և զփափագ պատրոն Վարապետին (") և ամուսնոյն Մելիքին, զոր ունէին առ հոգևորսն, և անընդունակ գոլով յարուեստ գրչութեան, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին՝ յանձն առի և բազում աշխատութեամբ և տառապանաւք գծագրեցի զսա մեղսամած մատամբ իմով ի յաստուածաբնակ և յանառիկ դղեակս Բջնի, ընդ հովանեաւ երկնանման աթոռոյ սուրբ Աստուածածնիս, ի հայրապետութեան տեառն Սարգսի Հայոց վերադիտողի, ի թուաբերութեանս Հայոց ՋԻԷ. (1478)։ Եւ արդ, յերես անգեալ աղաչեմք զսրբութիւնդ ձեր, սուրբ ընթերցողք հարք և եղբարք, յիշել զգրող սորայ զԳրիգոր եպիսկոպոս, և զծնողսն իմ՝ զհայրն իմ զՀասան-Բուղա և զմայրն իմ Թամթա-Խաթունն, և զամենայն ննջեցեալքն իմ, և զհամշիրաք եղբարքս իմ՝ զտէր Սարգիս, և զտէր Յոհանէս, և զտէր Յորդանան, որ յոյժ աշխատեցան ի կոկել սորա...։

Եւ արդ, ես՝ Պատրոնս և ամուսին իմ Մելիք-Խաթուն ստացաք զսուրբ Աւետարանս ի յարդար վաստակոց մերոց, և տուաք զսա ընծայ ի գուռն սուրբ Ամենափրկչին Աշտարակու, և սուրբ Մարիանին, և սուրբ Կարմրաւորին*, ի վայելումն մանկանց սոցա...։

Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսուրբ Աւետարանս ի յԱշտարակու ի դրա /// սուրբ Ամենափրկչին և սուրբ վանորէացս ծախելով և կամ խորհրդով, եթէ ոք յանդգնի՝ մեր մեղացն պարտական լիցի յաւուրն դատաստանի։

Եւ ես Գրիգոր եպիսկոպոս Աշտարակեցի՝ նստելով եպիսկոպոս իմ ի սուրբ յաթոռս ԺԷ. (17) ամ և Զ. (6) ամիս, դրեցի զսուրբ Աւետարանս ի դուռն աթոռոյ Աստուածածնիս, որք կարդայք աստուած-ողորմի ասէք մեղուցեալ հոգւոյ իմոյ...։

---

*«Արձագանք»-ում տված է «Կամրբաւոնին»։ «Արցախ»-ում՝ «Կամրբաւորէին»։

## 541

### ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 942

գրիչ՝ Դաւիթ
վայր՝ Վայոց-ձոր, Սրկղունք

ա

189ա ...*Սկսեալ եղև և աւարտեալ այս սուրբ կտակս ի դառն և ի նեղ ժամանակի, զոր տատանեալ կամք ի յանաւրինաց, զի սէրն և գութն բարձեալ է ի միմեանց, և հարք զորդիս իւրեանց կամին կորուսանել, և որդիք զհարս, և եղբայրք զեղբայրս։ Զոր խնամքն արարչական և գութն հայրական պահեսցէ անսասան զհաւատացեալքս իւր յայս մարդադաւան ժամանակէս, ամէն։*

*Գծագրեալ եղև այս սուրբ մատեանս որ կոչի Ճառընտիր, զոր ընտրեալ և հաւաքեալ է սուրբ վարդապետաց և եդեալ ի մի տուփ Յոհան Ոսկեբերանի, Յոհան Մանդակունեցոյ, Սարգիս Շնորհալից վարդապետի, Զաքարիայ Հայոց կաթողիկոսի, զոր սահմանեալ են և եդեալ ի պայծառութիւն և ի զարդ աղուհացից պահոցն և սուրբ յարութեանն, և ի սգաստութիւն հոգեկիր արանց։*

Եղև օարտ գրգոյս* *ի թվիս Հայոց ՋԻԷ. (1478), և ի ղանութեան* Յայղուպ-պէկին, *որդոյ Հասան-բէկին, թոռինն* Աւթմնայ, *զոր յայսմ ամի էսպան զեղբայրն իւր զ*Սուլտան-Խալիլն *և էառ զաւթանութիւնն։ Եւ ի յաթոռակալութեանն Վաղարշապատու տէր* Սարգիս *կաթողիկոսի և մերում նահանգի եպիսկոպոսութեան տէր* Յոհանիս<իս>ի *և տէր* Եղիշէի՝ *հոգևոր եղբարց։*

189բ *Եւ էառ զգրաւ ձեռամբ խեղագար և փցուն գրչի* Դաւիթ *անարժան և մեղսամակարթ իրիցի, որ միայն զանունս ունիմ և ոչ զգործս. ի յերկիրս* Վայի-ձորոյ, *ի գեաւղս որ կոչի* Սրկղունս, *ընդ հովանեաւ սուրբ Գէորգի և սուրբ Յակոբի և այլ սուրբ Նշանացս, որ աստ կան։ Արդ ոտս առհաւան և բանիբուն* Աւագտէր *վարդապետի՝ հաւրեղբաւրս մերոյ, և եղբաւրս իմոց տէր* Զաքարայ *աբեղային, և տէր* Աբրահամ *ծաղկողին, որ է փարթամ շնորհաւք ի լին, և* Ակոբ *միակեցին, և* Նահապետ *աբեղային, և հաւրն իմ* Տէրտէր *միակեցին, և* Աղաճան *և* Ղուկաս *և* Աթանաս *և* Աղալբէկ *դպրացս, որ են ի յանապատն* Բոլորաբերդոյ, *առ դուռն սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, և Կիւրղի սուրբ աջոյն, որք աստուածաւէր և միաբան պահեսցէ ղնոսա տէր, ամէն*, *և* զՕգեկիէլ *ընկերակցի իմոյ, և այլ եղբարցս։ Եւ ստացեալ զանառիկ և զհոգէնուագ երգարանս՝ գովեալն յամենայն լեզուաց, սուրբ և ընտիր, ժրաջան և*

---

* Ընդգծվածը գրված է կարմիր թանաքով՝ լուսանցքում։ Այդ առթիվ գրիչը ներքին լուսանցքում գրել է այսպիսի ծանոթագրություն. «Մ՛ի եղբայր, գայս կարմիր գիրս, որ գրած է, թէ գիտի՝ կարդա, թէ չէ՝ թող որ կենա։ Իմ միաբս հէնց էրեր գու- թէ չէ դու քո բառովդ կարդայ ու աստուած ողորմի էլ ասայ»։

** Գրված է տողից վերև՝ կարմիր թանաքով։

միշտ ի պաշտամն, գրգասէրն և հրեշտականմանն տէր Սարգիս ճգնաւոր և մահդասին կրօնօոր և աբեղայն խոյրաբարձ և վակասաւորն՝ յիշատակ իւր, և ծնօղացն՝ հաւրն Ջաֆարին և մաւրն Դաւնգիշին, և եղբարցն էտկարին, Ջաֆիկին, Ասպաճանշին, Ամիրխասին, և Դաւիթ սարկաւագին, և Ստեփանոսին, և այլ ամենայն արեան մերձաւորացն, յիշատակ անշինջ և գանձ անկողոպտելի, լսելով զայն որ ասէ,
490ա ‖թէ՝ Որանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընտանի Երուսաղէմ, զոր տէր աստուած վայելել տացէ նոցա մինչ ի խորին ծերութիւնն, ամէն։

Եւ դարձեալ, յիշեսջիք յաղաւթս զհոգևոր եղբայր տէր Սարգսին, զՄեսրոբ աբեղայն, զԿարապետն, զհոգևոր հայր Շատիկն, զԴիլշատ քոյրն, և զայլսն ամենայն, ամէն։

Եւ ես անարժան Դօիթ գրիչս, որ հող եմ և մոխիր ոտից ձերոց, կրկին անգամ աղաչեմ, զի յիշեսջիք ՚ի մաքրափայլ և ի մեղսաքաւիչ յաղօթս ձեր զստացաւղ գրոյս զտէր Սարգիսն, և զիս՝ զանպիտան գրչակս՝ զԴաւիթ էրէց, և զհայրն մի զՏէրաէր, և զմայրն իմ զԳոնցայ՝ փոխեցեալն առ Քրիստոս, և զեղբայրքն իմ՝ զվերոյդրեալքն, և զՄարգարայ, և զորդիքս* մեր՝ զԱլեքսանոս և զՅոհանէս, և զայլ ամենայն արեան մերձաւորսն իմ, և զկենակիցն իմ զՓաշա-Խաթունն, որ բազում աշխատութեամբ ծառայել է մեզ սպասաւորութեամբ, և զայլ աշխատաւորսն, որ ի վերայ մեզ երախտիք և աշխատանք ունին, ամէն։

Եւ դուք, ո՛վ պատուական յիշատակող եղբայրք, եթէ կարդօորք և թէ յաշխարհական, որք հանդիպիք այսմ սուրբ գրոյս կարդալով, կամ աւրինակելով, և կամ զհրամանք սորայ լսելով՝ ասասջիք ի խորոց սրտէ, թէ՝ Տէր աստուած ողորմի նոցա։ Եւ աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս, առհասարակ, ողորմեսցի, և նմա փառք անզրաւ յաւիտեանս յաւիտենիւ, ամէն։ Եւ սղալանաց և խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր։

Բ

52ա ...Ողորմեա ստացողի սուրբ գրոցս Սարգիս աբեղային, և ծնօղացն իւրոց, և Կարապետ միակեցին, որ մեզ ճաշ երեր զայծն, և ինձ՝ Դօիթ գծողի, և իմ ծնողացն, կարդացողաց և լսողաց, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։

Գ

217ա Տէր և աստուած, դու լեր իմ յոյս,
Ի յաւագի հինգշաբաթոյս,
Որ էր թվական ՋԻԷ. (1478)-ոյս.
Որ էր զատիկ Հայոց ազգոյս.
Ոխտս խիստ ցուրտ և չոր տարոյս,
Ի զանութեան նոր փաթշահոյս՝
Խալիլ-Սուլտանն նստեալ այժմուս,
Ահաբեկեալ ի Վրացոյս**։

* Կարմիր թանաքով «զորդիքս մեր»-ի վերև գրված է «եակս իմ», այսինքն «որդեակքս իմ»(*)։

** Այս հիշատակագրությունը, անշուշտ, գրված է գլխավոր հիշատակարանից մի քանի ամիս առաջ, որովհետև որպես շահ այստեղ նշված է Սուլթան-Խալիլի անունը;

Դ

316ա *Քրիստոս աստուած ողորմի պարոն* Դուլգունին, *որ մեզ նոր կարասէ գինի էր աղարկել մին գաւ։*

## 542

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Նոր-Ջուղա 419, Մ.Տ.Մ.*

*գրիչ՝* Երեմիայ
*վայր՝* Հերմոնի վանք

359բ *...Աւարտեցաւ Աւետարանս ի յանապատիս* Հերմոնի վանիցս, *ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչիս և սուրբ Յակովբի և այլ ամենայն սրբոց եկեղեցեաց։ Այլ և ստացող սուրբ Աւետարանիս* Յակոբ *վարդապետ [յետինս] ի բանասիրաց, որ անուամբս եմ և գործով հեռի ստացա զսա յիշատակ հոգոյ իմոյ, և ծնաւղաց իմոց* Դալաթշին, *և մաւր իմոյ* Խարխաթունին, *և* Մելիքին, *և* Նիգարին, *և հոգևոր հօրն* Աստուածատուր *տնտեսին, և շնորհեցի աշակերտին իմոյ՝* Մկրտիչ *քահանային և* Յովանիսին, *յիշատակ հօր* Դանիէլին *և մաւրն* Թանկսուլին, *ի վայելս անձին։*

*Այլ և յիշեցէք զքուերք նորա* զՀոիփսիմէն, զԴիլշատ, զՄարթայ, զԵղիլշէն, զԹումաշէն, զԲեշկենն, *և զամենայն արեան մերձաւորք...։*

*Արդ, գրեցաւ սայ ձեռամբ* Երեմիայի *սուտ անուամբ աբեղայի, որ եմ յետնեալ ամենայնի. ի թվին ՋԻԷ. (1478)։*

## 543

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան 6125*

*գրիչ՝* Մկրտիչ
*վայր՝* Տաշրա գաւառ, Յոհան Ուձնեցու ուխտ

*Փառք... որ ետ կարողութիւն ոգոյ և մեղսաներկ անձին* Մկրտիչ
*եպիսկոպոսի հասանել յաւարտ սուրբ գրոցս, որ կոչի Շարակնոց։ Զոր*
327բ *նախ||նիքն մեր և աստուածաբանքն ուղղափառ վարդապետքն եկե-*
*ղեցւոյ երգեալ են աւանդակութեամբ հոգոյն սրբոյ, առ ի պայծառու-*
*թիւն եկեղեցւոյ և ի կրթութիւն մանկանց Սիովնի և յիշատակութիւն սըր-*
*բոցն աստուծոյ և պատիւ տէրունական տաւնից, և մաղթանք, աղաւթք և*
*երգք հոգևորք։*

*Որ եղև աւարտ սորա ի թվականիս Հայոց ինն հարիւրի և Իէ. յամելորդի (1478), ի գաւառիս* Տաշրա, *ի սուրբ ուխտս Յոհաննու Ուձնեցո, առ ոտս երջանիկ և սրբամաքուր և հեզահոգի րաբունոյ* Սարգիս *վարդապետի, ի հայրապետութեան տեառն* Սարգիս *կաթողիկոսի ի* Վաղարշապատ *քաղաքի, ի խնդրոյ սրբազան և առաքելաշնորհ արհիեպիսկոպոսի և բանի խնդրողի տէր* Յորդանան *վարդապետի՝ սիրասնունդ աշակերտի տիեզերալոյս և քաջ րաբունապետի տանս Արևելեան* Դանիէլի *մեծի հռետորի։ Եւ սրբասնեալ և սրբազնամաքուր. արհիեպիսկոպոսս և վար-*

դապետս տէր Յորդանան է տեսուչ և վերադիտող մեծի արհիական նա-
328ա հանդիհն Եւ[[ըստաթէի, որ կոչի Սիւնեաց։ Զոր և ետ դրել ըղսա յիշատակ
իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւր իւրոյ Շմաւոնի և մաւրն Խութլու-Խաթու-
նի, և եղբարցն Յովանէս երիցու և Յոհանիսի, և եղբաւրորդոցն Եզե-
կիէլի, Դանիէլի, Շմաւոնի և Գեղամի՝ դպրացն և այլ ամենայն արեան
մերձաւորաց մերոց՝ կենդանեաց և հանգուցելոց ի Քրիստոս։ Եթէ ոք
հանդիպիք սմա տեսանելով, կարդալով և կամ աւրինակելով յիշեսջիք ի
մաքրափայլ յաղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ յիւր միաանգամ գա-
լըստեանն իւրոյ, ամէն, եղիցի, եղիցի։

## 544

## ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 9222, խզ

գրիչ՝ Մանուէլ
վայր՝ Կուֆի գիւղ

4ա ...Աստանաւր յանկ ելեալ կատարեցաւ քաղցր երգարանս Գանձա-
րան ի դառն և ի նեղ ժամանակիս, որ յանաւրինաց հալածիմք ի հար-
կապահանջութիւն և ի բազում տրտմութիւն, և ղքրիստոնեայքս յերեր-
մանի կու պահեն և ի տարտարոս. եւ մեք յուսալով յողորմութիւնն աս-
տուծոյ, զի նա փրրկեսցէ ղմեզ ի յանաւրինաց և յամենայն փորձանաց,
ամէն։
4բ Արդ, գրեցաւ սուրբ Գանձարանս ի դեաւղս որ կոչի Կուֆի, ընդ հո-
վանեաւ սուրբ Հազարաբիւրացս, և սուրբ Գրիգորիս, և սուրբ Նշանիս,
և ամենայն սրբոց նահատակացս, որ աստ կան հաւաքեալ, ի թւակա-
նիս մերում Ջ. և ԻԷ. (1478)...։
Գրեցաւ սուրբ Գանձարանս ձեռամբ յոգնամեղ և մատնադետեւ գրչի
Մանուէլի եղկելի և սուտանուն քահանայի, որ գործովս եմ խիստ յոռի,
անուամբ միայն քահանայի։ Որ մեծաւ աշխատութեամբ դրեցի զսա
ի խնդրոյ Ըռուզբէկին, որոյ ցանկացող եղեալ յայս սուրբ տառիս, և ինքն
փոխեցաւ ի Քրիստոս՝ յոյսն ամենայնի, և յանձն արարեալ կենակցին
իւրոյ Ասուզանին և դըստերն իւր Սալթան-Մէլիքին, և թոռանցն իւրոյ
Սաթիբեկին, որ և նոքա յոյժ փափաքանաւք ետուն դրել զԳանձարանս
յիշատակ բարիհաւատ Ըռուղբէկ պզընձգործին, և կենակցի իւրոյ Ասու-
զանին, և փեսային իւրոյ Հազարբէկին, և դստերն իւր Սալթան-Մէլի-
քին, և իւր որդոցն՝ Սաթիբէկին, [Յակոբին, Անտիբէկին]*, և ծնօղաց
իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց իւրոց՝ մեծի և փոքու, և ետուն
ընծայ Ագուլեաց միջի թաղի եկեղեցեացն [սուրբ Սիոնին, սուրբ Յակո-
բին]*։
5ա [Արդ, աղա]չեմ ձեզ, ո՜վ սուրբ մանկունք եկ[եղեցւոյ], որք երգէք և
կամ օրինակէք [սո՜ւրբ բեր]անով աստուած ողորմի ասացէք ստաց[աւղի
ս]որա Ըռուզբէկին, Ասուզանին, [Հազ]արբէկին, Սալթան-Մէլիքին և

* Այս անունները լրացված են այլ ձեռագրով։

իւր զաւակացն. և ինձ՝ մեղապարտ գրչի Մանէլի, և զծնաւղսն իմ յիշեցէք ի Քրիստոս՝ զՊետրոս քահանայն և զԱլամշատն, և զկողակիցն իմ, և զզաւակսն իմ, և զամենայն արեան մերձաւորսն մեր...։

Եւ զԱրդունշէն յիշեցէք ի Քրիստոս՝ զօրինակի տէրն, և զտէր Բարսէղ քահանայն, որ զօրինակս շնորհեցին, և աստուած զձեզ յիշէ, ամէն*։

## 545
## ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր-Ջուղա 527, Մ.Տ.Մ., և Մ.Տ.Ա.

գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Աղթամար

217ա ...Արդ, ես Դուրդանէս և քոյրն իմ Շահզադէն ստացանք զսուրբ Աւետարանս ի հալալ և յարդար վաստակոց իւրեանց յիշատակ իւրեանց, և ծնօղաց նոցին՝ հաւրն Աբդըլմսեհին, և մաւրն Դովլաթ-խաթունին, և պապկանն Ստեփանոսի, և որդոցն Գուռջիբէկին, Աւետիսին և Աղբ կին, և քուերն Շահզադին, և որդոց նոցին Ամիրմէլիքին և Ազնաւուրին...։ Այլ և գծագրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ի ԹԾ և ԻԷ. (1478), ի յաստուածապահ կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Սարգիս զաւրավարիս, ի հայրապետութեան տեառն Ստեփանոս կաթուղիկոսի, ի գառն և ի նեղութեան ժամանակիս, որ երկիր ամենայն երերեալ կայ և տատանեալ ի ձեռաց անօրէն ազգին նետողաց, վասն ծովացեալ մեղաց մերոց։ Այլ և զիս [յիշեցէք]՝ զյետինս ի կարգս կրաւնաւորաց և զառաջինս ի դասս մեղաւորաց՝ զմեռօք մեռեալ գծողս զՀայրապետ, և զծնօղսն իմ զԽաչատուր և զՈսկէտիկինն, և երախտաւոր քեռոյն իմոյ Մինասենց Թումայ աբեղային, և եղբօրն իմոյ Յոհանիսին, և կենակցին իւրոյ, և եղբօրորդոյն իմոյ Կարապետի՝ ծաղկողի սուրբ Աւետարանիս...։

Դարձեալ, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս՝ զբարեպաշտ կինն զԴուրդանէն, և զհաւրեղբայրն իւր զԱմիրմուսէն, և զնորին կենակիցն՝ զԹուրվանդէն, և զորդիքն զՄելիքզադէն և զԱմիրմուսէն, և զդստերքն զԲէկին և զՂրիմ-խաթունն** և զՏայուս-խաթունն...։

## 546
## ԱՒԵՏԱՐԱՆ

ԼԾՎ 199, սյուն. 483—486, Շատախի եկեղեցի

գրիչ՝ Մխիթար
վայր՝ Բռնաշէն

Փառք... ուստի և տեսեալ զսորա անճառ փրկագործութեան խորհուրդ ումն ի լուսազարմից Խօսրով անուն, որ ցանկայր ի վաղուց հետէ այսմ

* Ձեռագիրը, որից անջատված է այս հիշատակարանը, պատկանել է Խ. Դադյանին, և նկարագրվել նրան պատկանած ձեռագրերի ցուցակում № 24-ի տակ (տե՛ս Հ. Թոփճեան, Ցուցակ ձեռագրաց Խաչիկ վարդապետի Դադեան, մասն Ա., Վաղարշապատ, 1898, էջ 30)։
** Մ. Տ. Ա. «զՂիրիմ-Խաթունն»։

աստուածախաւս սուրբ Աւետարանիս, և ետ գրել զսա ի յիշատակ հոգոյ իւրոյ, ի մեծ թուականիս Հայոց ՋԻԷ. (1478), ի կաթողիկոսութեան հայկազ[ե]ան սեռիս՝ տէր Ստեփանոսի Աղթամարայ, և ի մերոյս նախանգիս՝ <մերոյ> տէր Ղազար եպիսկոպոսի, զոր տէր աստուածն Իսրայէլի պահեսցէ անսասան զաթոռ հայրապետական և թագաւորական մերոյ ազգին։

Եւ արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի գեաւղս, որ կոչի Բռնաշէն, ընդ հովանեաւ սուրբ Քրիստափորի զաւրավարին։ Այլ և գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Մխիթար քահանայի՝ անարժան և տխմար գրչի։ Եւ իմ անընդունակ դոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին սուրբ, բազում աշխատասիրեալ իմ ի սմայ գրեցի անարժան ձեռօք իմովք զսուրբ Աւետարանս յիշատակ Խոսրովին, և ծնողացն իւրոց Կարապետին [և] Խէրէֆին, և կողակցին իւր Մարգարտին, և զաւակացն իւրոց Մարտիրոսին, և կողակցին իւրոյ Խոնցա-Հաթունին, որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս և սուգ մեծ եթող սիրելեացն իւրոց և շատ որբեր մնացին, ...և աստուած-ողորմի ասացէք Խոնցա-Հաթունին, ամէն, և իւր զաւակին՝ Թարճանին, և Կարապետին, և Հայրապետին, և Ալամշահին, և Ջանմէլիքին, և միւս զաւակին՝ Սանակին, և կողակցին իւրոյ Մրուատին, և զաւակին իւրոյ Թումային, և Հայրապետին, և ամուսնին Խելաւֆին, Խոսրովու, և դստերն Հռիփսիմին, և զաւակին իւրոյ Խելաւֆին, և միւս դստերն Խանթութին, և զաւակին իւրոյ Խոստեղին, և Սաւաթին, և Յակոբսին, փեսային Վարդաշահին, ամէն։ Եւ ամենայն արեան մերձաւորս Խոսրովին, առհասարակ, յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով աստուած-ողորմի ասացէք, և աստուած, որ առատն է ի տուրս բարեաց ձեզ և մեզ ողորմեսցի, առհասարակ, ամէն։

Եւ արդ, ես՝ [յ]երես տնկեալ աղաչեմ զձեզ, ո՛վ մանկունք Սիոնի, յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զանարժան և զմեղապարտ գրիչս զՄխիթար քահանայ, և ծնողս իմ Յովհաննէս քահանայ և զՄարթայ, զաւակս մեր զՅովհաննէս քահանայ, որ կազմեաց զսա, և զԱռաքէլ քահանայն, որ ծաղկազարդեալ պայծառացոյց զսա։ Տէր աստուած պահեսցէ զնոսա անսասան, ամէն։ Եւ զՄկրտիչն, և զԿարապետն, և զՄովսէս սարկաւագն, և զամենայն արեան մերձաւորսն մեր, առհասարակ, յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ և ողորմեսցի ի յիւր միւսանգամ գալըստեանն, ամէն։

Դարձեալ, կրկին մաղթանաւք աղաչեմ զձեզ յիշեցէք ի Քրիստոս զստացող սուրբ Աւետարանիս զԽոսրովն, և զծնողսն իւր Կարապետն, Խերեֆին, և զկողակիցն իւր զՄարգարիտն, և զաւակս իւր զՄարտիրոսն, և զՍանակն, և զՀանըութն, և Ամաւեին, և իւր որդոյն Հայրապետին, Ամիր-Ամադն, Փողփուչին, և մաւր Խելաւֆին։ Աստուած-ողորմի ասացէք սոցա և աստուած ձեզ ողորմի, ամէն։ Ով ոք յանդգնի կամ ծախէ, կամ գրաւ դնէ, կամ անօրինացն մատնի, թէ մերոց և թէ աւտարաց՝ նա զմասն Յուդայի առցէ և զանէծս Կայենի առցէ, ամէն, ամէն։

## 547

### ՇԱՐԱԿՆՈՑ

ՔՑԲ № 38, էջ 30

գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Իշմայի վանք

322բ ...Ցամի ինն հարիւրերորդի և ԻԷ. յաւելորդի թվականութեանս Հայոց (1478) գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի Շարակնոց, ձեռամբ Գրիգոր լոկ անուն աբեղայի, ի մեծափառ վանքս, որ Իշմայի վանք կոչի, ընդ հովանեաւ Ապտըլմսեհ նահատակին և սուրբ Կարապետի տաճարին... ի յառաջնորդութեան վանացս Գրիգոր րաբունապետի, ի հայրապետութեան տեառն Սարգսի...։

## 548

### ՇԱՐԱԿՆՈՑ

«Միաբանք և այցելուք Երուսաղէմի», էջ 401—403

գրիչ՝ Նիկողայոս
վայր՝ Պաւնտոս քաղաք (Տրապիզոն)

Ի թվ. ՋԻԷ. (1478) ի սուրբ Երուսաղէմ սկսեալ, և ապա եկեալ ի հըռչակաւոր մենաստանն, որ կոչի Աւագ վանք, և անդ փոքր մի գրեալ, և ապա անտի, վասն ահին ժանտաբարոյ Ջիթախին, եկաք ի քաղաքս մեր Պաւնտոս, ընդ հովանեաւ Ամենափրկչին, և սուրբ Կարապետին, և սուրբ Խաչին, և է անապատ կրօնաւորաց։ Եւ իմ անդ եղեալ կրեցի բազում վիշտս...։

## 549

### ԳԱՆՁԱՐԱՆ

«Լոյս», 1905 թ., էջ 969

գրիչ՝ Յովան
վայր՝ Տովք

...Գրեցաւ սուրբ Գանձարանս ի Տովքս, ի դուռն սուրբ Նշանիս, ի թուականիս... ՋԻԷ. (1478), ձեռամբ յոքնամեղ և մատնդիդ (՞) Յովան սուտանուն էրիցուս...։ Յիշեսջիք յաղաւթս ձեր զիս և զծնողսն իմ Մուրադ և զԴալնաք*, և զորդիս իմ խաչատուր՝ փոխեցաւ Քրիստոս, և Սառայն, զՅոհան, Մարգար երէց, որ զաւրինակն ետուր. ապա աղաչեմ զձեզ, որ խոշորութեան և սխալանաց մի մեղադրէք, զի կար մեր այսչափ էր։

* Թերևս ուղղելի՝ «Դաւլաթ»։

## 550
## ԱՒԵՏԱՐԱՆ
ՄՑՀ հա. Ա, 48, էջ 96—97

գրիչ՝ Մելքիսէթ
վայր՝ Հալապ

ա

524ա ...Արդ, տեսեալ և իմացեալ զսորա անճառելի աւետիքն և զամենեցուն փրկագործութեան խորհուրդ, ամէնաւրհնեալն և հոգեացեալն ի գործս ամենայն բարութեան և իմաստուն... պարոն Ֆարաճն, և ստացաւ զսա յիշատակ բարի հոգոյ իւրոյ, և բարեպաշտ ծնաւղացն հաւրն Աստուածատուր մաղդասուն և մաւրն մաղդասի Ֆիմոցին, և հարազատ եղբարցն Յոհաննիսին, Սիմէոնին, Կարապետին, Դանիէլին, և քուերցն Շամէ-խաթունին, Շնոհոտր /// և Դաւճարին։ Արդ, որք հանդիպիք և վայելէք յաստուածայ[ին] /// լի բերանով աստուած-ողորմի ասացէք ստացաւղի սուրբ Աւետարանիս՝ աստուածասէր և բարեպաշտ պարոն Ֆարաճին և որդւոյ իւրոյ Աբրամ սարկաւագին։

Եւ արդ, ես՝ յետինս ի կարգաւորաց և անպիտանս և անարգս ի գիրս գրչութեան Մելքիսեթ կրօնաւոր, որ զանունս [ունիմ] և գործս ոչ, շնորհաւք տեառն սկսայ և ողորմութեամբն աստուծոյ կատարեցի ղտէրունեան սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց ՋԻԷ. (1478) ամին, ի մայրաքաղաքս Հալապ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սուրբ Նշխարացս, որ աստ կան հանգեալ։ Վասն որոյ ուղիղ սրտիւ և լի բերանով աստուած-ողորմի ասացէք ստացողի սուրբ Աւետարանիս Ֆարաճին, և որդւոյն Աբրահամ սարկաւագին, և ծնօղացն մաղդասի Աստուածատրուն և Ֆիմոցին, և ինձ անարժանիս Մելքիսէթ գրչի, և ուսուցչին իմոյ Մկ[րտի]չ վարդապետին, և մարմնաւոր ծնօղաց իմոց՝ հաւրն իմոյ Ղազարին և մօրն Ոսկինատին, և հօրեղբօրն իմոյ Ստեփանոս կրօնաւորին, և քուեր իմոյ Ասանէքին:

Դարձեալ, կրկին աղաչեմ զմանկունս սուրբ եկեղցոյ, որք հանդիպիք սմա աստուած-ողորմի ասացէք Ֆարաճին, կենակցին իւրոյ Ղարիպ-խաթունին, և ինձ անարժան Մելքիսէթ գրչի, ամէն։

Եւ խոշորութեան և սխալանաց գրիս մի մեղադրէք, զի այդչափ էր կար մեր։ Եւ առաւել յիշման արժանի առնել ըզՖարաճն, և զմիա կենակիցն իւր զխաթունն, և զծաղկեալ զաւակն իւրեանց զԱստուածատուր և Ջաֆարէն, և զիռայիս Պետրոսն, և զիւր որդիքն զՖարաճն և զԱպանորն և զԱպուլան:

բ

529բ /// Ես Մուղալս... որդին Ֆարաճիս եդիր զայս սուրբ Աւետարանս ի դուռն սուրբ Աստուածածնայ յիշատակ իմ հոգուս, որ ոչ որդի և ոչ եղբայր և քոյր զիմ յիշատակս առնէ. ով որ դիմադարձ լինի ու առնու ու ծախէ՝ նայ զՅուդայի պատիժ առնիցէ, ազգայինին (*) անէծք, աստուած ողորմի ասացէք, ամէն։

գ

ՋԿարապետ Բերկրցի նկարո[ղ]ս յիշեցէք ի Քրիստոս։

551

ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր-Ջուղա 561, Մ.Տ.Մ.

կազմող՝ Ազարիա

162բ ...Արդ, և ես՝ Սարգիս քահանայս, առի զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իմոց՝ յիշատակ ինձ, և ծընաւղաց իմոց՝ հաւր իմոյ Ներսէսին և մաւր իմոյ Խոնծին. և եղբարցն իմոց Դաւթին և Քանմանին և Ջապար-

բուին(՞), և քուերացն իմոց Աչամարին, Շահիսլիմին, Զատամին, և եղբայրորդոցն իմոց Հայկազին, և Ստեփանոսին, Դաւրկին, Թարխանին և Բարսղին, և դըստերն իմոյ Դիլշաին, և ամենայն յարեան մերձաւորացըն։ Զոր և աստուած վայելել տացէ մինչև խորին ծերութիւն, ամէն։

Ի թվ[ական]իս Հայոց ՋԻԷ. (1478)։

Այլ և զվերջին կազմող սուրբ Աւետարանիս զԱզարիայ սուտանուն քահանայ յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր և աստուած զձեզ յիշէ, ամէն։

552

ԳԻՐՔ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ

Վիեն. 338, Տաշ. ցուց., էջ 785

գրիչ՝ Յակոբ

48ա Զստացող սուրբ գրոցս զտէր Յովանէս եպիսկոպոսն և զգծող սորին զՅակոբ քահանայս յիշեսջիք ի Քրիստոս, ո՛վ բարեմիտ կարդացողք և հաւատարիմ և իմաստուն լսողք...

Գրեցաւ ի թվ. ՋԻԷ. (1478), ի փառս։

## 553

### *ՇԱՐԱԿՆՈՑ*

***Երուսաղէմ 2470, Մ.Տ.Մ.***

*գրիչ*՝ Մելքիսէթ
*վայր*՝ Առեստ գիւղ

*Գրեցաւ ի թվ. ՋԻԸ. (1479), ի յընտիր ալրինակէ առաջին վարժապետին և քաշ քարտուղարին* Գրիգորի *մականուն* Խուլ *կոչեցելոյ, ի յերկիրս* Տարբերունւոյ, *ի գիւղս* Առեստ, *որ կոչի* Բանտումանի, *ընդ հովանեաւ սուրբ տաճարիս Գէորգեայ և Անտոնի և հրաշագործ Գետարգելի սուրբ նշանի։ Եւ կէսն դրեալ եղև ի յԸնծանի(՞), ընդ հովանեալ սուրբ Աստուածածին տիրամօր լուսոյ, և սուրբ Առաքելոյս Թադէոսիս, քանզի փախեալ էաք ի յանաւրինաց, զի Հասան-բէգն մեռաւ և թագաւորեաց որդին՝* Սօլթան-Խալիլն, *և միւս որդին* Աղուբէկն *յարեաւ բաղում զաւրաւք ի վերայ եղբօրն, և եսպան զնա, և ինքն թագաւորեաց ամենայն աշխարհի. և այժմ գնացեալ է բաղում զօրօք ի յԱրևելս՝ դէմ Չաղաթին, և զոր աստուած կամի՝ այն լինի**։*

## 554

### *ԱԻԵՏԱՐԱՆ*

***Նոր-Ջուղա 413, Մ.Տ.Մ.***

*գրիչ*՝ Յովհաննէս Մանգասարենց
*վայր*՝ Արճէշ

*...Արդ, տեսեալ և իմացեալ զսորա անճառելի աւետիքն և զահագին սպառնալիքն և զամենեցուն փրկագործութեան խորհուրդ՝ ամէնաւրհնեալն և հոգիացեալն ի գործս ամենայն առաքինութեան, իմաստուն և աստուածասէր տղայ* Բաքէն, Յովանէսն, Դաւութն, Գրիգորն: *Եւ ստացաւ զանաոիկ մեծութիւնս և զփարթամ հարստութիւնս՝ զտէրունեան սուրբ Աւետարանս յիշատակ իւրն, և ծնաւղացն իւրոց՝* Միրզին *և հանգուցեալ* Նարինջ-Խաթունին, Թաթառիկին, *և որդիքն հանգուցեալ ի Քրիստոս՝ տէր* Առաքելն, Մելքումն...: *[Յիշեցէք] հաւատարիմ և երանելի* Յովանէսն, *և ծնողաց իւրոց՝* Միրզէն, Խաթունն, *և դուստրն իւր* Մայրիանէն, *և թոռներն իւր սարկաւաք* Յակոբ, Յոհանն, Մկրտիչն, Խանդուտն, Սաբերէն, Սալուարիխանն, Խաւքնարին, *ամէն...։*

---

* *Մ. Տէր-Մովսիսյանը հայտնում է, որ ձեռագիրն ընդօրինակել է Մելքիսեթ քահանան «ի վայելումն տէր* Մկրտիչ *կրաւնաւորի, որդոյ տէր* Ներսէսի *և* Թարբիփշի»:

Եւ արդ, ես՝ անարժանս և անպիտանս ի դասս քահանայից Յովանէս երէց, ոչ ունելով իշխանութիւն ձեռնարկել ի սուրբ Աւետարանս, բայց յուսալով ի ներողութիւնն և ի մարդասիրութիւնն աստուծոյ սկսայ ղսուրբ Աւետարանս և աւարտեցի ի դառն և ի սարսափելի աւուրքս, որ կայ ի միջի մերում սուրն աստուածային և խոցոտէ զանմեղ տղայքս. խոցեալքն մեռանին և այլքն ահաբեկ լինին, լան և տրտմին, ոչ հաց ուտեն և ոչ ջուր ըմպեն։ Եւ խոցեալքն դառն լալով և կաղալով առ մայրն և անկանի ի գիրկս մօրն և ասէ. ո՜վ քաղցրիկ ծնօղ, մեռանելոյ խոցեցայ, թէ ճար գիտես արա, միթէ ոչ բաժանիմ ի ձեզանէ։ Եւ ողորմելի ծնօղն այրւէր, խորովէր, և ճար չգիտէր։ Եւ ապա տղայն թաւալէր և հոգեվարէր, և կռուելով և կանչելով զհոգին հանէր, և լալի և ողորմելի ծնօղքն գոչէին, գոռային և հառաչէին, վա՜յ որդի կանչէին և ուշաթափեալ կենդանոյն մեռանէին։ Եւ ո՞ր լեզու կարէ պատմել զխեղճ մեռանել տղայոցն և զայրել և զխորովել ծնողացն։

Յայն սարսափելի աւուրքս լալոտ աչօք գրեցի սուրբ Աւետարանս։ Եւ է թուական Հայոց ՋԻԸ. (1479), ի հայրապետութիւնն տէր Յովանէս կաթողիկոսի, և է փաթշահ աշխարհիս Եաղուպ–բէկն: Գրեցաւ սուրբ տէրունեան Աւետարանս ի քաղաքս Քաջբերունեաց Արճէս կոչեցելոյ, ի դուռն սուրբ տաճարիս Գէորգեայ զօրավարի և կաթուղիկէ սուրբ Աստուածածնիս։ Վասն որոյ աստուած-ողորմի ասացէք անարժան գրչիս, և ուսուցչին իմոյ Թումա սուրբ րաբունոյն, և ծնօղաց իւրոց, և աշխատողացս ի սպասաւորութիւն մեր զՍւշալի (*) և ծնօղաց նորա, ամէն։

## 555

## ՄԱՇՏՈՑ ԵՒ ԳԱՆՁԱՐԱՆ

**Փիրղ. 6273, էջ 325—326, Եւդոկիոյ**
**ս. Գէորգ եկեղեցի**

գրիչ՝ Զաքարիա
վայր՝ Արճէշ

Գրեցաւ Մաշտոցս և Գանձարանս ի դուռն սուրբ Աստուածածնի յԱրճէշ քաղաքիս, ի ՋԻԸ. (1479) թուականիս, ձեռամբ Զաքարիա քահանայի։

## 556

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Սեբաստիա, ս. Նշան, 33, ՀԱ. 1925, սյուն. 262—263**
**Փիրղ. 6273, էջ 326**

գրիչ՝ Պաւղոս
վայր՝ Մուշ

ա

...Արդ, այսմ անմահական ըմպելւոյ փափագաւղ եղեալ աստուածասէր և ամենայն առհնութեանց արժանաւոր խոճա Յովսէփն, զորոյ և

*զսա ի բաղում ժամանակաց ցանկացող եղեալ այսմ անգիւտ մարգարտիս և ամենագով ափինակիս... հաստատարիմ և ողորմած աղքատաց և տնանկաց, ամենագովելի և մեծաշուքն և իշխան* Տարունոյ *գաւառիս խոճայ* Յովսէփ *եւ գաղափարել զսա ի ձեռն նուաստ և ներգեւեալ ոգւոյ* Պաւղոս *վարդապետի՝ փծուն և անյարմար և ախմար գրչի։*

*Արդ, գրեցաւ սա ի քաղաքս* Մուշ, *ընդ հովանեաւ սուրբ տաճարիս Պաղատի աստուածածնին, ի թվականութեանն Հայոց ՋԻԸ. (1479) ամին, և ի թագաւորութեան* Բոյանդուր *ազգին նետողաց՝* Խաղուպ-խանին, *և ի կաթողիկոսութեան սուրբ էջմիածնի տէրն* Յովհաննիսի *և* Սարգսի։

*Գրեցաւ սա հրամանաւ և ծախիւք խոճա* Յովսէփին, *յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողացն իւրոց՝ հաւրն պարոն* Սէքին *և մաւրն* Դուխտարին, *և կողակցին իւրոյ* Գուլիզարին, *և զաւակին իւրոյ հանգուցելոյն առ Քրիստոս* Անճային, *և ծաղկեալ զաւակի սորին* Շառաւին, *և ամենայն ազգականաց իւրոց՝ կենդանեաց և հանգուցելոց...։*

*Դարձեալ, աղաչեմ յիշատակել յաղաւթս ձեր* զՅովհաննէս *քահանայ, զի աշխատեցաւ ի կոկել թղթին, և աստուած-ողորմի ասել նմա և ծնողացն իւրոց, ամէն։*

*Դարձեալ, աղաչեմ յիշեցէք ի Քրիստոս զհաւրեղբայրորդին իմ դխաւչա* Յովանէսն, *և զծնաւղսն իւր, և զկողակիցն իւր* զՍուլթանն, *և զորդին* զՄելքոն, զՇաղաթն, զԹաղրիվերիզն, զԱղաչան, *և զդուստրն՝* զԽանումն, *և* զՄելքոնէ *կողակիցն* զԹուրանդէն, *և զորդին* զԹարխան, *և զայլ ամենայն մերձաւորքն...։*

Բ

*Ջխաւճա* Յովսէփ *և զծնաւղսն նորա աղաչեմ յիշատակել յաղաւթս ձեր... մանաւանդ և առաւել զուգակցի նորին՝ պարոն* Յովսէփին՝ *խաթուն* Գուլիզարի, *և մաւր* Գուլիզարին՝ Գուհար-Մելիքին, *և ամենայն արեանառու ազգականաց խաւճա* Յովսէփին, *ունելով զսուրբ Աւետարանըս միջնորդ և անբարբառ բարեխաւս առ միածին որդին աստուծոյ, և յիշատակ անջինջ հոգոյն իւրոյ ի սուրբ եկեղեցի։ ՋԻԸ. (1479) գրեցաւ, ի ժամանակս* Պօղոս *վարդապետի։*

## 557

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Փիրզ. 6273, էջ 327, Վան՝ Հաւենց գիւղ*

*գրիչ՝* Յոհաննէս
*վայր՝* Խարբերդ, Սինամուտ գիւղ

*...Արդ, գրեցաւ գիրքս այս ի քաղաքս* Խարբերդ, *յանառիկ գեղակս որ կոչի* Սինամուտ, *ձեռամբ մեղսամած և անարժան ծառայիս աստուծոյ սարկաւագ* Յոհաննէս *գրչի, ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի զօրավարին և որդւոյ նորա Մարտիրոսի, ի թուականութեանս հայկազեան տումարի ՋԻԸ. (1479), ի յամիրութեան ազգին նետողաց, որ ասի* Տուղղատարցի Մելիք-Ասլանին, *ի կաթուղիկոսութեան Վաղարշապատու տէր* Գրիգորի, *և յեպիսկոպոսութեան տէր* Սիմէօնի *և տէր* Դաւթի։

## 558
## ԱՒԵՏԱՐԱՆ
«Բաղբեանդ», էջ 362

գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Աղթամա՞ր

Գրեցաւ տառս ///... ձեռամբ անիմաստ և անարհեստ գրչի Գրիգոր սուտանուն աբեղի, ի խնդրոյ հեզահոգի և դեռաբոյս Առաքել քահանայի, որ ստացաւ զսա ի արդար վաստակոց իւրոց և յիշատակ ծնողաց իւրոց։
/// ոյց գրեցաւ սա ի գաւառս /// և յանապատս /// [Աղթամա՞ր]*, ընդ հովանեաւ ս ///։ Արդ, ես և ս /// վնաս վառեց(՞) ե այլ բազմահաւաք սրբոցս, յեպիսկոպոսութեան տէր Յուսկանս վերադիտողի /// և /// և /// աւ առին, յիշեսցէք և զԿիրակոս աբեղա, որ բազում աշխատեց առ ի թղթիս կոկելն /// և ղիս՝ զանարժանս՝ զԳրիգոր աբեղաս, և զհոգևոր մայրն իմ զՃանիշոր (՞) տնտեսն յիշեցէք ի Քրիստոս...։
Խոշորութեան սխալանաց անմեղադիր լերուք, զի կար մեր այսչափ էր ///

## 559
## ԱՒԵՏԱՐԱՆ
Երևան 9538

գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ Տղա սուրբ Գրիգորի վանք

ա

Գրեցաւ սուրբ Աւետարանս թվ. ՋԻԸ. (1479), ձեռամբ մեղսամակարթ և փծուն գրչի Աստուածատուր կոչեցեալ անարժան երիցու, ի գաւառս ի յԵկեղեաց ի սուրբ մենաստանս, որ կոչի Տղա սուրբ Գրիգոր, որ և տղայացեալն աստուած ի տղա հասակի երևեցաւ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան։
Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով խոշորութեան դրիս և սղալանաց սորա մի՛ մեղադրէք, զի այս էր կար մեր։

բ

Զտարտամս ի բարիս և զարադս ի չարիս զմեղապարտ գծողս զԱստուածատուր յիշեցէք ի Քրիստոս միով տէր ողորմայիւ։

## 560
## ԱՂՕԹԱՄԱՏՈՅՑ
Ալիշան, Հայկաբան

գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Երուսաղէմ

Արդ, գրեցաւ սա, որ կոչի Աղօթամատոյց և փրկական սուրբ խորհուրդս պատարագի ի նմին տփի՝ ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի վանքս

* Հրատարակիչը հայտնում է, որ «Աղթամար»-ը եղծված է եղել։

Փրկչի... ձեռամբ... Գրիգոր անարժանի... կրօնաւորի...։ Յիշեցէք... հօրրն իմ Սարգսի և մաւրն իմ Աւէային(՟)... օրինակն շնորհողին Առաքել ճգնաւորի, որ է յօրինակէ Թումայ վարդապետին։

561

ԱԻԵՏԱՐԱՆ

Տ. Պալեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց ի Թուրքիա, հա. Ա., տետր Բ., էջ 47, Կեսարիայի ս. Աստուածածնի եկեղեցի № 2

գրիչ՝ Սարգիս

263ա ...Ի թվիս Հայոց ՋԻԸ. (1479) գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անարժան սուտ աբեղայի, յիշատակ Ղա[զա]րին և իւր ծնաւղին և ամենայն արեան մերձաւորացն, որ ստացաւ զսա յիւր հալալ ընչից իւրոց, և ետ յիշատակ Կարապետ քահանային ի վայելումն անձին իւրոյ։ Յիշեցէք եղբայր սորա զէտիլն, և զիւր ծնաւղսն՝ զհայրն զպարոն Սողոմոն և զմայրն իւր, և զայլ արեան մերձաւորսն։

Դարձեալ, աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ ընթերցաւղ, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զպարոն Ղազարն և զիս՝ զանարժան զՍարգիս անուն։ Աղաչեմ անմեղադիր լերուք սղալանաց սորա, զի կար մեր այսչափ էր, և ով զմեզ յիշէ աստուած զինքն յիշէ յիւր արքայութիւն, ամէն*։

562

ՀՄԱՑԻԼ

Երևան, հմայիլ 1

գրիչ՝ Ստեփանոս

...Պահէ զծառայս աստուծոյ զխոջա Քրմանն, և զկողակիցն իւր զԳաւճարշատն, և զզաւակսն իւրեանց զՆայիպշէն, և զայլ արեան մերձաւորսն, ամէն**։

Գրեցաւ Կիպրինս*** առ դրան սուրբ Յովաննիսին, սուրբ Աստուածածնին, սուրբ Ստեփանոսին և սուրբ Գրիգոր Լուսաւորչին, ՋԻԱ. (1479) թվին, ձեռամբ անարժան գրչի Ստեփանոսի...:

---

* Նույն այս հիշատակարանը, ձեռագրի նկարագրության հետ միասին Տ. Պալյանը հրատարակել է նաև «Ծաղիկ» թերթի 1891 թ. № 41-ում (էջ 2)։

** Ստացողների անունները գրված են այլ ձեռագրով։

*** Իմա՝ «Կիպրիանոսս»։





## 563

## ՍԱՂՄՈՍ

Վ. Թորգոմեան, Ամիրտովլաթայ
Սաղմոսը, ՀԱ. 1895, էջ 246—249

գրիչ՝ Մարտիրոս
վայր՝ Ըստամպալ քաղաք

...Գրեալ ձեռամբ յոգնամեղ և անարժան ծառայի Մարտիրոս աբեղայի, ի խնդրոյ հեզահոգի և պատուական իմաստասիրի, ճարտարհմուտ հին և նոր կտակարանի և ատեղաբաշխութեան արհեստի՝ Ամիրտովլաթ մեծ գիտնականի և արագ բժիշկի, որ այժմ գործով անունն երևի, զի զտիւ և զգիշեր ոչ դադարի, միշտ ի գիտութիւնս պարապի և անհաս բանի հասու լինի, քանզի անչափ է սէր սորա առ աստուած և առ գիրքս աստուածային, կամի որ զամենայն ընդիր և գեղեցիկ գրեանս առ ինքն ժողովէ։ Յորոց մինն այս հոգէնուագ Սաղմոսս Դաւթայ, յարդարեալ և սրբագրեալ մեծ վարդապետին Հայոց Յովհաննիսի մականուն Գառնեցի կոչեցեալ, յորոյ աղաւթքն օրհնութիւն միշտ եղիցի ի վերայ հաստատցելոց, մանաւանդ ի վերայ հայկազուն տոհմիս Արամեան։

Յորժամ գնաց մեծ խոնդքար սուլտան Մուհամատն ի վերայ Ուզուն-Հասանայ, և կոտորեաց զնա, արար փախստական, բռին զերծեալ գնաց ի Թավրէժ, և սա դարձաւ եմուտ ի Խախբեան գաւառ, ի քաղաքն Բաբերդ կոչեցեալ՝ այրեաց աւերեաց, և գերի եբեր Ըստըմպօլ Սաղմոսարան մի՝ լաւ և ընդիր աւրինակ, հանդիպեցաւ Ամիրտովլաթ բժիշքս և ազատեաց զսուրբ գիրքս զայն ի գերութենէ։ Այս եղև ի թվ. ՋԻԲ. (1473) ամին։

Դարձեալ, ի թուականիս Հայոց ՋԻԸ. (1479) սուրկուն արար խոնտքարն զՂարամանին աշխարհին զՀայ ազգս. և զիս՝ զանպիտան հողս զՄարտիրոս հետ բերին ի Կոստանդնուպօլիս, առ ոտս սուրբ վարդապետին մերոյ տէր Մաքէոսի Սեբաստացոյ և Աբրահամ վարդապետի Տրապիզոնեցոյ, որ և զսոքայ ալ խոնդքարն բերել էր վասն պատրիարգութեան համար, և սոքա ոչ առին յանձն, լաւ համարելով զմիայնակեցութիւն քան թէ փառք առնուլ ի մարգկանէ։

Դարձեալ, յիշեցուցանեմ զվերոյասացեալն զԱմիրտովլաթ բժիշկն, որ միշտ ցանկացող է և սիրող պատուական գրոց, վասն որոյ հարկ եդիր ինձ՝ փանաքի և անվարժ գրչի Մարտիրոս աբեղայիս, և ես ոչ եթէ իբր զքաջ արուեստաւոր կամ հմուտ գրչութեան արհեստի յօժարեցայ զսա գրել, այլ կարի վտանգէի ի հարկէ և ի սիրոյ, զոր պատահեցոյց մեզ պարոն Ամիրտովլաթ բժիշկն, յանձն առի գրել մեծաւ աշխատութեամբ ի դառն և դժար ժամանակիս, և հասոյց աստուած աւարտ բանիս։

Աղաչեմ չի լնել մեղադիր սղալանաց և խաւշորութեան սորա, զի կար

մեր այս էր, և այլ ոչ էի գրեալ, զի առաջինն այս էր, վասն ի հարկէ սիրողաց արկի ի սա ձեռն։ Բայց ի ծաղկելն առաւել նեղացայ, որ չէի տեսեալ ի վարպետէ, այլ աւրինակ գնելով և ղնիւթին գոյնն ոչ գիտելով, բազում աշխատութեամբ կատարեցի զսա։

Արդ, գրեցաւ սա ի թվ. ՋԻԹ. (1480), ի յամսեան յուլիս Ը. (8), մեծահամբաւ կայսերանիստ քաղաքս Ըստամպաւլ, ի դուռն Ջարախաբան սուրբ Աստուածածնիս։ Ո՜վ սուրբ ընթերձողք, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զԱմիրտովլաթ բժիշկս, որ ստացաւ զսա յարդար յընչից իւրոց ի վայելումն բարի զաւակաց իւրոց, զոր տէր աստուածն ամենայնի վայելեալ տացէ և յետ աստեացս ելանելոյն ընդ սուրբ իմաստասիրացն դասակից և պսակակից արասցէ, ամէն։ Այլ և յիշեցէք զմեր պարոն երեսփոխան Աստուածատուրն և զկենակիցն իւր զԹատուս-Խաթունն, որ շատ ծնօղութիւն կառնեն և յամէն աւր Բ. (2) անդամ Ե. (5) հոգտոյս կերակուր կու պատրաստեն, լսել տա աստուած զերանաւէտ ձայնն, թէ՝ Եկայք աւրհնեալք հօր իմոյ, ժառա[նգեցէք]...։

Դարձեալ, յիշեցէք յաղօթս ձեր զՍանակ սարկաւագն, որ բազում անկամ աշխատել է ի մագաղաթս բերելն, սուրբ Ստեփաննոսի նախասարկաւագին աղաւթիցն մասնակից արասցէ Քրիստոս։

Այլ երես անգեալ աղաչեմ զհանդիպողսդ սուրբ տառիս, ո՜վ սուրբ և ընտրեալ եղբայրք, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զՄաքէոս վարդապետն, որ ուսուցիչ է մեզ և խրատիչ աստուածային սուրբ պատուիրա[նա]ցս Դարձեալ, յիշման արժանի արասջիք զմեր համշիրակ եղբայրքս՝ զՂազար աբեղայս, և զՍտեփաննոս մալազս, և զիս՝ զանպիտան գրիչս, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Բ

գծող՝ Կիրակոս
վայր՝ Պուրսայ

Եւ յետոյ առի մեղաւոր Կիրակոսս պարոն Ամիրտովլաթ բժըշկէն Ե. (5) ֆլորին, ի Պուրսայ քաղաքն, աստուած վայելել տացէ, ամէն...։

## 564

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ ՄԻԽԱՅԻԼԻ ԱՍՈՐԻՈՅ ԵՒ ՍԱՄՈՒԷԼԻ ԱՆԵՑԻՈՅ

Երուսաղէմ 343
Ն. Պողարեան, Մայր ցուցակ, Գ, էջ 250—251

գրիչ՝ Ներսէս
վայր՝ Կ. Պոլիս

...Շնորհիւ տեառն սկ[ս]ա և ողորմութիւն նորա յանկ հանեալ կատարեցի զԳաւազանագիրքս հայրապետաց և թագաւորաց, զոր ժողովեալ ի գրոց պատմագրաց հիւսեալ շարագրեաց, սկսեալ ի նախաստեղծէն Ադամայ մինչև յիւր ժամանակն երջանիկ կաթուղիկոսն Ասորոց Միխայէլ, զոր տեսեալ զսա մեծ և պատուական կաթուղիկոս տէր Կոս-

տանդին յերկրորդ մասնէ Հայոց, ի դղեկէ Բարձրբերդէ, ընտրեալ ի հոգւոյն սրբոյ յաստիճան առաքելական, որ և բազում բաղձանաւք ի յասորոց թարգմանել ետ զսա ի հայս, յաւել ի գանձս մեր, պիտանի և շահաւէտ բուրաստան լայն և երկայն իմաստիւք լցեալ, և կարճատաւտ բանիւք բաւանդակեալ։ Ստուգիւ մեկնէ զպատմութիւն և զշարս իւրաքանչիւր գաւազանաց անտարակուսապէս։

Զոր տեսեալ զսա հետևողն իմաստութեանց և սիրողն սուրբ գրոց մեծահաւատ թարքմանող բժիշկ Ամիրտովլաթ, և ետ զսա գրել ի վայելումն անձին իւրոյ և գեղուղէշ նորահաս զաւակին իւրոյ Ամիրէտիլին, և յետ աստեացս յիշատակ իւր և ծնողաց իւրոց, ամէն։

Արդ, գրեցաւ Պատմագիրքս այս ի թուականութեանս Հայոց ՋԻԹ. (1470), ի քաղաքիս ի Բիւզանդիայ. որ այժմ կոչի Կոստան[դ]ինուպաւլիս, ձեռամբ մեղապարտ և անարհեստ գրչի Ներսէս սուտանուն քահանայի, ի թագաւորութեան սուլտան Մահմատին, ի նեղ և ի նուրբ ժամանակիս, զոր բազում մրրիկ հարուցանէր ի վերա քրիստոնէից և իւր ազգին, ի տեղէ ի տեղ փոխելով և հարկապահանջութեամբ և այլ վշտաւք։

Արդ, յերես անկեալ աղաչեմ զձեզ, որք կարդայք կամ աւրինակէք յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զթափուրս յամենայն բարեաց. իսկ եթէ սղալ, կամ խոշորագիր կամ անախորժ մտաց ձերոց գտցի ի սմա՝ անմեղադիր լերուք, զի ի մէջ դառնութեան գրեցի զսա, զի բռնութեամբ և ակամայ ի յԱմասիու զմեզ բերին ի Կոստանդինուպաւլիս. և ես լալով և բազում հառաչանաւք գրեցի զսա. այլ և կար մեր այս է։

Եւ որ առատն է ի տուրս բարեաց ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոց առհասարակ ողորմեսցի Քրիստոս աստուածն, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 565

## ԱՌԱԿՍ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԵՒ ԲԱՆԱԼԻ ՄՏԱՑ ՄԱՐԴԿԱՆ

Երևան 2001

Հեղինակ՝ Աստ

2բ Թագաւոր մի էր ահեղ և զարմանալի և տէր ամենայն փառաց և պատւոյ. ունէր հեծելազօրս անթիւս և անհամարս, ունէր և ծառայս արծաթագինս բազում ի տան իւրում, էր նա տէր բազում քաղ[աք]աց, շատ թեմի և թումանի, և ունէր Գ. (3) խզինայս՝ ներքին, միջին և վերին։ Ներքին դուռն երկաթի, միջին դուռն արծաթի և վերին՝ ոսկի, լուսատու ակամբ զարդարեալ։ Զինչ որ ներքին խազինայն էր, նա շատք ի ծառայիցն մուտ և ել արարեալ էին. և միջին խզինայն՝ ի բազմացն սակաւք էին մտեալ և ելեալ, ապա ի վերինն անհնար էր ոք ի նա մտանել և գիտել թէ զինչ կայր ամբարեալ ի նմա, բայց ի թագաւորին։ Եւ յետ ժամանակաց մին ի ծառայից թագաւորին, որ անարժն էր և տըգէտն, ցանկացաւ մտանել ի ներքին խզինայն և գիտել թե որչափ գանձ կայ ի նմա, եւ աղաչեաց զառաջիկայք թագաւորին, և հրաման առին ի թագաւորէն վասն այն անիմաստ ծառային։

*Երկու ղանթարի դռնապան կայր թագաւորին, որ ի տեսլենէ նոցա զարհուրէր ամենայն կենդանի։ Եւ յորժամ հրաման եղև ի թագաւորէն հրամայեցին առաջիկայք, թագաւորին, թէ ով անմիտ, դու միայն եթէ մտանես զի՞նչ կարես առնել։ Ասէ ծառայն. ունիմ եղբայրս Բ., զնոքա բերեմ յաւգնութիւն ինձ։ Եւ մտին Գ. եղբարքն ի խալինայ թագաւորին. խորհուրդ արարին և եղին կշեռք և կշռեցին զամենայն գանձն և սահմանեցին Ճ. (100) բեռն. Ղ. ու Ե. (95) բեռն՝ մէկ մէկ ԿԹ. (69) զիտր և Ե. (5) բեռն՝ Հ.—Հ. (70—70) ղիտր։ Եւ ապա դարձեալ գին արարին. այն բեռներն, որ ԿԹ. (69) զտրական էր ԻԵՌ. ու ԳՃ. և ԺԷ. (25317) թանկի և կիսու էր. և այն որ Հ.—Հ. (70—70) էր՝ նա ԻԵՌ. և էՃ. և Ծ. (25750) թանկի էր։ Եւ այն թանկէն՝ թագաւորական էր, որ մէկն Ե. (5) շահռօհի էր, և էր ամէն թանկայ ի Դ. (4) դէկան և ամէն դէկան Լ. (30) պլիկ. և այսքան առ այս։*

*Ո՛վ եղբայր տէր Յովաննէս, էնց գիտացիր, որ զինչ որ բեռինք են ղտրերն՝ յայտնի են. ապա ջանայ, որ ղդեկանքն և ղպլկներն ի համար բերես, և անարժան ծառ[այ]իս ձերոյ* Ատոմիս *աստուած ողորմի ասես, ամէն։*

*Գրեցաւ սակաւ դիրս Ջ. և ԻԹ. (1480) թըւին**։

## 566

### *ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Երևան 2711*

*գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Վարագ

550ա *...Գրեցաւ սուրբ գիրքս ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի* Կարապետ *սուտանուն կրաւնաւորի դատապարտեալ և անարժան ծառայի ծառայիցն աստուծոյ։ Ու իմ գրելով զայս ի հզաւր և ի լուսաւոր բանից, ի գեղեցիկ և յանուշահոտ ծաղկանց և զանազան բանից սրբոց վարդապետաց և ի տաւնից տէրունականաց և ի սրբոց պատմութեանց ի մի հաւաքեալ, որ կեանս տա կամայորդոր լսաւղացն։ Ջոր տկար անձամբ իմով շարագրեալ եղև ի դուռն հրաշափառ և ի գերահռչակ սուրբ կաթուղիկէ է. (7) եկեղեցեացս և ընդ հովանեաւ սուրբ Նշանիս* Վարագայ *և Երկոտասան սիւն լուսոյ վերնայարկ անապատին, ի թուականիս մերոյ :Ջ. և*
550բ *ԻԹ. (1480), ի կաթողիկոսութեանն || տեառն* Սարգսի, *և յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր* Առաքել *հէրպէտի, և յաշխարհակալութեան նետողական ազգին, ի դառն և ի վշտաբեր ժամանակիս։*

*Եւ արդ, աղաչեմ... յիշեցէք ի սուրբ և յերկնաբացիկ յաղաւթս ձեր զստացող սուրբ գրոցս* զՅոհաննէս *և* զԵղիսաբէթ՝ *աստուած-ողորմի ասե-*

* *Ծավալով փոքրիկ, բայց ուշագրավ բովանդակությամբ այս հոդվածն ըստ էության թվաբանական մի խնդիր է։ Նկատի առնելով նրա կարևորությունը ԺԵ դարի դրամական գործածական միավորների և նրանց հարաբերությունները պարզելու տեսակետից, նպատակահարմար գտանք հրատարակել հիշատակարանի դեր կատարող վերջին տողերի հետ միասին՝ ողջ հոդվածը։*

լով նոցա։ Եւ վասն սիրոյն Քրիստոսի և յուսոյ արքայութեանն թողութիւն մեղաց խնդրեցէք յաստուծոյ Կարապետ քահանային, և Յոհանիսին և Եղիսաբէթին՝ ծնօղաց նորին, և եղբարցն Յովհաննիսին և Գրիգորին, և կանանց Դովլաթին Ե. Ալամշային, և ուստերաց և դստերաց նոցա՝ կենդանեացն և հանգուցելոցն, ամէն։

...Այլ և զսիրելի եղբարսդ մեր՝ զպատուական քահանայսդ և զհաւատարիմ ժողովուրդստ՝ զայր և զկին, զընթերցողսն և զլսաւղսն, և խնամով պահողաց գրոցս՝ շապկով, շորով կապել տալով, Քրիստոս աստուած... թողցէ զյանցանս նոցա...։

551ա ...Դարձեալ, յիշեցէք յաղաւթս և ի մաղթանս ձեր զառաջնորդ սուրբ ուխտիս Վարագայ զտէր Յովանէս երջանիկ և զհեզահոգի արհէեպիսկոպոսն մեր, զտէր Առաքել հէրպետն՝ հոգաբարձու և սպասաւոր վանացս, և զայլ սիրելի և խնամածու եղբարքս մեր՝ զսրբազան դասս քահանայից կրաւնաւորական անձանց՝ զՍուքիասն, զՍտեփանոսն, զԱտոմն, զԿարապետն, զՍահակն, զԹումէն, զՄարտիրոսն, զԳրիգորն, զեկեղեցպան Մաղաքիայն, զՄկրտիչն, զՆերսէսն, զԽաչատուրն, զՄովսէսն, զՄարգարէն, զՅովանէսն և զըսպասաւոր և զաշխատաւոր տնտես խալիֆայն, այլ և զամենեսեան առհասարակ՝ զմեծ և զփոքր, որ գրեցան և որք մնացին...։

Այլ և ես՝ Կարապետ գըծող տառիս, թէպէտ և ողորմութեամբ տեառն
սկսա և շնորհիւ նորին կատարեցի, բայց կամակցութեամբ եղբարցս
եղև, ի մարմնաւոր աշխատութեանց խնամարկէին զմեզ, հատուցէ
551բ նոցա տէր||աստուած զվարձս բարեաց երախտեաց նոցա և ազատեսցէ
յամենայն սխալանաց, ի պատրանաց սատանայի և յաւիտենական
տանջանացն, ամէն։

Եւ դարձեալ, աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի յիշել յաղաւթս ձեր զամենայն երախտաւորսն իմ առ աստուած՝ զՆերսէս րաբունապետ, որ ժամանեալ է աստ ի զրաւել մատենիս, և զՅովանէս առաջնորդ Վերին անապատին, և զԳրիգոր սպասաւոր բանի, և զՅովսէփ կրաւնաւոր, և զՇահեկանց Ստեփանոս՝ զհանգուցեալն ի Քրիստոս, որ ձեռնտու եղև ի Ներքսագոյն անապատին, հատուցէ նմա տէր աստուած զվարձս իւր։ Այլ և զԿարապետ քահանայ կազմող գրոցս, և զհոգևոր և զմարմնաւոր երախտաւորսն մեր, եթէ արք և կամ կանայք. և զվարպետն իմ զԳրիգոր Բերկրեցին, և զհարազատ եղբայրն իւր զՄկրտիչ, որ է քաջ հը[ռետո՞ր], և զանարժան գըծողիկս...։

567

ՄԱՇՏՈՑ

Երևան 5381

գրիչ՝ Հայրապետ
վայր՝ Աղթամար

241ա ...Աստանօր աւարտեցաւ գիրքս այս, որ է Մաշթոց, ձեռամբ անարհեստ և անիմաստ, սուտանուն և մեղաւոր Հայրապետ աբեղայի, ի կըղ-

զիս Աղբամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Սարգիս զօրավարիս, ի հայրապետութեան տեառն Ստեփանէ կաթողիկոսիս, ի թագաւորութեան Աղուպ-բէկին, ի թուականիս մերոյ ի ԹԺ. և ԻԹ. (1480) ամին, ի դառն և ի նեղ ժամանակիս։ Վասն ծովացեալ մեղաց մերոց կամք ի ձեռն յանօր[ին]աց ի հարկապահանջութիւն։ Յայսմ ժամանակիս ցանկացող եղեալ բարեպաշտ հաւատարիմ տանուտէրն Կարապետ, և ետ գծա-
241ր դրեալ զսուրբ դիրգքս ի հալալ և յարդար վաստակոց իւրոց՝ յիշատակ || իւրն, և ծնօղացն իւրոյ՝ հօրն Ծեռունին և մաւրն Գուլմելէքին, և եղբարցըն Յովհաննիսին, և Խալիֆին, և Կարապետին, կենակցին իւրոյ Ասա-Խաթունին, և զաւակաց նոցին պարոն Ղաչին, և Թումային, և Ջանագըրզին, և Խաւարաւին, և դստերացն Խանում-Հաթունին և Բար-Հազըրզին, և Յովանիսի կենակցին՝ Թաթար-Խաթունին, և դեռաբոյս զաւակին իւրոյ Մխիթարին, և Խալիֆի կենակցին՝ Սալչուկ-Խաթունին, և իւր տղայոցն, և այլ ազգականացն մերոց և ամենայն արեան մերձաւորացն, կենդանեացն և հանգուցելոցն ողորմի տէր աստուած և թողցէ զյանցանս նոցա։ Եւ լսել տայ ձեզ Քրիստոս զերանաւէտ բարբառն Կարապետին և իւր ծնօղացըն...։

Եւ դարձեալ, յիշեցէք ի Քրիստոս զիս՝ զանարժանս ծառայս... պՀայրապետ աբեղայս՝ գծող տառիս, և ծնողքն իմ և եղբարխտաւորքն...։

568

ԳԱՆՁԱՐԱՆ

Փիրղ. 6273, էջ 327—328. ի Կ. Պոլիս, առ մասնաւոր ոմն

գրիչ՝ Առաքել
վայր՝ Աւագ վանք

...Արդ գրեցաւ Գանձարանս ի սուրբ անապատս որ կոչի Աւագ վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Կարապետիս և սուրբ Առաքելոցս, ի թուին ՋԻԹ. (1480), առ ոտս Յովհաննէս րաբունապետին, ձեռամբ անարհեստ գրչի Առաքել սուտանուն աբեղայի...։ Յիշեսջիք զսուրբ ուխտիս առաջնորդն՝ զտէր Յովհաննէս եպիսկոպոսն, և զգրոց աշակերտներն, և զայլ միաբանք սուրբ ուխտիս՝ զաբեղայքն և զսարկաւագունքն և զգործաւորքն ի սուրբ աղօթս ձեր։

569

ԱԻԵՏԱՐԱՆ

Փիրղ. 6273, էջ 327, ի վանս Տէր Ցուսկան որդւոյ

գրիչ՝ Երեմիա
վայր՝ Կեղի

Բայց գրեցաւ ձեռամբ Երեմիա սուտանուն սարկաւագի, ի քաղաքս Կեղի, ի դուռն սուրբ Աստուածածնին, և սուրբ Յակովբին, և սուրբ Սարգսին, և այլ ամենայն սրբոց, որ աստ կան. ի թուին ՋԻԹ. (1480)։

570

ԱԻԾՏԱՐԱՆ

*Վրացական ՍՍՌ, կենտրոնական պատմական արխիվ*
*ֆոնդ 233, № 584*

*վաճառող՝* Գրիգոր
*վայր՝* Վրաստան

*Ես՝ տէր* Գրիգորս, *և իմ եղբայր* Ալադադս*, *և մեր որդիքս ծախեցաք սուրբ Աւետարանս վերայ* Ճավի *որդացդ՝* Վարձիգուլիդ, *և ձեր ախբրացդ՝* Սիմէոնիդ, Ամիրգուլիդ, Ղարիպշիդ *և ձեր որդացդ. առաք ղդինն անպակաս։ Ոչ ով դավի չունի, ոչ հակառակ։ Մեր սրտի առատութեամբ ծախեցաք։ Այսոր վկայ է* Մաքէոս *եպիսկոպոս, տէր* Անտոն, *տէր* Զաքարէ, *տէր* Գրիգոր, *տէր* Բարսեղ, Մլքամն, Շապանն:

*Ես՝* Ճավի *որդիքս՝* Վարձիգուլս, Սիմէոն, Ամիրգուլս, Ղարիպշէս, Տղարաւէլս *դնեցաք սուրբ Աւետարանս յիշատակ մեզ, և ծնողաց մերոց՝ հաւր մերոյ* Ճաւին, *մեր մաւրն* Թա[նկ]-խաթունին, *մեր որդոցն՝* Ովանէսին, Հերապետին, Ջանուն, Խոցադեղին, Քարիմադինին, Միտիչին, Գրիգորին, Լաւմիսգուլին, Գուլիսգուլին:

*Ով որ կարդէք կամ աւրինակէք յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր ն աստուած զձեզ յիշէ, ամէն։*

*Գրեցաւ ի թվարերութեանս Հայոց ՋԻԹ. (1480), հոռի ԻԵ. (25)։*

571

ԱԻԾՏԱՐԱՆ

*«Թորոս Աղբար» Ա., էջ 231,*
*Տիվրիկի ս. Աստուածածին եկեղեցի*

*գրիչ՝* Զաւրվար
*վայր՝* Տիւրիկ քաղաք

*... Արդ, ես նուաստ* Զօրավար *երէցս զմտաւ ածի զայս ամենայն և դրեցի սուրբ Աւետարանս ողորմութեամբն աստուծոյ՝ յիշատակ ինձ, և ծնողաց իմոց* Ստեփանոս *քահանային և* Նար-Մէլիքին, *և կենակցին իմոյ* Մեճրի-Մելիքին, *և հոգևոր մօրն մերոյ մղտեսի* Մինային, *և ամենայն արեան մերձաւորացն, ի վայելումն դեռաբոյս զաւակին իմոյ* Յովհաննէս *սարկաւագին...։*

*Որ է յիշատակ տէր* Ներսէս *եպիսկոպոսին, և գրեցաւ ի թուականութեանս Հայոց ՋԻԹ. (1480), ի քաղաքիս* Տիւրիկոյ, *ընդ հովանեաւ սուրբ Սարգսի տաճարիս։ Արդ, աղաչեմք զձեզ, ո՛վ մանկունք նոր Սիովնի, որք հանդիպիք այս սուրբ և աւետաքարոզ Աւետարանիս, կարդայք և աւկտիք և աւրինակէք ի սմանէ, յիշեցէք սրտի մտաւք ի մաքրափայլ աղաւթս ձեր* զԶաւրվար *գրիչս և զվարպետն իմ զտէր* Գրիգոր Ջաղրոցն, *այլ և յիշեսջիք զբազմերախտաւորն ի վերայ մեր զվարպետ* Սամուէլն, *այլ և յիշեսջիք զհոգևորն մեր ծնաւղ, որ երետ զխորհներումն և ղտնաւ-*

* *Անվան առաջին տառը («Ա») լավ չի նշմարվում։*

րինականացն զինչ որ խարճ եղաւ..., այլ և յիշեսջիք զպարոն Մելքի-սեդն, որ զաւրինակն շնորհեց, այլ և յիշեսջիք զառաջնորդ գաւառիս զտէր Ստեփաննոս և զԿարապետ վարդապետն, որ մեզ աւգնական է յամենայն պէտս հոգևոր և մարմնաւոր։

## 572

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ, ԻԳՆԱՏԻՈՍԻ

Երուսաղէմ 352

Ն. Պողարեան, Մայր ցուցակ, Գ., էջ 269

Հետ. կազմող՝ Գրիգոր Արճիշեցի

611 Յիմար Գրիգորս Արճիշեցի,
Կոխան ամէն վարդապետի,
Ինն հարիւր թվականի,
'Ի ի քսան ինն աւելորդի,
Ի սուրբ Երուսաղէմս եկի,
Երեք տարի ի տեղս կացի։
ՋԱւետարանըս Քրիստոսի,
Զգլուխս որ Ղուկաս անուանի,
Որ է մեկնեալ Իգնատիոսի
Աստուածաբան հեռետորի,
Բաներ ունի յոյժ պիտանի,
Քաղցրայհամ քան զխորիսխ մեղւի,
Ըստ իմ տկարութեանս կարի
Բանիկ-բանիկ դաս ասացի
Աւգնականութեամբն Յիսուսի։
Ի սուրբ Գէորգ սկիզ[բ]ն արի
Ի Նոր կիրակէն վճարեցի։
Կապն էր հնացեալ՝ նոր կազմեցի,
Հոգևոր եղբայրն մեր բարի
Քաջ վարդապետն Եսայի,
Որ է ամէն շնորհաւք լի,
Հմուտ ամենայն արհեստի,
Ի կապելն այս սուրբ կտակի
Խրատատու եղև մեզի։
Որք հանդիպիք այսմ տառի
Ընթերցմամբ կամ աւրինակի,
Միշտ յիշեցէք զմեղ յաղաւթի,
Ասէք մեղ աստուած-ողորմի.
Նայ, որ առատն է ի տուրս բարի
՚Զեզ ու մեզ հաւասար ողորմի։

## 573

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7742

252ա *Ի թվիս ՋԻԹ. (1480). Եւ այլ յիշատակ է սուրբ Աւետարանս կրկին տէր Աստուածատրին, և իւր իրիցակնոջն, և անտրանիկ, գեղեցիկ սարկաւագ որդոյ տէր Պապին, որ մահտարաժամով ի Քրիստոս փոխեցաւ, և միւս փոքր որդոցն, տէր Աւետիքին, և դստերացն Քուլտֆ-Խաթունին, իւր մամուն Ազիզ-Մելիքին, մարքրոջն Ուլու-Խաթունին: Թէ քահանա, թէ ժողովուրդ հրամանք չունենա զայս սուրբ Աւետարանս սուրբ Աստուածածնէս գրաւէ կամ ծախէ կամ այլ տեղ տա. թէ որ ձեռնամուխ լինա՝ նա անիծած լինա սուրբ Յարութենէս՝ որդոցէ որդիք, և այլ անէծք և պատիժ կրէ Յուդայի և խաչահանուաց <և Յուդաի>։ Եւ ով որ փառաւոր պահէ, նայ Քրիստոս զինքն զիւր տեսութեան և սուրբ արքայութեան արժանացէ, որդոցէ որդիք։ Եւ այլ ով քահանա կամ կրաւնաւորք, որք հանդիպիք, որք բանայք ու կարդայք, նա աստուած ձեզ թողութիւն շնորհէ, և յիշատակացս ձեր աղաւթիւքդ թողութիւն խնդրեցէք, ողջ լերուք ի տէր։*

## 574

### ԱՒԵՏԱՐԱՆ

Տ. Պալեան. Ցուցակ հայերէն ձեռագրաց ի Թուրքիա, հա. Ա, տետր Ա, Կ. Պոլիս, 1892, էջ 11
Կեսարիայի ս. Սարգսի վանք № 2

*գրիչ՝* Ստեփաննոս եպիսկոպոս

285ա—286ա *...Սմին՝ այս աստուածաւանդ սուրբ Աւետարանիս ցանկացա ես՝ նուաստ ծառայս աստուծոյ փցուն և անարհեստ գրիչս* Ստեփաննոս *եպիսկոպոս։ Իսկ յաւժարութիւն սրտիս և կարողութիւն և մարդասիրութիւնն աստուծոյ, որ յամենայնի կարող է և անյուսից յոյս է և անաւգնականից աւգնական, որ ոչ անտես առնէ զյուսացեալս յինքն. ի շնորհս նորա ապաւինեալ սկսա, և նա ետ կարողութիւն հասանել յաւարտ սորա։*

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՋԻԹ. (1480)։ Վասն որո աղաչեմ զսուրբ դասք քահանայից, առհասարակ զհանդիպողսդ, ...յիշեսջիք զտէր* Ստեփաննոս *եպիսկոպոսն, որ բազում աշխատութեամբ գրեց զսուրբ Աւետարանս յիշատակ* Գրիգորիս՝ *աւագ սարգաւագիս, յիշատակ իւր և արեան մերձաւորացն, յիշատակ դրի ի սուրբ երեք Մանկունքս։ Ով զայս Աւետարանս ծախէ կամ գրաւի դնէ՝ զմասն խաչահանողացն առցէ և զպատիժն Յուդայի։ Ով զայս յիշատակս քերէ կամ կեղևէ՝ Յուդայի և Կայենի մասնակից լինի։*

## 575

## ԺԱՄԱԳԻՐՔ ԵՒ ՏՕՆԱՑՈՅՑ

ՄՕՀ ձռ. Ա, 113, էջ 193

473 Գրեցաւ սայ ի թվականիս Հայոց ՋԻԹ. (1480), ի խնդրոյ պատուական և սուրբ կրաւնաւորի Յոհաննիսի, որ մականուն Ճալլա կոչի, ի վայելումն մանկանց եկեղեցոյ և յիշատակ իւր և իւրայոցն. աղաչեմ, որքան առնուք ի ձեռս ձեր ընթեռնելով և կամ ուսանելով յիշեցէք առ Քրիստոս զտէր Յովանէսն և զծնողսն իւր….

Աղաչեմ և զրչիս անմեղադիր լեր, զի բանն մի հետ մէկի կու գայ և գրելն կու ձանձրանայի, բայց աւրհնութիւնն յաստուծոյ է, նմա փառք յաւիտեանս։

# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

*Սույն ցանկը կազմված է ճիշտ այն սկզբունքով, ինչ ԺԵ. դարի առաջին հիսնամյակի հիշատակարանների հրատարակված ժողովածուի ցանկը։ Նշանավոր անձանց մասին տրված տեղեկությունները, ընդարձակ լինելով, այստեղ ևս կատարում են ծանոթագրության դեր։*

*Կիրառված են հետևյալ համառոտագրությունները.*

| | |
|---|---|
| *ազգ.— ազգական* | *հշվ.— հիշված* |
| *Աւետ.— Աւետարան* | *պր.— պարոն* |
| *եղբ.— եղբայր* | *սբ — սուրբ* |
| *եպս — եպիսկոպոս* | *ստ.— ստացավ* |
| *կթղկս — կաթողիկոս* | *վրդ.— վարդապետ* |
| *կր.— կրոնավոր* | *քհյ — քահանայ* |
| *հգևր — հոգևոր* | *օր.— օրինակեց, ընդօրինակեց.* |
| *հնգցլ — հանգուցյալ* | |

Աստուածատուր

59. Որդի տանուտեր Յոհաննէսի, որ 1465 թ. ստ. Գանձարան — 236, 237

60. Քհյ սբ Յովհաննէս և Ամենափրկիչ եկեղեցու, որին 1465 թ. նվիրեցին մի Գանձարան — 237

61. Դրիչ, 1465 թ. Խլաթում, Կիրակոս գրչի հետ միասին օրինակեց Յայսմաւուրք—240

62. Սարկաւագ, միաբան Արբերդի վանքի, 1466 թ. — 248

63. Մեծ ռապ Մխիթար գրչի, որ 1466 թ. Մոկաց Բռնաշէն գյուղում օր. Աւետ.— 249

64. Միաբան Կապոսի վանքի, 1466 թ.— 251

65. Որդի Մուսլսի, հշվ. 1466 թ.— 255

66. Երկու Նույնանուն հորեղբորորդիներ մահդասի Ստեփանոսի, որ 1467 թ. Վանում ստ. Յայսմաւուրք — 258

67. Որդի Յովանէս քհյի, որ 1467 թ. Վանում ստ. Մաշտոց — 259

68. Մորքրոջորդի Յովհաննէս քհյի, որ 1467 թ. Ոստանում ստ. Աւետ.— 261

69. Պադրոն, հշվ. 1469 թ. Բիւրականում—289

70. Միաբան Տեղերոյ սբ Աստուածածնի, հշվ. 1469 թ. Բիւրականում — 290

71. Քհյ ոմն, հշվ. 1469 թ. Բիւրականում—290

72. Հէրպետ Հերմոնի վանքի, 1469 թ.— 290

73. Եպս, որա խնդրանքով 1469 թ. Սանահնում օր. Շարակնոց — 296*

74. Գառնուկ մականունով, հայր Ներսէս կր.-ի, որի հորդորմամբ 1469-ից հետո Աւագ վանքին տրվեցին նվերներ—295

75. Ազգ. Մկրտիչ կր.-ի, որ 1470 թ. Արբերդի վանքին նվիրեց մի Աւետ.— 301

76. Քեռորդի վերոհիշյալ Մկրտիչ կր.-ի—301

77. Հորեղբորթոռն վերոհիշյալ Մկրտիչ կր.-ի —303

78. Հէրպետ Անկիւնեաց վանքի, հշվ. 1470—1477 թթ.— 305, 306, 307, 340, 401, 418, 419

79. Ազգ. Աղթամարի Ստեփանոս կթղկսի և Ներսէս եպսի, հշվ. 1471 թ.— 309

80. Երէց. 1471 թ. Շարվանայ երկրի Սավութլու գյուղում սա. Ժողովածու—319, 320

81. Ամուսին Շնոֆոր-Խաթունի, որ 1471 թ. Բարբերդում ստ. Աւետ.— 326

82. Աբեղայ, որդի Ջանիբէկի. 1172 թ. Արշբոյ վանքում ստացավ և նվիրեց Աւագ վանքին մի Մաշտոց — 337, 338

83. Հայր Գրիգոր քհյի, որ 1472 թ. Արճէշում ստ. Մաշտոց-Գանձարան—338

Աստուածատուր

84. Խոջա, հորեղբայր վերոհիշյալ Գրիգոր քհյի—339

85. Գրիչ, 1474 թ. Տփխիսում օր. Աւետ.—362

86. Քհյ, 1474 թ. Ուխտիք գղյակում ստ. Աւետ.— 362

87 .Ոմն, 1474 թ. Արճէշում ստացավ և նվիրեց Մատղավանք գյուղի եկեղեցուն մի Աւետ.— 364

88. Թոռ Սատաղայի, որ 1475 թ. Բոլորաբերդի անապատում (Սրկղոնք) ստ. Աւետ.—377

89. Տանուտեր, 1475 թ. Խլաթում ստ. Աւետ.— —378, 379

90. Եղբ. Յովանէս գրչի, որ 1475 թ. Խլաթում օր. Աւետ.— 379

91. Հա՞յր Ասըլպէկի, որ 1475 թ. Բալուի Նեխրի գյուղում ստ. Աւետ.— 388

92. Ոմն, ծնվեց 1475 թ.—392

93. Միաբան Սևանա՞յ վանքի, 1476 թ.—397

94. Որդի Արապ Երևանցու, որ 1476 թ. ստ. Աւետ.— 398

95 Եպս, առաջնորդ Մատնէվանքի սբ Աստուածածնի, 1476 թ.— 402

96. Սարկաւագ, թոռ Ամիր-Պոյճու, որ 1476 թ. նվիրեց Խառիկոնի Բերդ կոչվող գյուղի, եկեղեցուն մի Մաշտոց—411

97. Հայր պր. Գըտոնի, որ 1476 թ. ստ. Գանձարան — 414

98. Պալախաւրցի, 1477 թ. Յովհաննավանքում մի քանի տող ոտանավոր-ձոն դրեց խոջա Հանդիկի մասին, վերջինիս պատվերով օրինակվող Մաշտոցի մեջ — 418

99. «Կաղ» մականունով, հայր Յակոբի, որ 1477 թ. նվիրեց Անճնի գյուղի եկեղեցուն մի Աւետ.— 424

100. Կր., քեռի Վարդան կր.-ի, որ 1477 թ. Շատուան գյուղում ստ. Գանձարան — 422.

101. Կր., 1477 թ. Շատուան գյուղում թուղթ կոկելով օգնում էր Մելքիսեթ գրչին — 423

102. Մահդասի, հայր պր. Ֆարաճի, որ 1478 թ. Հալէպում ստ. Աւետ. — 434

103. Որդի վերոհիշյալ պր. Ֆարաճի — 434

104. Պր., երեսփոխան Կ. Պօլսի Զարխափան սբ Աստուածածին եկեղեցու, 1480 թ.—442

105. Քհյ, 1480 թ. ստ, Աւետ.— 449

Աստ-Մելիք — Սպասուհի Գաբրիէլ եպսի, որ 1477 թ. Յովհաննավանքում օր. Մաշտոց— —417

Ատոմ

1. «Հաւկիթ» մականունով, հնգցլ ամուսին



Ե

Թումայ

36. Քհյ, մահդասի, հգևր հայր Ատոմ գրչի, որ 1460, 1466, թթ. Արծկէում օր. Ոսկեփորիկ և Գանձարան — 137, 247
38. Ոմն, 1460 թ. Աղթամարում սա. Աւեա. — — 142
39. Հայր Աղթ գյուղացի Վարդանի, որ 1460 թ. Աղթամարում սա. Մաշտոց — 145
40. Որդի վերոհիշյալ Վարդան Աղթեցու — 145
41. Մորքրոշորդի խաչատուր Շատուանցու, որ 1461 թ. նվիրեց Նկարենայ սբ Յարութիւն վանքին մի Մաշտոց — 162
42. Աղդ. վերոհիշյալ խաչատուր Շատուանցու — 162
43. Կեցնայ երկրում թուքից խեղդված եղբ. 1461 թ. Շատուան գյուղում Գանձարան ստացած գաւաշցի Յովաննէս աբեղայի — — 165
44. Եղբորորդի տանուտէր Յովանէսի, որ 1461 թ. ստ. Աւետ. — 167
45. Եղբ. տէր Ստեփանոսի, որ 1462 թ. Տեսուր գյուղում սա. Աւետ.— 170
46. Եղբ. խոշա խաչատուրի, որ 1462 թ. Արճէշում ստ. Աւետ. — 179
47. Պր., Մարմետի տանուտէրերից, 1462 թ.— — 183
48. Որդի Սարգսի, որն իր եղբայրների հետ 1462 թ. Մընշկանց գյուղի եկեղեցուն նվիրեց մի Աւետ. — 185
49. Որդի վերոհիշյալ Սարգսի եղբ. տէր Աւագի — 185
50. Ազգ. վերոհիշյալ Սարգսի և Աւագի — 185
51. Քհյ ոմն, 1462 թ. ստ. Մաշտոց — 186
52. Հնգցլ հայր վերոհիշյալ Թումայ քհյի—186
53. Հայր Աստուածատուր քհյի, որ 1463 թ. Վանում ստ. Աւետ. — 197
54. Քհյ գրիչ, 1463 թ. Աղթամարում օր. Մաշտոց — 199
55. Որդի Աստուածատուրի, որ 1463 թ. Բերդաձորի վանքում ստ. Աւետ. — 200
56. Հնգցլ որդի մահդասի Պաւղոսի, որ 1464-ից առաջ ստ. իր եղբորորդի Ստեփանոս գրչի օրինակած Աւետարանը — 222, 223
57. Քհյ, հայր Ստեփանոս գրչի, որ 1464-ից առաջ օր. Աւետ. — 222
58. Քհյ, հայր Ատոմ գրչի, որ 1464 թ. Շատուանում օր. Յայսմաւուրք — 224
59. Վանի Պօղոս-Պետրոս եկեղեցու քհյ-ներից, 1465, 1467 թթ.—234, 259
60. Միաբան Աղթամարի, հշվ. 1465, 1471 թթ. — 240, 309
61. Կթղկս Աղուանից, հշվ. 1466, 1471 թթ.— 246, 319
62. Գրիչ, 1465 թ. խալկին գյուղում օր. Մաշտոց — 241
63. Աբեղայ դրիչ, 1465 թ. օր. Շարակնոց — — 242
64. Հայր Մկրտիչ գրչի, որ 1466 թ. Աղթամարում օր. Գանձարան — 248
65. Հորեղբ. Մխիթար գրչի, որ 1466 թ. Մոկաց Բոնաշէն գյուղում օր Աւետ. — 249
66. Ազգ. վերոհիշյալ Մխիթար գրչի — 249
67. Ազգ. Սարգսի, որ 1468 թ. Խիզանում ստ. Աւետ. — 274
68. Եպս Շամիա աշխարհի Սակունեաց երկրի, 1466 թ. — 252
69. Տէր հգևր հայր Կիրակոս Ջօշկանց գրչի, որ 1467 թ. Բաղէշում-Աղթամարում օր. Ճառընտիր — 257
70. Հայր Յովհաննէս քհյի, որ 1467 թ. Ոստանում ստ. Աւետ. — 261
71. Արքեպս, 1467 թ. ստ. Մելքիս'թ քհյի օր. Աւետ. — 269
72. Հայր Ղազար գրչի, որ 1468 թ. Խիզանի Գամաղիէլի վանքում օր. Աւետ. — 275
73. Ոմն, 1468 թ. ստ. Աւետ. — 279
74. Ի յայլազգեաց սրախողխող եղեալ եղբորորդի՝ մահդասի Ստեփանոսի, որ 1469 թ. Փասավանքում ստ. Յայսմաւուրք — 281
75. Եղբ. Մկրտիչ կր.-ի, որ 1470 թ. Արքերդի վանքին նվիրեց մի Աւետ. — 301
76. Տնտես Արքերդի վանքի, 1470 թ. — 303
77. Եղբ. Արքերդի վանքի երախտաւոր Գրիգոր Կիրակոսենցի, 1470 թ. —303
78. Փեսա ուսթա Վարդանի, որ 1471* թ. Աղթամարում ստ. Յայսմաւուրք — 311
79. Աղդ. Հայրապետ գրչի, որ 1471 թ. Աղթամարում օր. Մաշտոց — 312
80. Հյուսն, որդի Քուրդամիրի. 1471 թ. Աղթամարում պատրաստում էր ձեռագրերի կազմի տախտակը — 313
81. Կր., որդի Ստեփանոսի, ազգ. Փաշայի, որ 1471 թ. ստ. Աւետ. — 321
82. Մայրական պապ Աստուածատուր աբեղայի, որ 1472 թ. Արշըրոյ վանքում ստ. Մաշտոց — 337, 338
83. Քհյ, 1474 թ. Վայոց-ձորում 2 ձիթով բաղարճ տվեց Զաքէոս գրչին — 359
84. Հայր Յովաննէս գրչի, որ 1474, 1475 թթ.

2—94

Լ



Խ

Խաչատուր

որ մահացավ 1455 թ. Արճէշում, կիսատ թողնելով Աւետարանի օրինակութիւնը — 54, 55

7. Հայր Հայրապետ գրչի (Թումայ Մինասենցի քեռորդու), որ 1455—1478 թթ. Աղթամարում օր. 3 Աւետ., Ճաշոց և Մաշտոց — 57, 58, 128, 303, 312, 313, 431

8. Քհյ, որդի պր. Գրիգորիսի. 1458-ից առաշ Կաֆայում կառուցել էր սբ Ստեփանոսի եկեղեցին — 77

9. Գրիչ, որդի Յորդանանի, 1457, 1460, 1461 թթ. Ուրծ գյուղում օր. Ճաշոց, Յայսմաւուրք, Աւետ. — 82, 132, 158

10. Ազգ. տանուտէր Յովաննէսի, որ 1457 թ. Ցիպնայ վանքում ստ. Մաշտոց — 82

11. Խոշա, որդի Առաքելի. 1457 թ. Արճէշում ստ. Յայսմաւուրք — 87, 88

12. Սարկաւագ, 1457 թ. Ոստանում, թուղթ կոկելով օգնում էր Կարապետ գրչին — 90

13. Որդի մահդասի Յովհաննէսի, որ 1457 թ. Խիզանում ստ. Աւետ. — 93, 94

14. Եղբ. Սարգիս գրչի, որ 1457 թ. Երուսաղէմում օր. Գանձարան — 96

15. Հորեղբայր Ստեփանոս քհյ Ոստանցու, որ 1458 թ. Աղթամարում ստ. Աւետ. — 103

16. Թոռ պր. Աղիզպէի, որ 1458 թ. Կաֆայում ստ. Սաղմոսարան — 111

17. «Ջրքին» մականունով, աղեղղուգ, հայր վերոհիշյալ պր. Ազիզպէի — 111

18. Հայր Շմաւոն վրդի, որ 1459 թ. Տաթև բերեց մի քանի ձեռագրեր — 123

19. Քհյ ոմն, 1459 թ. ստ. Ճաշոց — 129

20. Հայր Կարապետ. կր.-ի՝ հգևր հոր Ատոմ գրչի, որ 1460 թ. Արծկէում օր. Ոսկեփորիկ — 138

21. Միաբան, ապա նաև հէրպետ (1470 թ.) Արբերդի վանքի — 144, 248, 301, 303

22. Որդի Սիմէոնի. 1460 թ. նվիրեց Սալայճուխի (Ղրիմ) սբ Սիմէոն եկեղեցուն մի Սաղմոսարան — 149

23. Շատուանցի, գրիչ, 1461 թ. Նկարենայ սբ Յարութիւն վանքում օր. Մաշտոց, մի այլ Մաշտոց էլ ստ. Աղթամարում ու նվիրեց նույն վանքին — 160, 162

24. Ոմն, որի միջնորդությամբ 1461 թ. Ներսէս կր. գրիչը Աղթամարում օր. Աւետ. — — 163

25. Խոշա, որդի Առաքէլի, 1462 թ. Արճէշում ստ. Աւետ — 179, 180

26. Կր., որդի Յովանիսի, 1462 թ. Կտուցում

Խաչատուր,

27. Գրիչ, միաբան Կտուց վանքի, 1463— ավարտեց իր Յովան քհյ Արծկեցի եղբոր կողմից սկսված Յայսմաւուրքի օրինակութիւնը, որը նվիրեց Մարմետի սբ Ստեփանոս եկեղեցուն — 180, 181, 182
1475 թթ. օր. 2 Աւետ. — 181, 197, 382, 383

28. Հայր Մարմետի տանուտերերից պր. էդկարշահի, 1462 թ. — 183

29. Իր եղբայրների հետ 1462 թ. նվիրեց Մընչկանց գյուղի եկեղեցուն մի Աւետ. — — 184, 185

30. Քհյ, որդի Խլղաթի, 1463 թ. Բաղէշում ստ. Յակոբ Ղրիմեցու Մեկնութիւն տոմարի աշխատության մի ձեռագիր — 194

31. Եզընկացի, սարկաւագ, հշվ. 1463 թ. Աւագ վանքում — 208

32. Միաբան Յովհաննավանքի, 1464, 1467 թթ. — 216, 408

33. Վանի Փօղոս-Պետրոս եկեղեցու քհյ-ներից, 1465, 1467 թթ. — 234, 259

34. Եղբ. Մկրտիչ գրչի, որ 1466 թ. Աղթամարում օր. Գանձարան — 248

35. Փեսա Սալչուկ-Խաթունի, որ 1466 թ. ստ. Մաշտոց և նորոգեց ինչ-որ եկեղեցու դըմբեթ — 254

36. Քեռորդի Սուլտանշահի, որ 1467 թ. Ոստանում ստ. Աւետ. — 260

37. Որդի Սահակ երէցի, որ 1467 թ. Կիւրղի վանքում ստ. Աւետ. — 263

38. Տէր, 1467 թ. Կաֆայում Յայսմաւուրքի օրինակ տվեց Մարտիրոս կր. գրչին — 268

39. Գրիչ, 1468 թ. Խարբերդի Խուլայու վանքում օր. Դաւիթ Անյաղթի Գիրք սահմանացը — 275

40. Թոռ Ջաքարոնց Յովաննէսի, հշվ. 1469 թ. Փասավանքում — 282

41. Եղբորորդի՞ մահդասի Ստեփանոսի, որ 1469 թ. Փասավանքում ստ. Յայսմաւուրք — 282

42. Ամբերդի քհյ-ներից, 1469 թ. — 290

43. Քհյ, որդի Մարտիրոսի, 1469 թ. Կեսարիայի Նիւսիա գյուղում ստ. Մաշտոց— 295

44. Արեղայ, 1470 թ. Գողթան գաւառում նորոգեց ու կազմեց մի Աւետ. — 298

45. Կր., ուսուցիչ Յոհաննէս գրչի, որ 1470 և 1472 թթ. Կտուցում օր. 2. Աւետ. — 301, 339

Կարապետ

8. Քհյ, 1353 կամ 1452 թ. Որոտնայ վանքում ստ. Ճառընտիր — 19, 20
9. Որդի ոստանցի ուսթա Ատոմի, որ 1480-ակա՞ն թթ. գերութjունից աղատեց մի Աւետ. — 22
10. Ոստանի սբ Ստեփանոս եկեղեցու քհյ-ներից, հշվ. 1460-ակա՞ն թթ. — 22
11. Արճէշում 1444—1452 թթ. միշոցին նահատակված եղբ. և ուսուցիչ Վարդան գրչի որ 1452—1467 թթ. Վանում օր. ձեռագրեր — 24, 34, 104, 258,
12. Եղբ. Յակոբ կր.-ի, որ 1452 թ. Արծկէում սա. Աւետ. — 25, 26
13. Ազգ. Վարդան գրչի, որ 1452 թ. Արծկէի Կողուց վանքում օր. ձեռագիր — 26
14. Սարկաւագ, որդի Ղազար քհյի, որ 1452 թ. Մրզուք գյուղում ստ. Աւետ. — 28
15. Առաջնորդ Մշոյ սբ Ղազարի վանքի, 1453 թ. — 33
16. Երկու նույնանուն որդիներ Շախփաշի, որ 1453 թ. Վանում Նորոգել տվեց մի Աւեա. — 35
17. Վարագայ վանքի երեք միաբաններ, 1454 թ. — 40
18. Քեռու որդի Վարդան կր.-ի, որ 1454 թ. Արճէշում ստ. Աւետ. — 41
19. Հյուսն, որդի վանեցի հյուսն Մլխամի, քեռի խոշա Խաչատուրի, հշվ. 1454, 1462, 1476 թթ. — 44, 180, 404
20. Առաջնորդ Գառուագրակ վանքի, որդի Սիմէոնի. 1454 թ. օր. Աւետ., հշվ. նաև 1455 և 1475 թթ. — 46, 47, 60, 386
21. Եւդոկեցի, կթղկս Կիլիկիոյ (1446—1477) — 48, 204, 229, 284, 285
22. Գաղ Ստեփանոս քհյի, որ 1454 թ. ստ. Աւետ. — 50
23. Գր., որդի Ամիր-Հասանի, հշվ 1455 թ. Թաղէշում — 56
24. Միաբան Խիզանի Գամաղիէլի վանքի, 1455, 1468 թթ. — 59, 274
25. Գրիչ, 1455 թ. Ասպաւերուկ գյուղում օր. Աւետ. — 60
26. Նաղաշ, 1456 թ. Բաղէշում Աւետարանի օրինակ տվեց Ստեփանոս գրչին — 71
27. Մեծոփայ վանքի երեք միաբաններ, 1456 թ. — 71
28. Որդի Ջիտլի, որ 1456 թ. Ռշտունիքի Բերդաձորի վանքում ստ. Աւետ. — 73
29. Եղբորթոռ վերոհիշյալ Ջիալի — 73

Կարապետ

30. Եղբորորդի՞ Իսրայէլ գրչի, հշվ. վերջինիս կողմից 1456 թ. Փասավանքում — 76
31. «Խաչ» մականունով, որդի պր. Աւետիքի, որ 1456 թ. Կաֆայում ստ. Աւետ. — 78
32. Սարկաւագ, քեռորդի՞ մահդասի Ստեփանոսի, որ 1457 թ. Արգելանո՞ւմ և 1467 թ. Վանում ստ. 2 Յայսմաւուրք — 80, 258
33. Գրիչ, 1457 թ. Արճէշում օգնում էր Յայսմաւուրք օրինակող Յովհ. Մանդասարենց նշանավոր գրչին — 87
34. Ոստանի նոր քաղաքի Քարի սբ Աստուածածին եկեղեցու քհյ-ներից, 1457, 1458 թթ. — 89, 103
35. Քհյ, որդի խոջա Ստեփանոսի, 1457 թ. Ոստանում ստ. Գանձարան հշվ. նաև 1458 թ. որպես Ոստանի Քարի սբ Աստուածածին եկեղեցու քհյ-ներից — 89, 103
36. Եղբ. Քաքարէ վրդի, որ 1458 թ. Խառաբասաում սա. Սաղմոսարան — Աղօթամատոյց — 100
37. Որդի Սառայ-Խաթունի, որ 1458 թ. Աղթամարում օր. Մաշտոց — 102
38. Գաղ Ստեփանոս քհյի, որ 1458 թ. Աղթամարում ստ. — Աւետ. 103
39. Եղբ. 1458 թ. Սորավանք գյուղում դժբախտ պատահարի զոհ գնացած Յովաննէս գրչի — 107
40. Քհյ, հայր Յովհաննէս գրչի, որ 1458, 1473 և 1475 թթ. Խլաթում օր. Յայսմաւուրք, Մաշտոց և Աւետ. — 113, 114, 348, 379
41. Կր., որդի Խաչատուրի, հգևր հայր և ուսուցիչ Ատոմ գրչի, հշվ, 1460—1466 թ. Արծկէում — 137, 225, 247
42. «Գոլով» մականունով, սանահայր Ստեփանոս-Ղարիպշահի, որ 1460 թ. Արծկէում ստ. Ճաշոց․ Կարապետ Գոլովը Աղթամարում 4 տարի «նախախնամել» է Յովանէս գրչին (թե՞ Ստեփանոս-Ղարիպշահին)—137
43. Որդի Թումայի, որ 1460 թ. Աղթամարում ստ. Աւետ. — 142
44. Միաբան Արքեբդի վանքի (հշվ. 1460, 1466 թթ.) 1470 թ. նվիրեց վանքին մի արտ Վախուանց գյուղում — 144, 248, 304
45. Հայր Շատի·այի, որ 1460 թ. Վանում ստ. Աւետ. — 146
46. Հորեղբ. Յովանէս գրչի, որ 1460 թ. Խիզանում օր. Աւետ. — 148
47. Խոշա, 1461 թ. Բաղէշում վկա եղավ սբ Յովհաննէսի վանքին տրված նվիրաբերութjան — 160

